## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից. նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8

ՕԳՈՍՏՈՍ 1970

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

Содержание





# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԻ ԾԱՎԱԼՈՒՆ ԾՐԱԳԻՐ

Մեր երկրի գյուղատնտեսությանը վճռական դեր է վերապահված արդյունաբերությունը հումքով և աշխատավորության նյութական բարեկեցությունն ապահովելու գործում: Ներկայումս արտադրության այդ մարզում ստեղծվում է Սովետական Միության ազգային եկամտի մեկ երրորդը: Գյուղատնտեսական մթերքներից մշակված արդյունաբերական արդյունքները բնակչության սպառած ապրանքների երեք քառորդն են կազմում: Գյուղատնտեսության հաջող վերելքի համար Սովետական Միությունում կան անհրաժեշտ պայմաններ՝ հզոր արդյունաբերություն, օգտագործելի հողերի ընդարձակ տարածություն, սոցիալիստական գյուղատնտեսության խոշոր ձեռնարկություններ, առաջավոր գիտություն, աշխատանքում կոփված որակյալ կադրեր, միլիոնավոր ջանասեր աշխատավորներ:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIII համագումարը սահմանեց ժամանակակից փուլում կուսակցության հիմնական կուրսը գյուղատնտեսության զարգացման բնագավառում: Իրագործելով համագումարի դիրեկտիվներն ու ընդունած որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմը հետհամագումարյան ժամանակաշրջանում կոնկրետ միջոցներ ձեռնարկեց գյուղատնտեսության վերելքն ապահովելու համար: Այդ բանի համոզիչ վկայությունն է նաև այս տարվա հուլիսի 3—4-ին տեղի ունեցած ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը:

Պլենումում «Կուսակցության հերթական խնդիրները գյուղատնտեսության բնագավառում» հարցի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի զեկուցման և պլենումի որոշման մեջ ի մի են բերված գյուղատնտեսության զարգացման ուղղությամբ կատարված աշխատանքները: Պլենումի բանաձևում ասված է. Բանվոր դասակարգի, կոլտնտեսական գյուղացիության, ինտելիգենցիայի ջանքերի շնորհիվ ընթացիկ հնգամյակի տարիներին մեծ հաջողություններ ունենք տնտեսության և կուլտուրայի, աշխատավորների բարօրության բարձրացման ասպարեզներում: Նկատելի կերպով ամրապնդվել է գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան, բարձրացել է նրա արտադրության վարման մակարդակը: Այս հնգամյակի անցած չորս տարում մեր երկրի գյուղատնտեսությունն ստացել է 1,8 անգամ ավելի հանքային պարարտանյութ, քան նախորդ չորս տարում: Աճել է տրակտորների, հացահատիկի կոմբայնների, ավտոմեքենաների և այլ տեխնիկայի մատակարարումը գյուղին: Վերջին չորս տարում օգտագործելի են դարձել միլիոնավոր հեկտար ոռոգելի հողեր և չորացված ճահիճներ: Գործադրած միջոցները տվել են որոշակի

արդյունքներ: Աճել է բուսաբուծության բերքատվությունը, անասնաբուծական
մթերքների արտադրությունը:
Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման շնորհիվ
ավելացել են կոլտնտեսականների, սովխոզներում աշխատողների եկամուտ-
ները: 1969 թվականին սովխոզների աշխատողների ամսական միջին վաստա-
կը 26 տոկոսով, իսկ կոլտնտեսականներինը՝ 33 տոկոսով ավելի բարձր էր,
քան 1965 թվականին: Գյուղի էկոնոմիկայի ամրապնդումն ու զարգացումը
նպաստեցին գյուղացիության նյութական բարեկեցության ու կուլտուրայի
բարձրացմանը, կենցաղի բարելավմանը: Կոլտնտեսություններում և սովխոզ-
ներում լայն թափ է ստացել նոր և հարմարավետ բնակարանների կառուցու-
մը, դպրոցների, հիվանդանոցների, ակումբների ու կենցաղային սպասարկ-
ման օբյեկտների շինարարությունը: Գյուղական կյանքը կուլտուրապես շատ է
զարգացել:
Երկրի գյուղատնտեսության ընդհանուր հաջողությունների մեջ իր մասն
ունի Սովետական Հայաստանի գյուղացիությունը: Վերջին չորս տարվա ըն-
թացքում հանրապետության գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրում-
ների ծավալը կազմեց 271 միլիոն ռուբլի, որից միայն ջրաշինարարության
նպատակներին հատկացվել է 115 միլիոն ռուբլի:
Հնգամյակի անցած չորս տարում (նախորդ հնգամյակի անցած չորս տա-
րիների համեմատությամբ) գյուղատնտեսական մթերքների համախառն ար-
տադրության միջին տարեկան աճը կազմեց 17 տոկոս: Չնայած կլիմա-
յական անբարենպաստ պայմաններին, շատ շրջաններում զգալիորեն բարձ-
րացել է հասկավոր կուլտուրաների, ծխախոտի և կարտոֆիլի բերքատվությու-
նը: Բազմաթիվ կոլտնտեսություններում և սովխոզներում ոռոգվող ցանքա-
տարածությունների յուրաքանչյուր հեկտարից միջինը ստանում են 35—40
ցենտներ, երբեմն էլ 50 ցենտներ հացահատիկ, ծխախոտի պլանտացիաներից՝
24—30 ցենտներ բերք:
ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը գնահատելով գյուղատնտեսության
վերընթացի արդյունքները, միաժամանակ նշեց, որ երկրի ժողովրդական տըն-
տեսության այդ մարզը դեռևս ետ է մնում հնգամյակի առաջադրած խնդիր-
ներից: Մինչդեռ սովետական էկոնոմիկայի զարգացման տեմպերը, ժողովրդի
կենսամակարդակի անշեղ բարձրացումը նոր, ավելի բարձր պահանջներ են
ներկայացնում գյուղատնտեսությանը, այդ բնագավառի աշխատողներին:
Գյուղատնտեսության արագ զարգացման գլխավոր հիմքը հացահատիկի
արտադրության ավելացումն է, որը բնակչության պարենի աղբյուր հանդի-
սանալով, միաժամանակ անասնապահության զարգացման կարևորագույն
բազա է: Այդ առումով էլ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի.
Բրեժնևն ընդգծեց. «Մենք արդեն բազմիցս նշել ենք, գյուղատնտեսության
զարգացման հանգուցային պրոբլեմը եղել ու մնում է հացահատիկային ար-
տադրության ավելացումը... Նկատի է առնվում առաջիկա հնգամյակում
հացահատիկի միջին տարեկան արտադրությունը երկրում հասցնել մոտավո-
րապես 195 միլիոն տոննայի»: Գալիք հնգամյակում հացահատիկի պետական
գնումների տարեկան պլանը ՍՍՀՄ-ում սահմանված է 60 միլիոն տոննա, իսկ
մեր հանրապետությունում՝ 22 հազար տոննա:
Հացահատիկի արտադրության ավելացման և պետական գնումների առա-
ջադրանքի կատարման հիմնական աղբյուրը բերքատվության բարձրացումն է,
որի համար կան հնարավորություններ և ռեզերվներ: Դրանք են՝ արտադրա-



կան պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումը, տեսակավոր սերմերի ար-
մատավորումը, ցանքատարածությունների պարարտացումը և այլն:

Գյուղատնտեսությունը ժամանակակից և նորագույն տեխնիկայով հագեցնելն ու հանքային պարարտանյութերով ապահովելը, ցանքատարածությունների բերքատվությունը բարձրացնելու կարևոր լծակներից են: ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում ընդգծվեց, որ սովխոզներին և կոլտնտեսություններին տեխնիկայի, քիմիական պարարտանյութերի մատակարարումն ավելացնելու հետ զուգընթաց, պետք է խելացի օգտագործել դրանք: Մինչդեռ իրականում շատ վայրերում դեռևս լրիվ կարողությամբ չեն օգտագործում եղած մեքենաներն ու մեխանիզմները, անփույթ են վարվում պարարտանյութի հետ: Մեր հանրապետության Ղափանի, Սևանի, Գուգարքի և Սիսիանի շրջանների կոլտնտեսություններն ու սովխոզներն անցյալ տարի իրենց հատկացված հանքային պարարտանյութերի միայն 60—70 տոկոսն օգտագործեցին, այսպես կոչված «միջոցներ խնայելու» միտումով: Հայտնի է, որ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման պայմաններից մեկը՝ տեղական պարարտանյութերով ցանքատարածությունների սնուցելն է: Շատ տընտեսությունների ղեկավարներ այս գործում էլ թերանում են: Որոշ տեղերում դեռևս հոգատար խնամք չկա գյուղատնտեսական տեխնիկայի նկատմամբ և այն օգտագործվում է վատ: Արդյոք հանդուրժելի՞ է, Կամոյի անվան սովխոզում (1965 թվականին գնված) հացահատիկ չորացնելու սարքավորումը (15 հազար ռուբլու արժողությամբ) մինչև վերջերս էլ չի շահագործվում և ընկած բաց երկնքի տակ փչանում է: Գորիսի շրջանի Տեղ գյուղի կոլտնտեսությունը մի քանի տարի առաջ գնել է «Վոլգա» մակնիշի կթի ագրեգատ 1180 ռուբլու արժողությամբ, որը չի օգտագործվում և ապակոմպլեկտավորվում է: Իջևանի շրջանի Կույբիշևի գյուղի սովխոզում ԴՏ 75 տրակտորը 8 տարվա փոխարեն շահագործել են 4 տարի ու դուրս գրել, որոշ կոլտնտեսություններում մեկ տրակտորի արտադրական կարողությունն օգտագործվում է 60—70 տոկոսով:

Դժվար է գերագնահատել, թե մեր հանրապետությունում որքան մեծ է ոռոգման դերը՝ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման, կայուն բերք ստանալու գործում: Վերջին երկու տարին երաշտի պատճառով հանրապետության համարյա բոլոր շրջաններում անջրդի տարածություններից աննշան բերք ստացան, մինչդեռ ջրովի հողատարածություններից ստացվեց հացահատիկի, կերային, բանջարեղենի, խաղողի և այլ կուլտուրաների (նախորդ տարիների համեմատ) միջինից էլ բարձր բերք: Այնուհանդերձ բոլոր տնտեսություններում չէ, որ ռացիոնալ են օգտագործվում ոռոգվող հողատարածությունները: Երբեմն ջրարբի հողերն օգտագործվում են ոչ բարձր եկամտաբեր կուլտուրաների մշակման համար, իսկ առանձին տնտեսություններում՝ ուղղակի չեն ոռոգվում ցանքատարածությունները: Շատ կոլտնտեսություններում և սովխոզներում ոռոգման ջուրը վատնվում է. անհանդուրժելի չափերի են հասնում ջրի կորուստները մայր ջրանցքներում և, առանձնապես, միջտնտեսային և ներտնտեսային ցանցում: Վերջիններիս միանգամայն անմխիթար վիճակի հետևանքով կորստի է մատնվում ջրի զգալի մասը:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն անհրաժեշտ համարեց առաջիկայում ևս մեծ ուշադրություն դարձնել ջրաշինարարության հարցերին, ինչպես և արդյունավետ օգտագործել ոռոգելի հողատարածությունները: Մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունների, սովետական օրգանների ու ջրային

տնտեսության մարմինների առաջնակարգ խնդիրն է՝ ռացիոնալ օգտագործել ջուրը, իսկ տնտեսությունների ղեկավարների պարտականությունն է՝ պայքարել ջրի կորուստների դեմ, յուրաքանչյուր լիտր ջուր օգտագործել բարձր բերք աճեցնելու համար:

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը մեծ ուշադրություն նվիրեց անասնապահության հարցին. կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմիններից,— ասված է պլենումի որոշման մեջ,— կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարներից պահանջվում է՝ վճռականապես վերացնել անասնապահության ասպարեզում եղած թերությունները, ապահովել անասունների և թռչունների մթերատվության բարձրացումը նրանց գլխաքանակի միաժամանակյա աճի հետ մեկտեղ:

Կոլտնտեսությունների և սովխոզների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով ՍՄԿԿ քաղբյուրոն և ՍՍՀՄ Մինիստրների սովետը նպատակահարմար գտան այս տարվա մարտից բարձրացնել անասնապահական մթերքների գնման գները՝ առանց մսի, կաթի և մյուս մթերքների մանրածախ գների բարձրացման: Կենտկոմի պլենումը հավանություն տալով այդ միջոցառմանը, միաժամանակ պահանջեց կուսակցական և սովետական օրգաններից անհրաժեշտ գործիմացություն ցուցաբերել այդ ոլորտում: Կոլտնտեսություններն ու սովխոզները պարտավոր են լրացուցիչ կերպով ստացած միջոցներն ամենից առաջ ծախսել արտադրությունն ընդլայնելու, կերի բազան զարգացնելու և ամրապնդելու, անասնապահության աշխատատար պրոցեսները մեքենայացնելու համար:

Անասնապահության զարգացման գործում լուրջ թերություններ կան մեր հանրապետությունում: Մի շարք շրջաններ չեն ապահովում պլանով սահմանված անասունների գլխաքանակը, չի կատարվում մթերատվության պետական առաջադրանքը: Բազմաթիվ տնտեսություններում կովերի տեսակարար կշիռը նախիրում կազմում է միայն 33 տոկոս, 40-ից 43-ի փոխարեն: Վերջին տարիների ընթացքում առանձին տնտեսություններում նույնիսկ պակասել է ֆուրաժային կովի կաթնատվությունը, որն անհանդուրժելի է:

Անասունների գլխաքանակի դանդաղ աճի և անասնաբուծական մթերքների արտադրության ցածր մակարդակի գլխավոր պատճառներից մեկը կերի անհրաժեշտ քանակության բացակայությունն է, մարգագետինների ու արոտավայրերի անխնամ վիճակը: Դեռևս դանդաղ են ավելանում կերային կուլտուրաների ցանքատարածությունները, չափազանց ցածր է նրանց բերքատվությունը: Մեր հանրապետությունում կերերի արտադրության ավելացման համար, եթե սահմանափակ են կերային կուլտուրաների ցանքատարածությունն ընդարձակելու հնարավորությունները, ապա մեծ են նրանց բերքատվությունը բարձրացնելու ռեզերվները, որի վրա և պետք է ամենալուրջ ուշադրությունը դարձնել:

Հանրապետության գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության շրջանային կոմիտեները, շրջանային սովետի գործադիր կոմիտեները, կոլտնտեսությունների և սովխոզների կուսակցական կազմակերպությունները պետք է միջոցներ ձեռնարկեն անասնաբուծության զարգացման և անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու համար: Յուրաքանչյուր տնտեսություն պետք է լիարժեք օգտագործի եղած բոլոր ռեզերվները մսի և կաթի արտադրությունը և վաճառքն ավելացնելու համար: Իսկ այդպիսի ռեզերվներ և հնարավորություններ կան հանրապետության բոլոր կոլտնտեսու-



թյուններում և սովխոզներում: Հարկ է մեծ ուշադրություն նվիրել անասնապահության առավել վաղարդյունք ճյուղերի՝ թռչնաբուծության, խոզաբուծության, ոչխարաբուծության զարգացմանը: Կենտկոմի պլենումում նշվեց, որ պետք է արմատապես փոխել վերաբերմունքը ոչխարաբուծության նկատմամբ: Անհրաժեշտ է այդ ճյուղը դնել ամուր հիմքերի վրա, առանձնացնել կապիտալ ներդրումներ, տեխնիկա, շինանյութեր, հովիվներին, ոչխարաբուծությամբ զբաղված բոլոր աշխատողներին ցուցաբերել պատշաճ ուշադրություն և հոգատարություն: Սխալ է առանձին ընկերների այն կարծիքը, որ առաջիկայում ուշադրություն պետք է նվիրվի միայն անասնապահության մթերատվության բարձրացմանը: «Կոպիտ և դժվարուղղելի սխալ կլինի,— ասում է ընկ. Բրեժնևը,— ուշադրության թուլացումը անասունների և թռչունների գլխաքանակի ավելացման նկատմամբ»: Մսի և կաթի արտադրության ավելացման կարևոր ռեզերվներից մեկը՝ անասունների բտման կազմակերպումը և անկումների կանխումն է: Անժխտելի փաստ է, որ շատ տնտեսություններ մեծ վնասներ են ստանում անասունները ցածր որակով միս մթերող մարմիններին հանձնելու և անկումներ ունենալու պատճառով:

Արդյունաբերական հիմունքներով թռչնաբուծության և խոզաբուծության զարգացումը մեր հանրապետությանը հնարավորություն կտա առաջիկա տարիներին զգալիորեն ավելացնելու ձվի և մսի արտադրությունը: Այս հարցին առավելագույն ուշադրություն պետք է նվիրեն կուսակցության շրջանային կոմիտեները, սկզբնական կազմակերպությունները, սովետական մարմիններն ու տնտեսությունների ղեկավարները:

Հայաստանի հողակլիմայական պայմանները միանգամայն նպաստավոր են խաղողի, պտղի, բանջարեղենի և բոստանային կուլտուրաների մշակության համար: Տնտեսությունների զգալի մասի եկամուտները գոյանում են այդ կուլտուրաների արտադրանքից: Իրոք, վերջին տարիներս որոշակի գործ է կատարված այս ուղղությամբ, նախորդ տարիների համեմատությամբ մշակող արդյունաբերությանն ու քաղաքի բնակչությանն ավելի շատ պտուղ և բանջարեղեն է մատակարարվում: Սակայն այդ դեռևս գոհացուցիչ չէ, քանի որ սննդի արդյունաբերությունը, քաղաքային բնակչությունն այդ մթերքների նկատմամբ ավելի մեծ պահանջներ են ներկայացնում: Ուղեցույց ունենալով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումները, խաղողագործությամբ, պտղաբուծությամբ և բանջարաբուծությամբ զբաղվող տնտեսությունները պետք է վճռական բեկում ստեղծեն իրենց գործունեության մեջ: Ամենակարևորը՝ դա աշխատատար պրոցեսների մեքենայացումն է, որը կնպաստի արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը: Պետք է պայքար ծավալել արտադրվող մթերքների որակը բարձրացնելու, ստացված մթերքների կորուստը կանխելու համար: Ցավալի, բայց թե փաստ է, երբ կոլտնտեսականների ու սովխոզների աշխատողների ջանքերով ստեղծված բարիքները սպառողին հաճախ հասնում են անորակ վիճակում: Արտադրված խաղողի հյութում չի պահպանվում նորմալ քաղցրությունը: Իսկ այս ամենը մեծ վնաս են պատճառում: Հարկավոր է կտրուկ միջոցների դիմել այս թերությունները վերացնելու համար:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշման մեջ նշված է, որ գյուղատնտեսական մեքենաների, տրանսպորտային միջոցների, հանքային պարարտանյութերի պակասը, մելիորացված հողերի աննշան տեսակարար կշիռը, անասնապահության թույլ ապահովվածությունը կերով, վերամշակող արդյունաբերության հետ մնալը, ինչպես նաև կոլտնտեսությունների և սովխոզների նշանակալի մա-

սում տնտեսությունը վարելու դեռևս ցածր կուլտուրան կասեցնող ազդեցություն են գործում գյուղատնտեսության արտադրության աճի տեմպերի վրա:

Իհարկե, գյուղատնտեսության ասպարեզում մեր դժվարությունները ընդհանուր ոչինչ չունեն այն հերյուրանքների հետ,— նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում,— որոնք հորինում են հակասովետականները: Դրանք բոլորովին այլ բնույթ են կրում: Մեր էկոնոմիկայի աճի ներկա պայմաններում գյուղատնտեսությանն ավելի բարձր պահանջներ են ներկայացվում, և դա միանգամայն օրինաչափ է: Այդ կապակցությամբ գյուղատնտեսության հետագա վերելքը ամենամոտ ապագայում ևս մնում է կոմունիստական կուսակցության տնտեսական ու քաղաքական գլխավոր խնդիրներից մեկը:

Ելնելով այս դրույթից՝ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը հավանություն տվեց ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի որոշմանը, որով նախատեսվում է առաջիկա հնգամյակում գյուղատնտեսության կարիքների համար՝ արտադրական, բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության, տեխնիկայի ձեռք բերման համար հատկացնել 77,6 միլիարդ ռուբլու պետական կապիտալ ներդրումներ, այդ թվում 45,9 միլիարդ ռուբլի շինմոնտաժային աշխատանքների համար: Միաժամանակ կոլտնտեսությունները կապիտալ ներդրումներ կկատարեն 43 միլիարդ, այդ թվում շինմոնտաժային աշխատանքների համար՝ 28 միլիարդ ռուբլու:

Հողագործության և անասնապահության մթերքների արտադրության զգալի ավելացման խնդրի հաջող լուծումը,— նշված է ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշման մեջ,— հրամայաբար անհրաժեշտ է դարձնում գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի շուտափույթ ամրապնդումը, նրա տեխնիկական վերազինումը: Նոր հնգամյակի ընթացքում երկրի գյուղատնտեսությունը ստանալու է 1.700 հազար տրակտոր, 1.100 հազար բեռնատար ավտոմեքենա, 541 հազար հացահատիկի կոմբայն, 230 հազար սիլոսահավաք և 60 հազար ճակնդեղահավաք կոմբայն, 15 միլիարդ ռուբլու գյուղատնտեսական մեքենաներ և այլն: Մեքենաների և մեխանիզմների անհրաժեշտ կոմպլեքսներ է մատակարարվելու՝ անասնապահության աշխատատար պրոցեսները մեքենայացնելու համար: 1975 թվականին գյուղատնտեսությանը մատակարարվելու է առնվազն 72 միլիոն տոննա հանքային պարարտանյութ:

Նախորդ հնգամյակի համեմատությամբ 1971—1975 թվականներին զգալիորեն ընդլայնվելու է ոռոգելի հողերի տարածությունը, խոշոր աշխատանքներ կկատարվեն գերխոնավ հողերի յուրացման ուղղությամբ: Մեծ տարածության վրա բարելավվելու են մարգագետիններն ու արոտավայրերը:

Գյուղատնտեսության հետագա զարգացման, նրա պրոբլեմների լուծման գործում վճռական դեր ունի կատարելու գիտությունը: ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը խնդիր դրեց գիտահետազոտական հաստատությունների, սովետական գիտնականների առջև՝ ստեղծել և արտադրության մեջ ներդնել գյուղատնտեսական կուլտուրաների նոր, բարձր բերքատու սորտեր, ստանալ կենդանիների բարձր մթերատու ցեղատեսակներ, կոլտնտեսությունների և սովխոզների համար մշակել՝ արտադրանքի յուրաքանչյուր տեսակի արտադրության առավել արդյունավետ և խնայողական տեխնոլոգիական պրոցեսների ու մեքենաների նոր միջոցներ, բույսերի և անասունների հիվանդությունների դեմ պայքարի բուժանյութեր ու մեթոդներ:

Գյուղատնտեսության հետագա վերելքի համար մղվող պայքարում մեծ դեր ունեն կատարելու մեր հանրապետության արդյունաբերական ձեռնարկու-



թյունները, որոնցից շատերը հնարավորություն ունեն թողարկելու գյուղատնտեսական սարքեր ու գործիքներ, իսկ ոմանք անմիջականորեն արտադրում են հանքային պարարտանյութեր, բույսերի վնասատուների և անասունների հիվանդությունների դեմ պայքարի քիմիական միջոցներ: Մեր ժամանակներում ոչ ոք իրավունք չունի մի կողմ քաշվելու ժողովրդատնտեսական այնպիսի մեծ խնդրի լուծումից, ինչպիսին գյուղատնտեսական արտադրության հետագա զգալի բարձրացումն է:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումն ընդգծեց, որ գյուղատնտեսության բնագավառի խոշոր խնդիրների լուծումը կպահանջի կուսակցության և նրա բոլոր կազմակերպությունների ջանքերի լարում, նրանց քաղաքական և կազմակերպչական գործունեության մակարդակի բարձրացում:

Երկրի զարգացման տվյալ էտապը թելադրում է՝ ամենուր բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և մարդկանց արտադրական կարգապահությունը, առանց որի անկարելի է պատկերացնել կուսակցական մեծ ծրագրի արդյունավետ իրագործումը:

Սովետական մարդիկ ջերմորեն արձագանքելով ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշմանը, լիովին հավանություն տվին նրան և արդեն պայքար են ծավալում այն կյանքում կենսագործելու համար: Հանրային դաշտերում, անասնապահական ֆերմաներում գործող մարդիկ ջանք չեն խնայում հնգամյակի ավարտական տարին բարձր ցուցանիշներով փակելու, Հայաստանում սովետական կարգերի հաստատման 50-ամյակը նորանոր հաջողություններով նշելու:

Կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումի որոշումները հանդիսանում են կուսակցական կազմակերպությունների աշխատանքի ծավալուն ծրագիր՝ գյուղատնտեսության հետագա վերելքի համար մղվող պայքարում: Աշխատավորական լայն մասսաներին պարզաբանելով ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի նյութերը, կուսակցական կազմակերպությունները պետք է գլխավորեն մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը՝ իրագործելու գյուղատնտեսության հետագա վերելքի ծրագիրը, որը խոշոր ավանդ կլինի մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում:

Հուլիսի 22-ին կայացած ՀԿԿ Կենտկոմի հերթական պլենումը քննարկելով «ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1970 թ.) պլենումի որոշումները և Հայաստանի կուսակցական կազմակերպության խնդիրները», կոնկրետ միջոցառումներ հաստատեց հանրապետության գյուղատնտեսության առաջիկա վերելքն ապահովելու և ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումը հաջող կենսագործելու համար:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆ

ՀԿԿ Երևանի քաղկոմի քարտուղար

## ԺԱՄԱՆԱԿԻ ԹԵԼԱԴՐԱՆՔՈՎ

*ՍՄԿԿ XXIII համագումարը, ժողովրդական տնտեսության զարգացման խնդիրները որոշելիս, կուսակցական կազմակերպությունների կարևոր գործը համարեց գիտության և տեխնիկայի ժամանակակից նվաճումների հիման վրա արտադրության վերակառուցումն ու տեխնիկական վերազինումը, նոր, առաջավոր տեխնիկայի ներդրումը, տեխնիկական պրոցեսների անընդհատ կատարելագործումը, նոր նյութերի և բարձր արտադրողական մեքենաների և սարքավորումների օգտագործումը, արտադրության կազմակերպման և կառավարման բարելավումը, գիտահետազոտական աշխատանքների արդյունավետության ու արտադրանքի որակի բարձրացումը և, որ ամենագլխավորն* է՝ աշխատանքի արտադրողականության անշեղ աճի ապահովումը:

*Այդ հարցերը մշտապես գտնվել են Երևանի քաղաքային և շրջանային կուսակցական կոմիտեների ուշադրության կենտրոնում, քննարկվել նրանց պլենումներում և բյուրոների նիստերում։ Նկատի ունենալով, որ այդ հարցերի լուծման գրավականներից մեկը կուսակցական-տնտեսական ակտիվի բանիմացությունն ու փորձն է, նրանց համար աշխատանքի գիտական կազմակերպման, հիմնական արտադրաֆոնդերի ճիշտ օգտագործման, գիտահետազոտական աշխատանքների արդյունավետության բարձրացման և այլ հարցերի շուրջ կազմակերպվել են գիտատեխնիկական կոնֆերանսներ։ Քաղաքային կոմիտեին կից ստեղծվել է աշխատանքի գիտական կազմակերպման՝ հասարակական հիմունքներով գործող ինստիտուտ, որը շուտով կտա իր առաջին շրջանավարտները։*

*Ելնելով գիտատեխնիկական առաջադիմության շահերից՝ կուսակցության քաղկոմը և շրջանային կոմիտեներն առանձին հոգատարություն են ցուցաբերում արդյունաբերության հետագա զարգացման նկատմամբ։ Դրա վկայությունն այն է, որ, արտադրության ինտենսիվ զարգացմանը զուգընթաց, մայրաքաղաքում վերջին տարիներս գործարկվել են նոր գործարաններ ու արտադրամասեր, որոնք հագեցված են նորագույն տեխնիկայով ու ժամանակակից տեխնոլոգիական պրոցեսներն ապահովող սարքավորումներով։*

*Գիտատեխնիկական առաջադիմությունը չի կարելի պատկերացնել առանց գիտահետազոտական հիմնարկությունների լայն ցանցի։ Պետք է ասել, որ այս ասպարեզում մեզ մոտ առաջընթաց խոշոր քայլ է կատարվել։ Երևանում*



*ստեղծվել են մեծ թվով գիտահետազոտական ու նախագծային ինստիտուտներ, լաբորատորիաներ, տեխնոլոգիական և կոնստրուկտորական զանազան կազմակերպություններ, հաշվողական կենտրոններ, որոնք զբաղվում են արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի զարգացման և բարելավման կոնկրետ պրոբլեմների լուծմամբ։ Միայն 20-ից ավելի գիտահետազոտական հիմնարկություններ զբաղված են մեքենաշինության, էլեկտրատեխնիկայի, սարքաշինության, ռադիոարդյունաբերության և հաշվային տեխնիկայի ասպարեզում գիտահետազոտական, կոնստրուկտորական աշխատանքով, առաջավոր նմուշների ստեղծմամբ ու փորձարկմամբ։ Վեց բարձրագույն ուսումնական հաստատություններում ստեղծվել են 16 պրոբլեմային գիտահետազոտական լաբորատորիաներ, իսկ ամբիոններին կից՝ 34 գիտական լաբորատորիաներ ու բաժիններ։ Երևանում գործում է նաև հինգ տնտեսական գիտահետազոտական հիմնարկություն և այլն։ Մայրաքաղաքի գիտական հիմնարկություններում աշխատում է մի ստվար բանակ՝ 17 հազար մարդ։*

*Գիտատեխնիկական առաջադիմության արագացումը պահանջում է գիտության և արտադրության սերտ կապ, գիտության նվաճումների ըստ ամենայնի ներդնում արտադրության մեջ ու դրա հիման վրա աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացում։ Այս ասպարեզում հաջողություններն զգալի են։*

*Կուսակցության քաղաքային կոմիտեն և շրջանային կոմիտեները հետևողական աշխատանք են տանում գիտության և արտադրության միջև սերտ կապեր հաստատելու, գիտահետազոտական կազմակերպությունների կողմից արդյունաբերական ձեռնարկություններին ցույց տրվող օգնությունն ուժեղացնելու, նրանց մշակած թեմաները, նախագծերն ու նմուշներն արտադրության մեջ արագ արմատավորելու համար։ Միայն վերջին ժամանակներս Երևանի ձեռնարկություններն իրականացրել են նման մոտ 200 միջոցառում։ Այս տեսակետից ուսանելի փորձ ունեն կոմպլեքսային էլեկտրասարքավորումների նախագծման գիտահետազոտական ինստիտուտը, մետաղահատ հաստոցների գիտահետազոտական ինստիտուտի Անդրկովկասյան մասնաճյուղը, պոլիմերների, կիրառական և այլ գիտահետազոտական ինստիտուտներ, նախագծային և հետազոտական կազմակերպություններ։*

*Արտադրությանն օգնելու նպատակով զգալի աշխատանք են կատարում Հայաստանի ԳԱ ինստիտուտներն ու պրոբլեմային լաբորատորիաները, հատկապես ակադեմիայի նախագահությանը կից ստեղծված մեքենաշինության պրոբլեմների խորհուրդը։ Այն գործարանների ինժեներա-տեխնիկական աշխատողներին և գիտական լաբորատորիաներին օգնում է արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նորություններն արմատավորելու, արտադրության համար շատ կարևոր տեխնիկական հարցեր լուծելու գործում։ Ամրապնդվել է նաև պոլիտեխնիկական ինստիտուտի և պետական համալսարանի ամբիոնների ու լաբորատորիաների կապը արտադրության հետ։ Քաղաքային կոմիտեն լուրջ ուշադրություն է նվիրում նաև մայրաքաղաքի և Միության առաջավոր ձեռնարկությունների ու գիտահետազոտական հիմնարկությունների կապերի ծավալմանը, որը մեծապես նպաստում է նորի ու առաջավորի արմատավորմանը, գիտատեխնիկական առաջադիմության խնդիրների լուծմանը։*

*Այս ամենը վկայում է, որ ՍՄԿԿ XXIII համագումարի սահմանած՝ արդյունաբերության և տնտեսության այլ բնագավառների զարգացման գլխավոր ուղղությունը քաղաքի կուսկազմակերպությունները ճիշտ են հասկանում և հե-*

տևողականորեն իրականացնում դրանից բխող խնդիրները։ Եվ, իրոք, մայ-
րաքաղաքում ստեղծված արտադրական և գիտական լուրջ պոտենցիալը
օբյեկտիվորեն հնարավորություն է ընձեռում լուծելու քաղաքի արդյունաբե-
րության, շինարարության, տրանսպորտի և տնտեսության այլ ճյուղերի առջև
կանգնած ամենաբարդ խնդիրները։

Արդի ժամանակաշրջանը բնորոշվում է գիտատեխնիկական հեղափոխու-
թյամբ, որն արդեն թափանցել է մեր կյանքի համարյա բոլոր ոլորտները։ Մեր
հետագա հաջողությունները պայմանավորված են նրանով, թե որքան արագ
ու ժամանակին կվերակառուցենք մեր աշխատանքն այդ հեղափոխության
ոգով։ Բանն այն է, որ արտադրության կազմակերպման և կառավարման գո-
յություն ունեցող մեթոդներն ու ձևերը, որոնք ձևավորվել են մինչև գիտատեխ-
նիկական հեղափոխության լայն ծավալումը և բավարարել արտադրության
աճի այն ժամանակվա պահանջները, ներկայումս կարիք են զգում լուրջ, ար-
մատական վերափոխությունների։ Արտադրության տեխնոլոգիական մակար-
դակը, դրա տեխնիկական զինվածությունը նույնպես լուրջ բարեփոխություն-
ների կարիք ունեն։

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը նշեց, որ գիտատեխնիկական
պրոգրեսի արագացումը, արտադրության արդյունավետության և աշխատանքի
արտադրողականության բարձրացումը հրամայաբար պահանջում են արդյու-
նաբերության, շինարարության, տրանսպորտի, գիտահետազոտական կազմա-
կերպությունների աշխատանքում արագ տեմպերով ներդնել արտադրության
կազմակերպման նոր ձևեր՝ կապված ժամանակակից էլեկտրոնային մեքենա-
ների և կիբեռնետիկայի լայն կիրառման հետ, իրականացնել գիտության և
տեխնիկայի նվաճումների հիման վրա մշակված տեխնոլոգիական պրոցես-
ներ, որոնք իրենց էությամբ հեղափոխական ազդեցություն կունենան աշխա-
տանքի արտադրողականության բարձրացման վրա։

ՍՄԿԿ ԿԿ պլենումը միաժամանակ ընդգծեց, որ մեր էկոնոմիկայի հեռա-
նկարային զարգացման հիմնական խնդիրն այն է, որ խիստ կերպով, մոտա-
վորապես 2—2,5 անգամ, բարձրացվի եղած աշխատանքային և նյութական
ռեսուրսների, ինչպես նաև նոր կուտակումների օգտագործման արդյունավե-
տությունը։ Ներկայումս պետք է նկատի ունենալ, ամենից առաջ, տնտեսա-
կան աճի որակական գործոնները, ժողովրդական տնտեսության արդյունավե-
տության, ինտենսիվության բարձրացումը։ Խոսքն այն մասին է, որ արտա-
դրությունն ընդարձակվի և արտադրանքի որակը բարելավվի ո՛չ միայն նոր
կապիտալ ներդրումների և աշխատողների թվի ավելացմամբ, այլև ավելի մեծ
չափով՝ արդեն եղած արտադրական կարողությունների լրիվ և ռացիոնալ օգ-
տագործմամբ, սարքավորումների նորացմամբ, ժամանակակից գիտության ու
տեխնիկայի արմատավորմամբ, ինչպես նաև աշխատաժամանակի յուրաքան-
չյուր րոպեի, յուրաքանչյուր մեքենայի ու մեխանիզմի, հումքի ու վառելիքի
ամեն մի գրամի խնայողությամբ։

Կուսակցության Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումների կեն-
սագործումը մեծ չափով պայմանավորված կլինի այն բանով, թե կուսկազ-
մակերպությունները որքանով կկարողանան նպատակամղել մեր արտադրա-
կան և գիտահետազոտական կոլեկտիվների ուժերը՝ արտադրության հետագա
ինտենսիվացման, տեխնոլոգիայի արմատավորման, կառավարման և կազմա-
կերպման մակարդակի բարձրացման, գոյություն ունեցող բոլոր ռեզերվների
հայտնաբերման, դրանց օգտագործման, բանվորական, ինժեներա-տեխնիկա-



կան և այլ կադրերի մասնագիտական, կազմակերպչական ու քաղաքական
մակարդակի բարձրացման նպատակին։

Արդյունավետությունը սինթեզող ցուցանիշ է և փաստորեն արտացոլում
է յուրաքանչյուր ձեռնարկության գործունեության համարյա բոլոր բնագավառ-
ները, տնտեսական աճի որակական գործոնները։

Մայրաքաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի և
ընդհանրապես արտադրության կազմակերպման վերլուծությունները ցույց են
տալիս, որ, չնայած գիտատեխնիկական առաջադիմության ասպարեզում ձեռք
բերած հաջողություններին, մեր գործունեության մեջ դեռևս կան լուրջ թերու-
թյուններ ու բացեր։ Հնգամյակի նախավերջին երկու տարում (1968—1969 թթ.)
Երևանի արդյունաբերության արտադրանքի ծավալն աճել է ավելի ցածր տեմ-
պերով, քան հնգամյակի առաջին երկու տարում։ Այսպես, եթե 1966 թ. այն
կազմել է 11,4 տոկոս, 1967-ին՝ 14,6, ապա 1968-ին՝ 8,5, իսկ 1969-ին՝ 9,2
տոկոս։ Իրացման ծավալը 1968-ին մեծացել է 10,5, իսկ 1969-ին՝ 8,7 տոկո-
սով։ Եվ այս բոլորն այն դեպքում, երբ Երևանում արդյունաբերական ձեռ-
նարկությունների քանակն ավելացել է 32-ով։

Բավարար չի կարելի համարել նաև աշխատանքի արտադրողականության
ցուցանիշները։ Չնայած այն ընդհանուր առմամբ աճել է 24 տոկոսով, սա-
կայն վերջին տարիներս աճի տեմպերն անհավասարաչափ են և ավելի ցածր,
քան 1967 թ.։ Մայրաքաղաքի արդյունաբերության արտադրանքի ծավալային
աճի միայն 65 տոկոսն է ապահովվել արտադրողականության աճի հաշվին։
Իջել է ֆոնդազինվածության ցուցանիշը, զգալի չափով թուլացել են արդյու-
նաբերական ձեռնարկությունների ինքնարժեքի իջեցման տեմպերը։ Հնգամյա-
կի առաջին տարիներին դրանք ավելի բարձր են եղել, քան վերջին երկու
տարում։ Խախտվել է աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի
ֆոնդի ծախսման աճի հարաբերակցությունը՝ հօգուտ վերջինիս։

Մենք դեռ չենք հասել այն բանին, որպեսզի քաղաքի արդյունաբերական,
շինարարական և տրանսպորտի բոլոր կազմակերպությունները սիստեմատի-
կաբար կատարեն պլանային առաջադրանքներն ինչպես քանակական, այն-
պես էլ որակական ցուցանիշներով։

Այդ երևույթի հիմնական պատճառներից մեկը գիտատեխնիկական առա-
ջադիմության դանդաղ ընթացքն է, եղած կարողությունների ոչ ռացիոնալ
օգտագործումը, արտադրական ցածր կուլտուրան։

Մայրաքաղաքի արդյունաբերական շատ ձեռնարկություններում դեռևս
ցածր են արտադրության տեխնիկական զինվածությունը, տեխնոլոգիական
պրոցեսների և արտադրության կազմակերպման մակարդակը, նոր տեխնիկա-
յի արմատավորման տեմպերը։ Խիստ անբավարար են իրականացվում ար-
տադրական պրոցեսների մեքենայացումն ու կոմպլեքսային ավտոմատացու-
մը։ Աշխատանքի կազմակերպման ասպարեզում թույլ են տրվում անհանդուր-
ժելի թերություններ և սխալներ, որոնք հանգեցնում են հիմնական ֆոնդերի
և աշխատանքի ապարդյուն ծախսման, ցածր է տեխնոլոգիական, արտա-
դրական և աշխատանքային կարգապահությունը և, որպես դրանց հետևանք,
թողարկվող արտադրանքի որակն ու տեխնիկական մակարդակը, բարձր են
անարտադրողական ծախքերը։ Լուրջ թերություններ կան ձեռնարկությունների
կառուցվածքի բարելավման, կառավարման ապարատի էժանացման գործում։
Անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում նոր, առաջավոր տեխնոլոգիական
պրոցեսների արմատավորմանը, ժամանակակից նյութերի կիրառմանը։ Այս

տևողականորեն իրականացնում դրանից բխող խնդիրները: Եվ, իրոք, մայ-
րաքաղաքում ստեղծված արտադրական և գիտական լուրջ պոտենցիալը
օբյեկտիվորեն հնարավորություն է ընձեռում լուծելու քաղաքի արդյունաբե-
րության, շինարարության, տրանսպորտի և տնտեսության այլ ճյուղերի առջև
կանգնած ամենաբարդ խնդիրները:

Արդի ժամանակաշրջանը բնորոշվում է գիտատեխնիկական հեղափոխու-
թյամբ, որն արդեն թափանցել է մեր կյանքի համարյա բոլոր ոլորտները: Մեր
հետագա հաջողությունները պայմանավորված են նրանով, թե որքան արագ
ու ժամանակին կվերակառուցենք մեր աշխատանքն այդ հեղափոխության
ոգով: Բանն այն է, որ արտադրության կազմակերպման և կառավարման գո-
յություն ունեցող մեթոդներն ու ձևերը, որոնք ձևավորվել են մինչև գիտատեխ-
նիկական հեղափոխության լայն ծավալումը և բավարարել արտադրության
աճի այն ժամանակվա պահանջները, ներկայումս կարիք են զգում լուրջ, ար-
մատական վերափոխությունների: Արտադրության տեխնոլոգիական մակար-
դակը, դրա տեխնիկական զինվածությունը նույնպես լուրջ բարեփոխություն-
ների կարիք ունեն:

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը նշեց, որ գիտատեխնիկական
պրոգրեսի արագացումը, արտադրության արդյունավետության և աշխատանքի
արտադրողականության բարձրացումը հրամայաբար պահանջում են արդյու-
նաբերության, շինարարության, տրանսպորտի, գիտահետազոտական կազմա-
կերպությունների աշխատանքում արագ տեմպերով ներդնել արտադրության
կազմակերպման նոր ձևեր՝ կապված ժամանակակից էլեկտրոնային մեքենա-
ների և կիբեռնետիկայի լայն կիրառման հետ, իրականացնել գիտության և
տեխնիկայի նվաճումների հիման վրա մշակված տեխնոլոգիական պրոցես-
ներ, որոնք իրենց էությամբ հեղափոխական ազդեցություն կունենան աշխա-
տանքի արտադրողականության բարձրացման վրա:

ՍՄԿԿ ԿԿ պլենումը միաժամանակ ընդգծեց, որ մեր էկոնոմիկայի հեռա-
նկարային զարգացման հիմնական խնդիրն այն է, որ խիստ կերպով, մոտա-
վորապես 2—2,5 անգամ, բարձրացվի եղած աշխատանքային և նյութական
ռեսուրսների, ինչպես նաև նոր կուտակումների օգտագործման արդյունավե-
տությունը: Ներկայումս պետք է նկատի ունենալ, ամենից առաջ, տնտեսա-
կան աճի որակական գործոնները, ժողովրդական տնտեսության արդյունավե-
տության, ինտենսիվության բարձրացումը: Խոսքն այն մասին է, որ արտա-
դրությունն ընդարձակվի և արտադրանքի որակը բարելավվի ո՛չ միայն նոր
կապիտալ ներդրումների և աշխատողների թվի ավելացմամբ, այլև ավելի մեծ
չափով՝ արդեն եղած արտադրական կարողությունների լրիվ և ռացիոնալ օգ-
տագործմամբ, սարքավորումների նորացմամբ, ժամանակակից գիտության ու
տեխնիկայի արմատավորմամբ, ինչպես նաև աշխատաժամանակի յուրաքան-
չյուր րոպեի, յուրաքանչյուր մեքենայի ու մեխանիզմի, հումքի ու վառելիքի
ամեն մի գրամի խնայողությամբ:

Կուսակցության Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումների կեն-
սագործումը մեծ չափով պայմանավորված կլինի այն բանով, թե կուսկազ-
մակերպությունները որքանով կկարողանան նպատակամղել մեր արտադրա-
կան և գիտահետազոտական կոլեկտիվների ուժերը՝ արտադրության հետագա
ինտենսիվացման, տեխնոլոգիայի արմատավորման, կառավարման և կազմա-
կերպման մակարդակի բարձրացման, գոյություն ունեցող բոլոր ռեզերվների
հայտնաբերման, դրանց օգտագործման, բանվորական, ինժեներա-տեխնիկա-



կան և այլ կադրերի մասնագիտական, կազմակերպչական ու քաղաքական
մակարդակի բարձրացման նպատակին:

Արդյունավետությունը սինթեզող ցուցանիշ է և փաստորեն արտացոլում
է յուրաքանչյուր ձեռնարկության գործունեության համարյա բոլոր բնագավառ-
ները, տնտեսական աճի որակական գործոնները:

Մայրաքաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի և
ընդհանրապես արտադրության կազմակերպման վերլուծությունները ցույց են
տալիս, որ, չնայած գիտատեխնիկական առաջադիմության ասպարեզում ձեռք
բերած հաջողություններին, մեր գործունեության մեջ դեռևս կան լուրջ թերու-
թյուններ ու բացեր: Հնգամյակի նախավերջին երկու տարում (1968—1969 թթ.)
Երևանի արդյունաբերության արտադրանքի ծավալն աճել է ավելի ցածր տեմ-
պերով, քան հնգամյակի առաջին երկու տարում: Այսպես, եթե 1966 թ. այն
կազմել է 11,4 տոկոս, 1967-ին՝ 14,6, ապա 1968-ին՝ 8,5, իսկ 1969-ին՝ 9,2
տոկոս: Իրացման ծավալը 1968-ին մեծացել է 10,5, իսկ 1969-ին՝ 8,7 տոկո-
սով: Եվ այս բոլորն այն դեպքում, երբ Երևանում արդյունաբերական ձեռ-
նարկությունների քանակն ավելացել է 32-ով:

Բավարար չի կարելի համարել նաև աշխատանքի արտադրողականության
ցուցանիշները: Չնայած այն ընդհանուր առմամբ աճել է 24 տոկոսով, սա-
կայն վերջին տարիներս աճի տեմպերն անհավասարաչափ են և ավելի ցածր,
քան 1967 թ.: Մայրաքաղաքի արդյունաբերության արտադրանքի ծավալային
աճի միայն 65 տոկոսն է ապահովվել արտադրողականության աճի հաշվին:
Իջել է ֆոնդազինվածության ցուցանիշը, զգալի չափով թուլացել են արդյու-
նաբերական ձեռնարկությունների ինքնարժեքի իջեցման տեմպերը: Հնգամյա-
կի առաջին տարիներին դրանք ավելի բարձր են եղել, քան վերջին երկու
տարում: Խախտվել է աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի
ֆոնդի ծախսման աճի հարաբերակցությունը՝ հօգուտ վերջինիս:

Մենք դեռ չենք հասել այն բանին, որպեսզի քաղաքի արդյունաբերական,
շինարարական և տրանսպորտի բոլոր կազմակերպությունները սիստեմատի-
կաբար կատարեն պլանային առաջադրանքներն ինչպես քանակական, այն-
պես էլ որակական ցուցանիշներով:

Այդ երևույթի հիմնական պատճառներից մեկը գիտատեխնիկական առա-
ջադիմության դանդաղ ընթացքն է, եղած կարողությունների ոչ ռացիոնալ
օգտագործումը, արտադրական ցածր կուլտուրան:

Մայրաքաղաքի արդյունաբերական շատ ձեռնարկություններում դեռևս
ցածր են արտադրության տեխնիկական զինվածությունը, տեխնոլոգիական
պրոցեսների և արտադրության կազմակերպման մակարդակը, նոր տեխնիկա-
յի արմատավորման տեմպերը: Խիստ անբավարար են իրականացվում ար-
տադրական պրոցեսների մեքենայացումն ու կոմպլեքսային ավտոմատացու-
մը: Աշխատանքի կազմակերպման ասպարեզում թույլ են տրվում անհանդուր-
ժելի թերություններ և սխալներ, որոնք հանգեցնում են հիմնական ֆոնդերի
և աշխատանքի ապարդյուն ծախսման, ցածր է տեխնոլոգիական, արտա-
դրական և աշխատանքային կարգապահությունը և, որպես դրանց հետևանք,
թողարկվող արտադրանքի որակն ու տեխնիկական մակարդակը, բարձր են
անարտադրողական ծախսերը: Լուրջ թերություններ կան ձեռնարկությունների
կառուցվածքի բարելավման, կառավարման ապարատի էժանացման գործում:
Անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում նոր, առաջավոր տեխնոլոգիական
պրոցեսների արմատավորմանը, ժամանակակից նյութերի կիրառմանը: Այս

ամենն իջեցնում է աշխատանքի արտադրողականությունն ու արտադրության արդյունավետությունը։ Այս առումով անմխիթար է Երևանի մահուդի ֆաբրիկայի ներկա վիճակը։ Գիտատեխնիկական առաջադիմության վերաբերյալ կուսկազմակերպության լավ որոշումները չեն իրագործվել։

Ժամանակակից արտադրության բախտը կախված է տեխնոլոգիական գործոնից։ Ամեն մի մտահղացում, որքան էլ լավ լինի, եթե տեխնոլոգիապես չիրագործվի, դատապարտված է արժեզրկման։ Տեխնոլոգիական պրոցեսների ճիշտ նախագծումն ու իրականացումն են որոշում թողարկվող արտադրանքի քանակի ու որակի հարցերը։ Պատահական չէ, որ յուրաքանչյուր երկրի արտադրության մակարդակի ճիշտ արտացոլող ցուցանիշը համարվում է տեխնոլոգիական կարողությունների մեծությունը։ Արդի գիտատեխնիկական հեղափոխությունը պահանջում է իրականացնել իսկական տեխնոլոգիական հեղաբեկում։ Ճիշտ է, այս ասպարեզում մենք ունենք որոշակի հաջողություններ, սակայն, երբ հարցը դիտում ենք ժամանակի պահանջների տեսանկյունից, դեռ շատ անելիքներ ունենք։

Մի առիթով ակադեմիկոս Գ. Դավթյանը լավ է ասել, թե ներկայումս գիտության նվաճումներն արտադրության մեջ ներդնելու գրավականն այն է, որ արտադրությունը հնարավորություն և անհրաժեշտ մակարդակ ունենա՝ դրանք ընդունելու համար։ Մեզ թվում է, որ արտադրության տեխնոլոգիական հնարավորությունների և մակարդակի բարձրացման հարցն այժմ արմատական է և կուսկազմակերպություններից պահանջում է հետևողական ու քրտնաջան աշխատանք։

Որքան էլ ռացիոնալ և խելացի կազմակերպվեն տեխնոլոգիական պրոցեսներն ու արտադրությունը, մենք անհրաժեշտ արդյունք չենք ստանա, եթե չկարողանանք ապահովել տեխնոլոգիական և արտադրական բարձր կարգապահությունը։ Ցավոք, այս տեսակետից մեզ մոտ գործն այնքան էլ բարվոք չէ։ Շատ գործարաններում և շինարարական հրապարակներում համարյա ամեն քայլափոխի կարելի է հանդիպել տեխնոլոգիական կարգապահության խախտման դեպքերի, որոնք ուղղակիորեն իջեցնում են արտադրանքի որակը, պատճառում լրացուցիչ ապարդյուն ծախսեր։

Գիտատեխնիկական առաջադիմությունն ու արտադրության արդյունավետությունը մեծ չափով պայմանավորված են արտադրության տեխնիկական վերազինմամբ, հիմնական ֆոնդերի մեծացմամբ, հին, ֆիզիկապես և բարոյապես մաշված սարքավորումները նոր, բարձրարտադրողական սարքավորումներով փոխարինելով, նրանց մոդեռնացմամբ։

Արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունների առաջնակարգ խնդիրն է՝ արտադրության տեխնիկական վերազինման հարցերը պահել ուշադրության կենտրոնում և ամեն ինչ անել կարճ ժամանակամիջոցում արտադրությունը հագեցնելու ժամանակակից տեխնիկայով։ Յուրաքանչյուր ձեռնարկության համար անհրաժեշտ է հնարավոր կարճ ժամանակամիջոցում, մանրակրկիտ ուսումնասիրությունների հիման վրա, մշակել և հաստատել արտադրության տեխնիկական վերազինման և վերակառուցման, նրա տեխնիկական հագեցվածության բարձրացման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման հեռանկարային կոմպլեքսային պլաններ, որոնք հնարավորություն ընձեռեն բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, առանց աշխատուժի ավելացման։

Արտադրության տեխնիկական վերազինման և վերակառուցման պլանների մշակումն ու իրականացումը բարդ և ծավալուն գործ է և կարիք ունի կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների ակտիվ օգնության։ Բանն այն է, որ հեռանկարային պլանների մշակումն ու իրականացումը առնչվում են զանազան մինիստրությունների, գերատեսչությունների, գիտահետազոտական, նախագծային և շինարարական կազմակերպությունների հետ։ Առանց կուսկոմիտեների միջամտության ու աշխատանքների կոորդինացման, շատ հարցեր կարող են չլուծվել, ձգձգվել, ճիշտ ուղղություն չստանալ։

Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեներն այս գործում պետք է օգտագործեն ՍՄԿԿ Մոսկվայի քաղաքային և շրջանային կոմիտեների աշխատանքի փորձը։ Այնտեղ կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների պլենումներում ու բյուրոների նիստերում քննարկվում և հաստատվում են առանձին ձեռնարկությունների տեխնիկական վերազինման և վերակառուցման պլաններն ու կազմակերպական տեխնիկական միջոցառումները։ Աշխատանքի նման ձևը ապահովում է զարգացման ճիշտ ուղղության ընտրությունը, բարձրացնում տնտեսական ու տեխնիկական ղեկավարների ու կազմակերպությունների պատասխանատվությունն այդ պլանների կատարման գործում։

Վերջին ժամանակներս կուսակցության Մոսկվայի քաղկոմի և շրջկոմների նախաձեռնությամբ, համապատասխան մինիստրությունների, գիտահետազոտական, նախագծային կազմակերպությունների և ձեռնարկությունների հետ մեկտեղ, մշակվել են Մոսկվայի արդյունաբերության հիմնական ճյուղերի գործարանների ու ֆաբրիկաների տեխնիկական զարգացման հեռանկարային պլաններ, որոնց իրականացումը հնարավորություն կընձեռի բարձրացնել արտադրության տեխնիկական մակարդակը և մոտակա 7—10 տարում մեքենաշինության ճյուղերում ապահովել աշխատանքի արտադրողականության աճը 2—3,5 անգամ՝ առանց աշխատողների թվի ավելացման։ Թեթև և սննդի արդյունաբերության ձեռնարկություններում կավելանա արտադրանքի ծավալը, կբարելավվեն արտադրանքի որակն ու աշխատանքային պայմանները։

Գիտատեխնիկական առաջադիմությունը չի կարելի պատկերացնել առանց ժամանակակից արտադրանքի թողարկման։ Վերջին հաշվով մենք տեխնիկական առաջադիմությունն իրականացնում ենք նաև թողարկվող արտադրանքի որակի և դրա տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավման համար։ Այժմ Երևանի մեքենաշինական ձեռնարկությունների արտադրանքի միայն 15—20 տոկոսն է համապատասխանում ժամանակակից համաշխարհային բարձրագույն մակարդակին։ Թողարկվող արտադրանքի 40—50 տոկոսը համապատասխանում է համաշխարհային միջին մակարդակին, իսկ 25—30 տոկոսը ցածր է այդ մակարդակից։ Հաստոցաշինության մեջ 50—60 տոկոսը ցածր է համաշխարհային միջին մակարդակից։ Ավելի վատ են ցուցանիշները թեթև, սննդի և տեղական արդյունաբերության ձեռնարկություններում։ Արտադրանքի որոշ տեսակներ թողարկվում են առանց բարելավումների և սպառվում են լոկ այն պատճառով, որ այդ նույն մակնիշից ուրիշ արտադրող չկա։ Էլեկտրաշարժիչների գործարանի դիրեկտոր Բ. Օթարովն ու կուսկազմակերպության քարտուղար Վ. Սահակյանը պետք է իմանան, որ նախագծման, հաշվարկների, տեխնոլոգիայի և նյութերի առաջադիմության պայմանները թելադրում են էլեկտրաշարժիչների նորացում 6—8 տարին մեկ անգամ, հետևաբար, 5—8 տարուց ավելի մի տեսակի էլեկտրաշարժիչ պատրաստել չի կարելի։

Ավելորդ չի լինի մեկ անգամ ևս հուշել էլեկտրաճշգրիտ սարքերի և սարքաշինական գործարանների կուսկազմակերպություններին և նոր ղեկավարներին (հին ղեկավարներն ազատվել են աշխատանքից էական թերությունների պատճառով)՝ Կ. Համբարձումյանին, Վ. Նալբանդյանին, Լ. Արոյանին, Մ. Ջաքարյանին, որ սարքաշինության արտադրանքը, համաձայն հաշվարկների ու պրակտիկայի, պետք է նորացվի յուրաքանչյուր 2—3 տարին մեկ, հակառակ դեպքում այն տեխնիկապես հնացած կլինի։

Մենք չենք կարող անտարբեր անցնել այն տխուր փաստի կողքով, որ, չնայած նվաճումներին, դեռևս ցածր է թողարկվող արտադրանքի որակը։ Արտադրության արդյունավետության վրա շատ գործարաններում բացասաբար են անդրադառնում անարտադրողական ծախքերը, որոնք հետևանք են խոտանի, ցածրորակ և ցածր տեսակի արուրքների արտադրության։ Հաշվումները ցույց են տալիս, որ խոտանի հետևանքով առաջացած աշխատուժի կորուստները կազմում են ամբողջ կորուստների մոտ 12 տոկոսը։ Զգալի չափով բարձր են նաև նյութական կորուստները։

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումն առանձնակի ուշադրություն նվիրեց արտադրության ինտենսիվացման, եղած կարողությունների և աշխատուժի ռացիոնալ օգտագործման հարցերին։ Առանց տատանման կարելի է ասել, որ մեր ռեզերվների մեծ մասն այստեղ է թաքնված։ Մայրաքաղաքի արդյունաբերության հիմնական ֆոնդերն ու աշխատուժի քանակը բավականին աճել են։ Հիմնական ֆոնդերի ֆոնդահատույցի ցուցանիշը վերջին տարիներին (1968—1969 թթ.) զգալիորեն բարձրացել է։

Մենք պետք է հասնենք աշխատաժամանակի կորուստների խիստ կրճատման, կադրերի հոսունության իջեցման։ Այս նպատակով անհրաժեշտ է, որպեսզի ձեռնարկությունների կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները և տնտեսական ղեկավարները գործնական միջոցներ ձեռնարկեն աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու, աշխատաժամանակը լրիվ օգտագործելու, գործալքությունը և այլ կարգի խախտումները կասեցնելու համար։ Կուսկազմակերպությունները պարտավոր են բարձրացնել քաղաքական-դաստիարակչական աշխատանքի մակարդակը, աշխատել յուրաքանչյուր բանվորի, ծառայողի հետ, լսել և իրականացնել նրանց պահանջներն ու առաջարկությունները, որոնք ելնում են աշխատանքի ճիշտ կազմակերպման և արտադրության պայմաններն ու կուլտուրան բարձրացնելու շահերից, ստեղծել սովորելու, մասնագիտական որակավորումը բարձրացնելու, ստեղծագործական աշխատանքով զբաղվելու լայն հնարավորություններ։ Խիստ կարևոր են աշխատանքային օրենսդրության պահանջների պահպանումն ու իրականացումը։

Գործի շահերը պահանջում են ավելացնել հաստոցների վրա աշխատող կոմունիստների թիվը, ստեղծել հասարակական հիմունքներով գործող կադրերի բաժիններ, վետերանների խորհուրդներ, որոնք աշխատանքային կարգապահության խախտման և աշխատանքից ազատման յուրաքանչյուր դեպք դարձնեն քննարկման առարկա, դրանց բացառման նպատակով՝ ձեռք առնեն անհրաժեշտ միջոցներ։ Ընդ որում, աշխատանքը պետք է չկրի ժամանակավոր բնույթ, այլ լինի հետևողական և տևական։

Միաժամանակ պետք է անհաշտ պայքար մղել արտադրությունը կազմալուծողների դեմ։ Այս տեսակետից ուսանելի է կուսակցության Լենինգրադի քաղաքային կազմակերպության փորձը։ Վերջերս այստեղ ստեղծվել է աշխատանքային ռեսուրսների օգտագործման քաղաքային վարչություն, որի նպատակն է բարելավել կադրերի ճիշտ տեղաբաշխումը, քաղաքացիներին ապահովել համապատասխան աշխատանքով։ Կուսակցության քաղկոմն այդ վարչության վրա է դրել նաև արտադրությունը կազմալուծողների դեմ պայքարելու պատասխանատվությունը։ Այժմ այնտեղ գոյություն ունի հետևյալ կարգը. աշխատանքային կարգապահության խախտման պատճառով աշխատանքից ազատվածները և, այսպես կոչված, չվողները աշխատանքի կարող են տեղավորվել միայն այս վարչության շրջանային տեղամասերի միջոցով։ Աշխատանքային կարգապահությունը խախտողներին, անկախ նրանց մասնագիտությունից, տրվում է ավելի ցածր որակավորում և աշխատավարձ։ Երեք ամսվա ընթացքում նրանց զրկում են պարգևատրումից և նյութական այլ խրախուսանքից, ամառվա ընթացքում նրանց արձակուրդ չի տրվում։

Գիտատեխնիկական առաջադիմությունն ու արտադրության արդյունավետության բարձրացումը պահանջում են կատարելագործել ու բարելավել արտադրության կազմակերպումն ու կառավարումը։ Արտադրության կազմակերպման մակարդակը պետք է համապատասխանի ժամանակակից գիտության ու տեխնիկայի նվաճումներին և հնարավորություն ընձեռի հասնելու առավելագույն ցուցանիշների, առանց լրացուցիչ ծախսումների։

Ժամանակակից արտադրությունն իր ծավալով, բարդությամբ, տարբեր օղակների բազմազանությամբ, նրանց փոխադարձ ներգործության առկայությամբ, մեքենաներով, աշխատող մարդկանցով դինամիկ մի սիստեմ է, որի կազմակերպումն ու կառավարումն առանց ավտոմատացման և մեքենայացման միջոցների, հաշվողական տեխնիկայի կիրառման անհնար է։

Ներկայումս ղեկավարման, կառավարման համար օգտագործվող ինֆորմացիան այնքան ծավալուն ու բազմազան է, որ, առանց դրանց սիստեմավորման և էլեկտրոնային մեքենաների միջոցով նախնական վերամշակման, հնարավոր չէ օգտագործել, իսկ առանց ինֆորմացիայի ոչ մի ղեկավարություն չի կարող կառավարման հրահանգներ տալ։ Հարցի լուծումը պայմանավորված է նրանով, թե արտադրության մեջ որքան արագ կարմատավորվեն կիբեռնետիկան, էլեկտրոնային հաշվիչ մեքենաները և զանազան կազմակերպչական տեխնիկան, որոնք ռեալ հիմք են կառավարման ավտոմատացման և մեքենայացման համար։

Չնայած որ ներկայումս հանրապետությունում գործում է մոտ 21 հաշվողական կենտրոն, բայց մենք դեռ չենք կարողացել հասնել այն բանին, որպեսզի ձեռնարկություններում լայն թափ ստանան ինժեներական և տնտեսագիտական աշխատանքների մաթեմատիկական-տնտեսական եղանակները, որոնք լուրջ նախապայման կհանդիսանան հետագայում կառավարման ավտոմատ սիստեմների մշակման և ներդրման համար։ Այդ հաշվողական կենտրոնների կապը արտադրության հետ շատ թույլ է, և հաշվողական տեխնիկան այստեղ չի կատարում իր որակական ֆունկցիան։ Հարկավոր է կարճ ժամանակամիջոցում հասնել այն բանին, որպեսզի մեր արդյունաբերական ձեռնարկությունների, տրանսպորտի, շինարարական կազմակերպությունների կապը հաշվողական կենտրոնների հետ սերտանա, մաթեմատիկական, տնտեսագիտական, հաշվողական, ինժեներական և այլ հաշվարկներն իրականացվեն կոոպերացիոն հիմունքներով։

Ժամանակն է, որ յուրաքանչյուր ձեռնարկության ղեկավարություն հոգա

արտադրության օպտիմիզացիայի նպատակների, կիբեռնետիկ կառավարման սկզբունքների և սիստեմների իրականացման մասին (իհարկե, տնտեսական արդյունավետության պայմանով միայն), արագ թափով արտադրության մեջ ներդնի նրա կառավարման նոր մեթոդները, որոնք կբարձրացնեն կառավարչական աշխատանքի արտադրողականությունը, կկրճատեն այդ գործով զբաղվող մարդկանց թիվը։

Անժխտելի են տնտեսագիտական աշխատանքների ուժեղացման, աշխատանքի նորմավորման ու պայմանների բարելավման, գործի ճիշտ կազմակերպման, արտադրության կառուցվածքի բարելավման, դրա էժանացման ասպարեզում ձեռք բերած հաջողությունները։ Սակայն մայրաքաղաքում դեռևս շատ են այն ձեռնարկությունները, որտեղ վատ է աշխատանքի կազմակերպումը և լուրջ ուշադրություն չի նվիրվում ժամանակակից պահանջների ոգով արտադրության վերակառուցման վրա։

Կուսկազմակերպությունները պետք է լինեն արտադրության ռացիոնալ ու աշխատանքի գիտական կազմակերպման, կառավարող ապարատի էժանացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, կիբեռնետիկայի և հաշվողական տեխնիկայի արմատավորման հիմնական կազմակերպիչները։

Ավտոմատացումը, մեքենայացումը, հաշվողական տեխնոլոգիայի կիրառումը և տեխնիկական առաջադիմության այլ գործոններ պահանջում են ձեռնարկության օպտիմալ մեծություն և առավելագույն մասնագիտացում։ Կենտրոնացված և մասնագիտացված խոշոր ձեռնարկություն է Երևանի էլեկտրալամպերի գործարանը, որտեղ այդ երկու գործոնների զուգակցումը դրական արդյունք է տվել ինչպես արտադրության արդյունավետության բարձրացման, այնպես էլ տեխնիկական առաջադիմության արմատավորման գործում։ Գըլխամասային գործարանի հիման վրա Հայէլեկտրալույս միավորման ստեղծումը կենտրոնացման և մասնագիտացման սկզբունքի տրամաբանական շարունակությունն է։

Պետք է ասել, որ գիտական շատ կազմակերպությունների ղեկավարներ և կուսկազմակերպություններ դեռևս դանդաղ են վերակառուցում իրենց աշխատանքը նոր պահանջների համաձայն։ Գիտական աշխատողների ուժերը անհրաժեշտ չափով չեն ուղղված գիտության և տեխնիկայի կարևորագույն պրոբլեմների լուծմանը, չափազանց երկար են արտադրության մեջ գիտության նվաճումների ներդրման ժամկետները, թեմատիկ պլաններում տեղ են գտնում ոչ-էական, զուգահեռ թեմաներ, որոնք փոշիացնում են գիտական ուժերն ու միջոցները, և այդ այն դեպքում, երբ հրատապ թեմատիկայի մշակումը ձըգձըգվում է տարիներով։ Գիտահետազոտական ինստիտուտներում և այլ գիտական, նախագծային կազմակերպություններում վատ է գիտական կադրերի աճեցման գործը։ Կան կազմակերպություններ, որտեղ գիտական աստիճան ունեցող գիտաշխատողների թիվը նվազում է, տարիներ շարունակ չի ավելանում հրապարակված գիտական աշխատանքների քանակը։

Գիտահետազոտական ինստիտուտների խոշոր թերություններից մեկն էլ այն է, որ դրանց մասնագիտացումը հաճախ չի առնչվում մայրաքաղաքի և հանրապետության արդյունաբերության մասնագիտացման հետ։ Գիտահետազոտական կազմակերպությունները, իհարկե, կարող են աշխատել միութենական հրատապ թեմաների մշակման վրա։ Սակայն գիտության և արտադրության կապի ուժեղացման տեսակետից շատ նպատակահարմար է, որպեսզի



ճյուղային գիտահետազոտական ինստիտուտները մշակեն նաև այն թեմաները, որոնք կապ ունենան տեղում գործող արդյունաբերական ձեռնարկությունների հետ։ Սա հնարավորություն կընձեռի արդյունավետ համագործակցություն ստեղծել ինստիտուտների և գործարանների միջև, ճիշտ իմանալ արտադրության իրական վիճակն ու հնարավորությունները։ Աննորմալ պետք է համարել այն, որ թեև հանրապետությունում խիստ զարգացած է հաստոցաշինությունը (Միությունում գրավում է հինգերորդ տեղը), բայց հաստոցաշինական փորձարարական գիտահետազոտական ինստիտուտի Անդրկովկասյան մասնաճյուղը, որը գտնվում է Երևանում, մասնագիտացված է այնպիսի երեք հիմնական ուղղություններով, որոնցից ոչ մեկը հանրապետության հաստոցաշինության մեջ չի իրականացվում (ժապավենային հղկող, էլեկտրաքիմիական և փոքր հավասարակշռման հաստոցներ)։ Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները պետք է հասնեն այն բանին, որպեսզի գիտահետազոտական ինստիտուտների մասնագիտացումը հիմնականում համընկնի արդյունաբերության ճյուղերի պրոֆիլին։

Ինչպես գիտական հիմնարկությունների, այնպես էլ արտադրական ձեռնարկությունների կուսկազմակերպությունների խնդիրն է՝ ուժեղացնել փոխադարձ համագործակցությունը, ապահովել արտադրության մեջ գիտության և աշխատանքի արտադրողականության ու արտադրության արդյունավետության բարձրացումը։

Ներկայիս արտադրության առանձնահատկություններից մեկն այն է, որ նրանում ընդգրկված կադրերից պահանջվում է անընդհատ բարձրացնել իրենց տեխնիկական մակարդակը։ Տեխնիկական և տնտեսական զարգացումն ստեղծել է բազմաթիվ նոր մասնագիտություններ։ Եթե XVII դարում մարդկությանը հայտնի էր 80 մասնագիտություն, ապա այժմ՝ 40 հազարից ավելի, որից 6 հազարը մինչև 1949 թ. գոյություն չի ունեցել։ Ինչպես տեսնում ենք, մասնագիտությունների 15 տոկոսը առաջ է եկել վերջին երկու տասնամյակում։ Նոր մասնագիտությունների աճի պրոցեսն արագ թափով ընթանում է նաև մեզ մոտ։ Արտադրության մեջ նոր տեխնիկայի և տեխնոլոգիական պրոցեսների անընդհատ ներդրումը, նոր մասնագիտությունների արագ աճը, արտադրության կազմակերպման և կառավարման նոր ձևերի ու մեթոդների կիրառումը և այլ հանգամանքներ հրամայաբար պահանջում են կադրերի պատրաստման, նրանց որակավորման բարձրացման հարցերը դնել առաջին պլանի վրա։

Կուսակցության Երևանի քաղկոմն ու շրջկոմները, ելնելով մայրաքաղաքի արդյունաբերության հետագա հզոր վերելքի շահերից, ուղիներ են որոնում և միջոցներ ձեռնարկում նոր տեխնիկայի, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, արտադրության կազմակերպման բարելավման և կառավարման կատարելագործման, կադրերի պատրաստման ու որակավորման խնդիրները լուծելու համար։ Մեզ համար գործողության ուղեցույց է կուսակցության XXIII համագումարի այն եզրակացությունը, որ՝ «Գիտատեխնիկական նվաճումները արտադրության մեջ արմատավորելը հանրային աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու վճռական գործոն է։ Առանց դրա հնարավոր չէ հաջողությամբ լուծել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդիրը»։ Այստեղից բխում է այն միտքը, թե գիտատեխնիկական առաջադիմությունը ժամանակի թելադրանքն է:

---



ԳՈՒՍՏԱՎ ՀՈՒՍԱԿ

*Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար*

# ԼԵՆԻՆԻԶՄԸ ԵՎ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱՅՈՒՄ

**1970** թվականը— լենինյան հոբելյանի, սովետական բանակի կողմից մեր հայրենիքի ազատագրման 25-րդ տարելիցի, Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության հիմնադրման 50-ամյակի նախօրեի թվական: Մեր ժողովրդի համար հույժ կարևոր այդ տարեթվերը կապված են մեծ հեղափոխականի ու մտածողի՝ Վ. Ի. Լենինի անվան, նրա հեղափոխական ուսմունքի ու պրակտիկ գործունեության հետ: Լենինի երևելի անձնավորությունը ներգործել է միջազգային կոմունիստական շարժումների և առանձին կոմունիստական կուսակցությունների ձևավորման վրա: Լենինիզմի հետ է կապված Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության՝ բանվոր դասակարգի, գյուղացիության ու ինտելիգենցիայի, ողջ աշխատավորության մարտական ներկայացուցչի, ավանգարդի ստեղծումը: Մարքսիստական-լենինյան հեղափոխական ուսմունքը մեր կուսակցությանը հնարավորություն ընձեռեց դասակարգային հաջող պայքար մղել բուրժուական Չեխոսլովակիայում և այնուհետև գլխավորել ազգային-ազատագրական պայքարը՝ ընդդեմ ֆաշիստական լծի ու հաղթանակով պսակել այն: Մարքսիզմ-լենինիզմի ուսմունքով զինված մեր կուսակցությունն ու Չեխոսլովակիայի աշխատավոր ժողովուրդը, պատմական նոր պայմաններում, սոցիալիստական հասարակարգի հիմքերը դրին և ապահովեցին մեր երկրի սոցիալական, տնտեսական ու կուլտուրական աննախընթաց զարգացումը:

Խորհրդածելով այդ հոբելյանների շուրջ ու ետադարձ հայացք գցելով անցյալին, մենք հանգում ենք այն հետևության, որ անցյալ կեսդարում մեր պատմության ամենապայծառ էջերը գրվել են այն ժամանակ, երբ ՉԿԿ ղեկավարվել է մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներով ու դրանք ստեղծագործաբար կիրառել իր քաղաքականության մեջ: Եվ, ընդհակառակը, բոլոր հապաղումները, տատանումները ու մասնակի անհաջողությունները անհետևողականության կամ ՉՍՀ ուժի ու ծաղկման աղբյուրից՝ լենինիզմից հեռանալու հետևանք էին:

**Ա**ռաջին համաշխարհային պատերազմի վերջում, հատկապես Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո, Եվրոպայում իմպերիալիստական սիստեմի խոր ճգնաժամը հավաստող հեղափոխության մեծ ալիք բարձրացավ: Բանվորական շարժումը մի շարք երկրներում ստեղծում էր հեղափոխական քաղաքական կուսակցություններ: Դրա համար Լենինն այն ժամանակ բացառիկ մեծ ուշադրություն էր նվիրում կոմունիստների միջազգային շարքերի միավորմանը, այն բանին, որպեսզի պրոլետարական հեղափոխության հասունացման ժամանակաշրջանում բոլշևիկյան կուսակցությունը վերջինիս բազմակողմանի օգնություն ցույց տա: Պրոլետարական ինտերնացիոնալիզմը մարմնավորվում էր այդ կուսակցությունների գաղափարական, կազմակերպական միասնության և մարտունակության մեջ:

Եվրոպական պայմաններում միջազգային կոմունիստական շարժումը ծագեց, ամենից առաջ, շնորհիվ սոցիալ-դեմոկրատական տրադիցիոն կուսակցություններից անջատվելով, ռեֆորմիզմի և ռևիզիոնիզմի ազդեցությունը թոթափելով, հատկապես կենտրոնական ու հարավ-արևելյան Եվրոպայում, ազգային սպեցիֆիկ յուրահատկությունների ծայրահեղ շեշտումից ձերբազատվելով: Լենինը լավ էր հասկանում կայուն կենտրոնացման անհրաժեշտությունը դեռևս լիովին չհասունացած կոմունիստական շարժումների համար, որոնք պայքարում էին այդ շրջանում առավել համարում ունեցող՝ ավելի փորձառու հակառակորդի դեմ: Բայց, միաժամանակ, Լենինը բոլորից պարզորոշ էր տեսնում ««ձախության» մանկական հիվանդության», փուչ ռադիկալիզմի, ուրիշի փորձի ընդօրինակման և ուրիշի օրինակները փոխադրելու վտանգավորությունը: Հետևապես, լենինիզմը XX դարի նոր պայմաններում երևան եկավ որպես մարքսիզմի ստեղծագործական կիրառում և ստեղծագործական կիրառում էր պահանջում յուրաքանչյուր առանձին վերցրած երկրում, կուսակցության մեջ:

Գոյավորված Չեխոսլովակյան Հանրապետության պրոլետարիատը ծայրահեղ բարդ իրադրության մեջ ընկավ: Ազգային դեմոկրատական հեղափոխության հաղթանակը, Հաբսբուրգյան միապետության անկումը, Անտանտի տերությունների հաղթանակը, և, միաժամանակ, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության մեծ ազդեցությունն ուղեկցվում էին չեխական ու սլովակյան նացիոնալիզմի բարձրացող ալիքներով, որն ընդգրկում էր նաև բանվորական շարժումը: Հարյուրամյակների պայքարով նվաճված պետական ինքնուրույնությունն սատարեց պրոլետարիատի այն պատրանքների ծավալմանը, որ, իբր, սոցիալիզմը կարելի է կառուցել ռեֆորմներով, պառլամենտի ու դեմոկրատական ընտրությունների օգնությամբ, համագործակցելով ազգային բուրժուազիայի հետ:

Երազանքներն այնպիսի հանրապետության մասին, ուր չի լինելու սոցիալական ու ազգային ճնշում և որը, դեմոկրատական ընտրությունների շնորհիվ, պետական օրգանների բոլոր աստիճանները հետզհետե կվերածի սոցիալիստական պետության, հօդս ցնդեցին, ուստի և վրա հասան հիասթափությունը, դըժգոհությունը, սրվեց դասակարգային պայքարը: Պրոլետարիատի գիտակից մասն սկսեց հասկանալ, որ երկրում ամրապնդվում են բուրժուազիայի դիրքերը: Ձախ սոցիալ-դեմոկրատները, քաղաքական իշխանության նվաճման համար քաղաքական նոր կոնցեպցիա, պայքարի նոր ձևեր ու միջոցներ էին որոնում: Նրանց ոգեշնչում էին Հոկտեմբերյան հեղափոխությունը, հարևան երկրների հեղափոխական հուզումները, միջազգային բանվորական շարժումները՝ հանուն սովետների ստեղծման: Լենինիզմը նրանց համար թեորիական աղբյուր դարձավ: Լենինիզմի ուսումնասիրումը նպաստեց թեորիական աշխատանքի հանդեպ հետաքրքրության զգալի աճին, որն իր գործնական նշանակությունն ունեցավ կուսակցության ղեկավարման ինչպես տակտիկայի, այնպես և ծրագրի հարցերում աջերի մեծամասնությունից ձախերի անջատման համար:

1921 թվականին Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության հիմնադրումը և նրա մուտքը հեղափոխական բանվորական կուսակցությունների միջազգային միասնությունը մարմնավորող III Ինտերնացիոնալ ցույց տվեց, որ մեր երկրի բանվորական շարժումը լենինիզմի արգասիք է: Կապերը խզելով կոալիցիոն քաղաքականության, ռեֆորմիզմի, սոցիալ-դեմոկրատական լիդերների ռևիզիոնիզմի հետ, բանվոր դասակարգի տարբեր ազգային ջոկատները համախմբվեցին միասնական հետևողական հեղափոխական կուսակցության մեջ: Չեխոսլովակիայի առավել գիտակից կոմունիստները դեռ այն ժամանակ սկսեցին հասկանալ, որ կոմունիստական կուսակցությունը կարող է հաջողության հասնել ու հաղթանակել միայն այն դեպքում, եթե կարողանա կենսագործել խոր ազգային ու միաժամանակ ինտերնացիոնալ քաղաքականություն, սովորի ստեղծագործաբար կիրառել լենինիզմը, կարողանա իր գաղափարներով համակել ժողովրդական լայն մասսաներին: Այդ կոմունիստները ջանում էին բանվորական շարժումն ազատել ռևիզիոնիզմից, ապահովել պրոլետարիատի հեգեմոն դերը և հող նախապատրաստել պրոլետարական հեղափոխության իրականացման համար: Դա հեշտ խնդիր չէր: 20-ական թվականները, ամենից առաջ, հենց կուսակցության նախապատրաստման, նրա հեղափոխական միսիայի կատարման և Չեխոսլովակիայի բանվորական շարժման ղեկավար դիրքի գրավման, լարված ջանքերի տարիներ էին: ՉԿԿ այն ժամանակվա ղեկավարությունը, սակայն, չկարողացավ հաղթահարել այդտեղ կրկնվող ճըգնաժամային երևույթները, քարացածությունը, դոգմատիզմը և թեորիական թուլությունը: Ծանր վիճակից դուրս գալու միակ ելքը գըտնըվեց V համագումարում:

**V** համագումարում (1929 թ.) նոր, գոտվալդյան ղեկավարության գլխավորումը և բոլշևիկյան գծի հաստատումը նշանավորեցին լենինյան գաղափարների հաղթանակը մեր կուսակցության մեջ: Լենինիզմի սկզբունքները, որոնք կենսագործեց կուսակցության բոլշևիկյան միջուկը Կլիմենտ Գոտվալդի ղեկավարությամբ, հնարավորություն ընձեռեցին մեր կուսակցությանը V համագումարից հետո ձերբազատվել օպորտունիզմի ու ռևիզիոնիզ-

մի կրողներից, հաղթահարել ՛աղանդավորության վտանգը և ողջ կուսակցության ուշադրությունը սևեռել նրա բոլշևիկացման արմատական հարցերի վրա։ Կուսակցությունն սկըսեց առավել վճռական պայքար մղել ընդդեմ չեխոսլովակյան բուրժուազիայի ու ռեֆորմիստների, մերկացրեց ֆաշիզմի վտանգավորությունը և Սովետական Միության դեմ ուղղված իմպերիալիստական բուրժուազիայի ռազմական պլանները։ Կուսակցությունը ներքուստ վերափոխվելով լենինիզմի սկզբունքներով, միաժամանակ, պայքար էր մղում տնտեսական ճգնաժամի հետևանքներն աշխատավորության ուսերին բարդելու դեմ։

Կոմունիստները պաշտպանում էին գործազուրկների, արդյունաբերության ու գյուղատնտեսության աղքատացած բանվորների, մանր գյուղացիների ու ձեռնարկատերերի, արհեստավորների շահերը, պաշտպանում նըրանց սոցիալական ու ազգային ամեն տեսակ ճնշումներից, որից հատկապես շատ են տառապել Անդրկարպատյան Ուկրաինայի, Սլովակիայի ժողովուրդները, ինչպես նաև չեխական մարզերի փոքրամասնություն կազմող գերմանացիները։

Կուսակցությանը, ամենօրյա դասակարգային ընդհարումների գնով, հաջողվեց առավել սերտ կապեր ստեղծել աշխատավոր մասսաների հետ։ ՉԿԿ սովորեց մարքսիզմ-լենինիզմն ընկալել իբրև պրակտիկան ու թեորիան զուգակցող, լայնածավալ գործողություններ, որոնք փոխադարձաբար ներգործում են միմյանց վրա և փոխստուգում են միմյանց։

Հավատարմությունը լենինյան ուսմունքին, նրա գաղափարներն ստեղծագործաբար կիրառելու հմտությունը չեխոսլովակյան կոմունիստներին հնարավորություն ընձեռեցին առավել համապատասխան ուղիներ որոնել սոցիալիստական հեղափոխության իրականացման, Չեխոսլովակիայում պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման համար։ 1934 թ. կուսակցությունը մշակեց սոցիալիստական համերաշխության գաղափարը՝ կապված հակաֆաշիստական բանվորա-գյուղացիական կառավարության լոզունգի հետ։ Իր թեորիական հետևություններով, տնտեսական ճգնաժամի ժամանակաշրջանում մղած մասսայական պայքարի փորձով, ՉԿԿ դարձավ միջազգային կոմունիստական շարժման նոր ուղու մշակման մասնակիցը, որն հավանության արժանացավ Կոմինտերնի VII կոնգրեսում։

Սոցիալիստական հեղափոխությանը մոտենալու առավել համապատասխան ձևերի որոնման խիստ վճռական փուլը Չեխոսլովակիայի կոմունիստների համար դարձավ 1936 թ. կայացած ՉԿԿ VII համագումարը։ Կիրառելով Կոմինտերնի VII կոնգրեսի սկզբունքները, կուսակցությունը երկրին ու նրա ժողովրդին սպառնացող գերմանական ու ներքին ֆաշիզմի անմիջական վտանգի պայմաններում, սոցիալիստական հեղափոխությանը մոտենալու այնպիսի ձևեր մշակեց, որի էությունը՝ դեմոկրատիայի ու ազգային-ազատագրական պայքարը սոցիալիզմի համար մղվող պայքարին զուգակցելն էր։ Կուսակցության հիմնական գիծը աշխատավորական խավերի դեմոկրատական շարժման ամենատարբեր ձևերի զարգացումն էր, բանվոր դասակարգի հեգեմոնիայի նվաճումը։ Բանվոր դասակարգի ղեկավար դերի շնորհիվ ժողովրդի դեմոկրատական պահանջներում պրոլետարական գիծ կիրառվեց։ Սրա համար անհրաժեշտ էր՝ պարտության մատնել ֆինանսական կապիտալի ամենառեակցիոն խմբերին, խորտակել նրանց տնտեսական ու քաղաքական իշխանությունը, դրանով իսկ թուլացնել կապիտալիզմի դիրքերն ընդհանրապես, ամրապնդել աշխատավոր ժողովրդի դիրքերը, նրան առավել մասնակից դարձնել պետության կառավարմանը և աստիճանաբար պայմաններ ստեղծել բուրժուական դեմոկրատիան նոր տիպի դեմոկրատիայով փոխարինելու համար։ Մշակելով հեղափոխական ստեղծագործական այդ գիծը, մեր կուսակցությունը կատարեց Լենինի, կապիտալիստական երկրների պրոլետարիատին ավանդած, հեղափոխական հիմնական պատգամներից մեկը։ «Յուրաքանչյուր երկրին **կոնկրետ** մոտեցում ունենալով, հետազոտել, ուսումնասիրել, գտնել, կռահել, ըմբռնել ազգային-առանձնահատուկը, ազգային-սպեցիֆիկը՝ **միասնական** ինտերնացիոնալ խնդիրը... Այժմ պետք է բոլոր ուժերը, ամբողջ ուշադրությունը կենտրոնացնել **հաջորդ** քայլի վրա... այսինքն՝ պրոլետարական հեղափոխությանն **անցնելու** կամ **մոտենալու** ձևեր գտնելուն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 98)։

VII համագումարում ընդունված հակաֆաշիստական պայքարի նոր, ամբողջական կոնցեպցիան կուսակցության քաղաքականության հիմնաքարը դարձավ՝ հանրապետությունը ու նրա ժողովրդին արտաքին և ներքին թշնամիներից պաշտպանելու ժամանակաշրջանում։ Կատարելով այդ ծրագիրը, ՉԿԿ դուրս եկավ պրոլետարական հեղափոխական օպոզիցիայի միայն «մեկ» շրջանակներից ու դարձավ ժողովրդի պոտենցիալ ավանգարդը։ Կոմունիստական կուսակցության իրականացրած ժողովրդական ճակատի քաղաքականությունն ուղղված էր հակաֆաշիստական վիթխարի շարժման կազմակերպմանը, որը պետք է հասարակության մեջ վիժեցներ բուրժուազիայի հեգեմոնիան, նախաձեռնություն հանդես բերեր քաղաքական կյանքում, իր հեղափոխական ոգով ներգործեր երկրի հետագա զարգացման վրա։ Սակայն, իրոք, խիստ խոստումնալից այդ զարգացումը ընդհատվեց 1938 թ. սեպտեմբերի միջազգային ռեակցիայի դավադրությամբ։ Եվրոպայի իմպերիալիստական գլխավոր տերությունների ներկայացուցիչները հավաքվեցին Մյունխենում, որպեսզի Չեխոսլովակիան վաճառեին Հիտլերին։ Միակ դաշնակիցը, որը հավատարիմ մնաց Չեխոսլովակիային, Սովետական Միությունն էր։ Մեր ժողովուրդների համար Մյունխենը դարձավ արևմտյան տերությունների դավաճանության, հայրենական խոշոր բուրժուազիայի դավաճանության սինոնիմը, բուրժուական և ռեֆորմիստական սոցիալիստական կուսակցությունների լիդերների կապիտուլյանտությունը։ 1938 թ. ողբերգական փորձը ցույց տվեց, որ միայն Չեխոսլովակիայի բանվոր դասակարգը և կոմունիստական կուսակցությունն է ունակ հաջող պայքար մղելու ազգային-ազատագրության համար։

Շուտով, Մյունխենից հետո, հանրապետությունը ջախջախվեց. վերացվեցին պետական ինքնուրույնությունն ու ազգային ազատությունը։ Սկսվեցին օկուպացիայի դաժան տարիները։ Այդ ամբողջ ժամանակաշրջանում կոմունիստական կուսակցությունը չդադարեցրեց իր պայքարն ընդդեմ օկուպանտների ու դավաճանների։ Նա միակ կուսակցությունն էր, որին չընկճեց անլեգալ պայմաններում պայքարող հայրենասերներին անընդհատ հետապնդելը։ Չնայած նրա 25 հազար անդամները զոհեցին իրենց կյանքը, չնայած օկուպանտները տասնյակ հազարավոր կոմունիստների նետեցին համակենտրոնացման ճամբարները, կոմունիստները մնացին որպես ազգային-ազատագրական պայքարի միակ կազմակերպված, անընդհատ վերածնվող ու հզորացող ուժը։ Պատերազմի ընթացքում, հատկապես սովետական բանակի խոշոր հաղթանակներից հետո, կոմունիստներին հաջողվեց ստեղծել լայնածավալ Ազգային ճակատ, որտեղ ընդգրկվեցին նաև հակաֆաշիստական տրամադրություններ ունեցող բուրժուական խավերը, որոնց Լոնդոնից ղեկավարում էր նախկին պրեզիդենտ Է. Բենեշը։

Սկսելով օկուպանտների թիկունքի քայքայումից, ամենից առաջ, գործադուլներով ու սաբոտաժներով, կոմունիստներն այնուհետև ազգային-ազատագրական պայքարը վարեցին պարտիզանական գործողությունների և համաժողովրդական զինված ապստամբության նախապատրաստման ճանապարհով։ 1944 թ. օգոստոսին, խոր թիկունքում բռնկած սլովակյան ազգային ապստամբությունը, որը սլովակ ժողովրդի հակաֆաշիստական պայքարի գագաթնակետն էր, և երկրի ազատագրումը սովետական բանակի կողմից՝ նշանավորեցին ազգային և դեմոկրատական հեղափոխության սկիզբը։ Ազգային-ազատագրական պայքարի տարիները կուսակցության պատմության ամենահերոսական տարիներն էին։ Նրա ղեկավարությամբ բանվոր դասակարգը ցուցադրեց լենինյան ասույթների ճըշմարտացիությունն այն մասին, որ վերջինս ամենաառաջադեմ ու միաժամանակ խոր ազգային ուժն է։ Բանվոր դասակարգը դարձավ աշխատավորների, գյուղացիների, մանր ձեռնարկատերերի, ինտելիգենցիայի և բուրժուազիայի որոշ խավերի Ազգային ճակատի հիմնական հենարանը, միջուկը։ Նրա ազդեցությունն ավելի մեծացավ, երբ ապստամբության միջոցին, 1945 թ. մայիսի 9-ին, սովետական բանակը փրկեց մարտնչող Պրագան։ Չեխերի ու սլովակների ազգային կյանքում նոր դարաշրջան սկսվեց։

Բանվոր դասակարգը Չեխոսլովակիայում իշխանության գլուխ անցավ ազգային և դեմոկրատական հեղափոխությունների ընթացքում։ Գլխավորելով այդ հեղափոխությունը, ՉԿԿ մեծ հեղինակություն ու աջակցություն նվաճեց ժողովրդի լայն խավերի շրջանում։ Բանվոր դասակարգը դարձավ հեղափոխության հեգեմոնը և ազատագրված հայրենի հողում իրականացրեց իր իդեալները, կատարեց սոցիալիստական վերափոխումներ։ Դեռևս պատերազմի ընթացքում կոմունիստները երկրի սոցիալական, տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի մեծ վերափոխումների ծրագիր էին մշակել։ 1945 թվականի մարտ—ապրիլին վերջնականապես մշակված և ապա ազգային ճակատի կողմից հավանության արժանացած այդ ծրագիրը կոչվեց Կոշիցկու կառավարական ծրագիր։ Այնտեղ հնարավոր դարձավ կիրառել հեղափոխության մեջ դեմոկրատական և սոցիալիստական խնդիրների հարաբերակցության վերաբերյալ լենինյան ուսմունքը։ Ծրագիրը համապատասխանում էր ժողովրդի ակընկալություններին և ժողովրդա-դեմոկրատական Չեխոսլովակիայի հիմքերը դրեց։ Այն ընդունեցին և պարտավորվեցին կոմունիստների հետ մեկտեղ կատարել Ազգային ճակատի մեջ մտնող քաղաքական այլ կուսակցությունների ներկայացուցիչները, ինչպես նաև բուրժուազիայի որոշ մասը, որն այդ ժամանակ դեռևս զգալի ազդեցություն ուներ չեխ ու սլովակ ժողովրդի վրա։ Սակայն բուրժուազիան ու աջերի ներկայացուցիչները լոկ ժա-

մանակավոր համաձայնեցին քաղաքական և սոցիալ-տնտեսական հեղափոխական խոր վերափոխումներով պայմանավորված զարգացմանը: Նրանք սպասում էին, որ բանվոր դասակարգի գլխավորած հեղափոխությունը ծանր կացության մեջ կընկնի: Իսկ դա հնարավորություն կընձեռի կասեցնել նրա ընթացքը, և Չեխոսլովակիան աստիճանաբար վեր ածել սոցիալ-ռեֆորմիստական բուրժուական դեմոկրատիայի: Այդ առումով աջ ուժերն իրենց հեռանկարային պլանները կապում էին ժողովրդա-դեմոկրատական կարգի զարգացման շրջադարձի հետ: «Ով-ումի» հարցը, հանուն իշխանության պայքարի խնդիրը վերջնականապես լուծված չէր, պայքար որ տեղի էր ունենում բանվոր դասակարգի և բուրժուազիայի միջև: Այդ էին վկայում Կոշիցկու կառավարական ծրագրի հետևողական կատարման խնդիրներից բխող մշտական կոնֆլիկտները:

Ազգային և դեմոկրատական հեղափոխությունների ընթացքում փշրվեցին պետական հին ապարատի հիմնական օղակները, իշխանությունն անցավ նոր, ժողովրդական օրգաններին— ազգային կոմիտեներին: Այն բանի շնորհիվ, որ բանվոր դասակարգն այնտեղ վճռական դիրքեր էր գրավում, ազգային կոմիտեների ստեղծումը Չեխոսլովակիայի զարգացման հեղափոխական ուղենիշը, բուրժուականից նոր, ժողովրդա-դեմոկրատական պետության անցնելու շրջադարձային կետը դարձավ: Գերմանացիների ու հայրենիքի դավաճանների գույքը դրվեց ժողովրդական վարչության իրավասության տակ. արդյունաբերության առաջատար ճյուղերը, բնական հարստությունները և դրամային տնտեսությունը 1945 թ. հոկտեմբերին արդեն ազգայնացվել էին: Թշնամու ու դավաճանների հողերն անհատույց բռնագրավվեցին և հանձնվեցին մանր գյուղացիներին ու բատրակներին: Կոմունիստների գլխավորած հեղափոխությունը վերջնականապես խզեց կապերը բուրժուական գաղափարների և «չեխոսլովակիզմի» պրակտիկայի հետ, որը բացասում էր սլովակ ժողովրդի ինքնուրույն գոյությունը: Հիտլերյան ագրեսիայի և ազգային ճնշման հենարանը դարձած գերմանական բնակչության մեծամասնության վտարման ճանապարհով հեղափոխությունն ամրապնդեց պետական և ազգային սուվերենիտետը, ստեղծեց այն բանի երաշխիքը, որ այլևս երբեք չի կարող նոր Մյունխեն կրկնվել:

Պետական և ազգային ինքնուրույն կյանքի առավել կայուն երաշխիքը դարձավ երկրի նոր արտաքին քաղաքականության կողմնորոշումը— դաշինքը ՍՍՀՄ հետ: Չեխ և սլովակ ժողովուրդներն անկեղծ սեր էին ցուցաբերում Սովետական Միության հանդեպ, սոցիալիզմի առաջին երկիրը դիտելով իբրև եղբայրական դաշնակից և հանրապետության անվտանգության պատվար: Այդ հանգամանքը, միաժամանակ, նպաստում էր բանվոր դասակարգի ազգային դերի զորեղացմանը, նրա ազդեցության ամրապնդմանը՝ մեր երկրի երկու ժողովուրդների հայրենասիրաբար տրամադրված խավերի շրջաններում:

Չեխոսլովակյան կոմունիստները հեղափոխության սկզբից ևեթ համոզվեցին, որ ճշմարիտ է Լենինի դրույթը, որ անցումը սոցիալիզմին ապահովելու համար, ամենից առաջ, անհրաժեշտ է, որպեսզի բանվոր դասակարգը, կոմունիստական կուսակցության գլխավորությամբ, իր ձեռքը վերցնի պետության քաղաքական ղեկավարությունը: Բանվոր դասակարգը լավ գիտեր, որ նրա բաղձանքները կմարմնավորվեն կյանքում միայն ծրագրի հաջող և հետևողական կատարմամբ: Դրա համար կոմունիստները, հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, անօրինակ նախաձեռնություն էին ցուցաբերում, հանդիսանում երկրի տնտեսական վերակառուցման գլխավոր կազմակերպիչները: Նրանք իրենց կողմը գրավեցին ժողովրդի առավել լայն խավերին և, ինչպես ցույց տվեցին առաջին դեմոկրատական ընտրությունները, դարձան պետության ամենաուժեղ կուսակցությունը: Նրանք ստացան ձայների 38 տոկոսը և ավելի ու ավելի ամրապնդեցին բանվոր դասակարգի իշխանությունը: Նրանք կառավարության համար ստեղծարար նոր ծրագիր մշակեցին, որն ընդունեցին Ազգային ճակատի քաղաքական կուսակցությունները:

Իմպերիալիզմի փուլում համադեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստականի վերաճելու լենինյան տեսությունը 1945—1948 թթ. շրջանում դարձավ մեր կուսակցության նաև ծրագրային այլ փաստաթղթերի ու պահանջների թեորիական հիմքը: Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցությունն իր գործունեության ընթացքում ելնում էր լենինյան մի ամբողջ շարք աշխատությունների տեսական դրույթներից: Այսպես, կոմունիստներն իրենց տնտեսական պատկերացումների իրականացման համար արժեքավոր մտքեր գտան ազատագրված հայրենիքի զարգացման վերաբերյալ լենինյան **Սպառնացող վտանգը և ինչպես պայքարել դրա դեմ** աշխատության մեջ: Կուսակցությունը հմտորեն, փուլ առ փուլ, նոր պահանջներ էր առաջադրում: Նա նկատի էր առնում աշխատավորական տարբեր խավերի գիտակցականության աստիճանը և երկրի զարգացման կարիքները: Կոմունիստները չէին



անտեսում Ազգային ճակատում իրենց ղեկավար դերի մասին, նրանք այդ կենսագործում էին պրակտիկայում: Կուսակցության ղեկավար դերն ավելի ու ավելի էր դրսևորվում ինչպես լայն մասսաների շրջանում իր ազդեցությամբ, այնպես և Ազգային ճակատում, ազգային կոմիտեներում, կառավարության մեջ, ներկայացուցչական օրգաններում:

Միջազգային և ներքին բարդ իրադրության պայմաններում, երկու հակադիր լագերների բաժանված աշխարհում, Ազգային ճակատի կառավարության ներսում ավելի ու ավելի էր նկատելի դառնում հակասոցիալիստական օպոզիցիան: Ոչ-կոմունիստական կուսակցությունների ղեկավար ներկայացուցիչներն այդ ժամանակ ձգտում էին ստեղծել հակակոմունիստական բլոկ և հրաժարվում կատարել Ստեղծարար ծրագրի առաջադրանքները: Նրանք ջանում էին իրենց նպատակների համար օգտագործել 1947 թ. անբերրիությունն ու երաշտը և, ղեկավարվելով «որքան վատ, այնքան լավ» սկզբունքով, փորձում վարկաբեկել կոմունիստներին, պետության մեջ հասնել ուժերի հարաբերակցության վճռական փոփոխության: Կոմունիստները հակահարձակման անցան: Նրանք հետագա ազգայնացման, հողային ռեֆորմի արագ իրականացման, միլիոնատերերի հարկադրման պահանջներ ներկայացրին: Այդ պահանջներին հավանություն տվեցին ժողովրդական լայն մասսաները: 1948 թ. սկզբին աջ հակակոմունիստական բլոկը վճռեց բացահայտ գործել և մինչև մոտալուտ պառլամենտական ընտրությունները, փոխել ուժերի հարաբերակցությունը: Փետրվարին մինիստրները— աջ ուժերի ներկայացուցիչները հրաժարվեցին և քաղաքական խոր ճգնաժամ ստեղծեցին, որը վերաճեց իշխանության համար վճռական պայքարի:

Կոմունիստները, սակայն, արդեն հաստատակամորեն իրենց ձեռքում էին պահում իրադրությունների ելքը: Նրանք գործողությունների հանդեպ բացառիկ ունակություն, վճռականություն և շրջահայեցողություն ցուցաբերեցին: Ճգնաժամից դուրս գալու ելքը նրանք գտան ակտիվ, պոզիտիվ պայքարում, հանուն աշխատավորության վաղօրոք առաջադրած պահանջների կատարման և նվաճեցին նըրանց բացահայտ եռանդուն աջակցությունը: Աջ, հակակոմունիստական բլոկի դավադրությունը, մեր երկու ժողովուրդների ճնշող մեծամասնության հանդես գալու շնորհիվ, կրախի մատնվեց և կառավարական ճգնաժամը լուծվեց սահմանադրական ճանապարհով:

1948 թ. փետրվարը Չեխոսլովակիայի պատմության մեջ շրջադարձային ուղենիշ դարձավ: Դա որակական թռիչք էր սոցիալիստական հեղափոխության զարգացման ճանապարհին, որը իշխանության վերաբերյալ խնդիրը վերջնականապես վճռեց հօգուտ երկրի միակ իշխող ուժը դարձած բանվոր դասակարգի:

Չեխոսլովակիայի առջև սոցիալիստական լիակատար վերափոխման ուղի բացվեց:

1948 թվականի փետրվարից հետո Չեխոսլովակիան մտավ սոցիալիստական երկրների շարքերը և՛ քաղաքական, և՛ տնտեսական առումով: Տնտեսական համագործակցության կազմակերպման սկիզբը դարձավ տնտեսական փոխօգնության խորհուրդը: Չեխոսլովակյան պետության անվտանգությունը, նաև ժողովրդի ստեղծագործական աշխատանքը երաշխավորվում էր բարեկամության, համագործակցության և փոխօգնության պայմանագրով— 1955 թ. Վարշավայի պայմանագրով, որը հանդիսացավ եվրոպական սոցիալիստական երկրների քաղաքական ու ռազմական դաշինքի հիմքը: Սոցիալիստական շինարարության առանձին խնդիրներ սահմանելիս, կուսակցությունը ելնում էր ՍՍՀՄ-ում սոցիալիստական պետության շինարարության առաջին տարիների ժամանակաշրջանի լենինյան գաղափարներից: Ամենից առաջ, կուսակցությունը Լենինի աշխատություններին դիմեց սոցիալիզմի անցման առավել բարդ խնդիրներից մեկի՝ գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման խնդիրները լուծելիս:

Չեխոսլովակիայի հասարակական զարգացման նոր փուլի գլխավոր ուղղությունը՝ սոցիալիզմի կառուցման հիմնական գիծն ընդունվեց 1949 թ. ՉԿԿ IX համագումարում: Լենինիզմի ընդհանուր արմատական սկզբունքներից բխած նոր գիծը սահմանում էր հասարակական կյանքի բոլոր բնագավառների զարգացման առանցքային խնդիրները:

Չեխոսլովակիան սոցիալիզմի կառուցման բարդ շրջան թևակոխեց: Այդ շրջանում զգալի չափով ավելացավ երկրի արդյունաբերական պոտենցիալը: Մեր պետության տնտեսության զարգացման տեմպերն անցյալ 25 տարիների ընթացքում գերազանցեցին ինչպես միջին համաշխարհային ցուցանիշները, այնպես և կապիտալիստական շատ երկրների զարգացման տեմպերը: Արդյունաբերական արտադրանքի ծավալը Չեխոսլովակիայում, 1937 թ. մակարդակի համեմատ, ավելացավ 6 անգամ: Հատկապես մեծ հաջողություններ ձեռք բերվեցին Սլովակիայի ինդուստրացման ասպարեզում, որը տնտեսական, կուլտուրական և սոցիալական բնագավառներում սլովակյան ու չեխական շրջանների զարգացման մակարդակների աստիճանաբար համահավասարեցման պայմաններ ստեղծեց: 50-ական

թվականների վերջերին հիմնականում կենսագործվեց մանր մասնավոր գյուղատնտեսության անցումը խոշոր, սոցիալիստական արտադրության՝ միասնական գյուղատնտեսական կոոպերատիվների բազայի վրա: Գյուղատնտեսության ոլորտում մեծացավ արտադրության ծավալը, բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, զգալի չափով փոխվեց այդ բնագավառի տնտեսության աշխատանքի բնույթը: Չնայած որոշակի դժվարություններին ու պրոբլեմներին, նշանավոր արդյունքներ ձեռք բերվեցին նաև բնակչության կենսամակարդակի ասպարեզում: 1948—1968 թթ. ընթացքում անձնական պահանջմունքներն ավելացան 3 անգամ: Վերացվեցին սոցիալական խոր տարբերությունները: Մենք հասանք լիովին զբաղվածության, ինչպես նաև ողջ բնակչության սոցիալական ապահովվածության, ձրի բուժսպասարկման: Մեր երկրում դպրոցական կրթությունը ձրի է, կրճատված է բանվորական օրը: Կուլտուրական, գիտական ու հասարակական կյանքի մյուս ոլորտներում նույնպես հաջողություններ են ձեռք բերվել:

Սոցիալիստական շինարարության ընթացքում Չեխոսլովակիայում վերացել է մարդու կողմից մարդու շահագործումը, հաղթանակել են նոր արտադրահարաբերությունները: Այդ շրջանում արմատական փոփոխություններ կատարվեցին սոցիալական կառուցվածքում: Ստեղծվեցին սոցիալիզմի հիմունքները: Նկատի առնելով վերջին տարիներին տարածված մի քանի ոչ-ճիշտ հայացքներ, անհրաժեշտ է ընդգծել, որ այդ փուլում բանվոր դասակարգը պետք է մշտապես ուժեղացնի իր ղեկավար դերը, որ դասակարգային մոտեցումը, կուսակցականությունը, նրանց մարքսիստական-լենինյան ըմբռնմամբ, իր էությունը չի փոխում: Ուժի մեջ է մնում և այն դրույթը, որ սոցիալիզմը դա միայն անցման էտապ է— դասակարգային հասարակությունից՝ անդասակարգի: Բանվոր դասակարգն է սկսել այդ պրոցեսը և, ՉԿԿ ղեկավարությամբ, նա միայն կարող է ավարտել:

Հասարակական ոչ մի նոր ֆորմացիա իր համար հեշտ, անցավ ճանապարհ չի հարթում: Սոցիալիստական հասարակության կառուցման ընթացքում մենք ևս չկարողացանք շրջանցել թերություններն ու ողբերգական սխալները: Հասարակական վերափոխումների ժամանակ կուսակցության և պետության ղեկավարները լուրջ զանցառություններ թույլ տվին: Ձեռք բերված հաջողությունների հիմքը հանդիսացող լենինյան ստեղծագործական ոգին, բյուրոկրատական մեթոդների հետեվանքով, աստիճանաբար բթացավ: Վարչարարական միջամտություններն սկսեցին նենգափոխել կուսակցության քաղաքականությունը աշխատավորությանը համբերատարորեն մասնակից դարձնելու լենինյան սկզբունքը: Աղավաղվում ու խախտվում էին օրենքները: Հատկապես որոշ բնագավառներում թուլացավ հասարակության նպատակային ղեկավարումը:

Մի շարք ոչ ճիշտ որոշումների հետևանքով, որոնք կարճ ժամանակում վերացվեցին, խախտվում էր քաղաքական հավասարակշռությունը: Ժողովրդական տնտեսության էքստենսիվ զարգացումը լուրջ դժվարություններ հարուցեց ոչ միայն արդյունաբերության, գյուղատնտեսության բնագավառներում, այլև մատակարարման բոլոր ճյուղերում: Բավարար ուշադրություն չէր նվիրվում Սլովակիայի զարգացման մի շարք էական պրոբլեմների լուծմանը: Նովոտնու կողմից ազգային հարցի անտեսումն ավելի սրեց այդ իրադրությունը:

Հավասարեցումը խախտում էր աշխատանքային կարգապահությունը, խափանում բնակչության առանձին սոցիալական խավերի միջև գոյություն ունեցող ներդաշնակությունը: Դա հատկապես վերաբերում էր որակավորված աշխատողներին ու ինտելիգենցիային: Այդ տարիներին կուսակցությունը դառը փորձ ձեռք բերեց: Կուսակցության ղեկավարությունը չըկարողացավ լենինիզմը կիրառել պրակտիկայում, ընդհակառակը, նա գործադրում էր այնպիսի մեթոդներ, որոնք Վ. Ի. Լենինը համարել է անհոգի ու վնասակար: Հասարակության համակողմանի զարգացումը, նման բացասական արդյունքների հետևանքով, դանդաղում էր: Խորացող դեֆորմացիան և այն հաղթահարելու անկարողությունը հանգեցրին ժողովրդի վստահության թուլացմանը կուսակցության ղեկավարության և, ի վերջո նաև, կուսակցության հանդեպ: Այդ խոչընդոտներն սկսեցին հետզհետե իրենց շահերին ծառայեցնել ռևիզիոնիստները, ինտելիգենցիայի լիբերալ տրամադրություններ ունեցող մասը և հակասոցիալիստական ուժերը: Ծավալվում էին բուրժուական տարբեր գաղափարական ազդեցությունները, արմատավորվում մանրբուրժուական հոգեբանությունը:

Կուսակցության հեղափոխական միջուկը գիտեր այդ բոլոր թերությունների մասին և ըզգում էր դրանց վտանգավորությունը: Նա ջանում էր վերականգնել կուսակցական կյանքի լենինյան սկզբունքները և հասարակության լենինյան ստեղծագործական ղեկավարումը: Այդ հեշտ պայքար չէր: Միայն 1968 թ. Կենտրոնական կոմիտեի հունվարյան պլենումում, Ա. Նովոտնու ՉԿԿ Կենտկոմի առաջին քարտուղարի պաշտոնաթողությունից հետո, արգելքների հաղթահարման հնարավորություն



ստեղծվեց: Ճանապարհ հարթվեց աշխատանքի լենինյան ոճի վերականգնման, ղեկավարման այն մեթոդների կենսագործման համար, որոնք հնարավորություն էին ընձեռելու ողջ ստեղծագործական ուժերը ներդնելու թերությունների վերացմանը: Հունվարի իմաստը սխալների ու դեֆորմացիաների վերացումն էր, որոնք գցում էին կուսակցության հեղինակությունը, թուլացնում նրա ղեկավար դերը: Դրա իմաստը տնտեսական, սոցիալական և կուլտուրական նոր նվաճումների միջոցով մարքսիզմի հեղինակության ու ազդեցության վերականգնումն ու նորացումն էր:

Սակայն շուտով, 1968 թ. հունվարից հետո, կուսակցության ղեկավարման ոլորտում ակտիվացավ աջերի ուժեղ խումբը, որի նպատակն էր տիրել կուսակցությանն ու պետական օրգաններին: Նրանց գործունեությունը, Ա. Դուբչեկի անվճռական ղեկավարության հետ մեկտեղ, որն ավելի ու ավելի էր ենթարկվում աջ թևի ճնշմանն ու ազդեցությանը, ուղի հարթեց ռևիզիոնիստական և հակասոցիալիստական ուժերի համար, որոնք սկսել էին ձևավորվել դեռևս նախընթաց ժամանակաշրջանում: Կուսակցության մեջ աջերի խումբը, կուսակցությունից դուրս հակասոցիալիստական ուժերը տիրեցին մասսայական ինֆորմացիայի միջոցներին, հունվարի իսկական իմաստը խեղող ու դրան հակասոցիալիստական իմաստ վերագրող կամպանիա սկսեցին: Արևմուտքի իմպերիալիստական շրջաններում գովաբանվող հակասոցիալիստական ներքին ուժերն անցան բացահայտ գրոհի: Նրանք փորձում էին սևացնել կուսակցության ու ժողովրդի 25 տարիների դրական բոլոր արդյունքները, նսեմացնել կուսակցության նշանակությունը, ձգտում պառակտել այն: Նրանք իդեալականացնում էին մինչմյունխենյան հանրապետությունը և քննադատաբար չէին մոտենում կապիտալիստական երկրների կյանքի գնահատմանը. լայնորեն բուրժուական հայացքներ էին պրոպագանդում հատկապես երիտասարդության և ինտելիգենցիայի շրջանում. բացասում էին դասակարգային պայքարի գոյությունը և աշխարհի դասակարգային բաժանումը, սոցիալիստական լագերի եղբայրական երկրների շուրջ անվստահություն էին տարածում: Մեր դաշնակիցների և, հատկապես, Սովետական Միության դեմ ուղղված գրոհները ուղեկցվում էին նացիոնալիզմի և շովինիզմի տարածմամբ: Հին սխալներն ու խոտորումները, որոնք կուսակցությունն ինքն էր բացահայտել և որոնք ուզում էր ուղղել հունվարյան պլենումի ոգով, ռևիզիոնիստական ու հակասոցիալիստական ուժերը ներկայացնում էին իբրև սոցիալիզմի անկապտելի հատկություններ: Նրանց հաջողվեց խաբել մեր երիտասարդության, ինտելիգենցիայի և բանվոր դասակարգի մի մասին:

1968 թ. ամռան ամիսներին, նրանց գրոհները սոցիալիզմի հիմունքների վրա սաստկացան: Ռևիզիոնիստական և հակասոցիալիստական ուժերը փորձում էին խախտել քաղաքական, տնտեսական և ռազմական կապերը սոցիալիստական դաշնակից երկրների հետ և այդ պառակտումը ցուցադրում էին ողջ աշխարհի առջև: Աջ թևի ղեկավարները և կուսակցությունից դուրս գործող ուժերը մոլորեցրել ու կազմալուծել էին կուսակցության ազնիվ անդամներին: Այդ պայմաններում էլ հենց տեղի ունեցան օգոստոսյան հայտնի դեպքերը: Քաղաքական լիակատար փլուզումը և վրա հասնող ողբերգությունը մեր երկրում կանխելու նպատակով, դաշնակիցներն իրենց զորքերն ուղղեցին պաշտպանելու սոցիալիզմը Չեխոսլովակիայում և ողջ սոցիալիստական լագերում: Դաշնակիցների զորքերի մուտքը մեր երկիրը ինտերնացիոնալիստական օգնության ակտ էր, որը սկզբում չհասկացվեց և ուղեկցվեց նացիոնալիստական ու շովինիստական հիստերիայի նոր ալիքով:

Մեր կուսակցությունը մինչև 1969 թ. գարունը, դեռևս գտնվելով ուժեղ աջ թևի ազդեցության տակ, չկարողացավ գլխավորել ջանքերը, որոնք ուղղված էին կուսակցության և ողջ հասարակության աստիճանաբար համախմբման համար էական նշանակություն ունեցող խնդիրների լուծմանը: Երկիրը տառապում էր նորանոր կոնֆլիկտներից: Մինչհունվարյան ժամանակաշրջանում, «վերածնության պրոցեսի» մարդկանց կառավարման ժամանակաշրջանում, ստեղծված տնտեսական բարդությունները ծայրաստիճան խորացան, հասարակության ու տնտեսության մեջ տարածվում էր անարխիան, բուն էր դրել անպատասխանատվությունը, աշխատանքի նկատմամբ անբարեխղճությունը, պարազիտիզմը, սաստկանում էր ինֆլյացիան: Աջ ուժերը դեռևս հարձակվում էին: Միայն 1969 թ. ապրիլին մեր երկրի զարգացման գործում բեկում կատարվեց:

ՉԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումում Ա. Դուբչեկը հեռացվեց կուսակցության ղեկավարությունից. նոր ղեկավարությունը մի շարք վճռական միջոցներ ձեռնարկեց աջ ուժերի ազդեցության վերացման, կուսակցության մաքրման համար՝ հանուն պետության և իշխանության օրգանների ամրապնդման, ընդդեմ օպորտունիստական, ռևիզիոնիստական ուժերի: Սկսվեց համախմբման պրոցեսը, որի առաջին նախապայմանը եղել ու մնում է դասակարգային, մարքսիզմ-լենինիզմի սկըզբունքներով, կուսակցության միասնության վե-

րականգնումը, կուսակցության գործունեության ու հեղափոխական մարտականության ապահովումը, ներկուսակցական կյանքի զարգացումը: Խոսքը վերաբերում էր կուսակցության շինարարության լենինյան սկզբունքների վերականգնմանը, հասարակական կյանքի բոլոր բնագավառներում ՉԿԿ ղեկավար դերի ամրապնդմանը և, մանավանդ, սոցիալիստական հասարակության հաջող շինարարության լենինյան հիմնական նախադրյալներից մեկի ստեղծմանը: Անհրաժեշտ էր այնպես ամրապնդել ու զորեղացնել ՉԿԿ, որպեսզի նա կարողանար իր շուրջը համախմբել երկրի բոլոր ազնիվ ուժերին, ի վիճակի լիներ վերացնելու մինչհունվարյան դիլետանտության ու հետհունվարյան քաղաքական, հասարակական ու տնտեսական երկպառակության հետևանքները, իրականացներ հասարակության գիտական ղեկավարումը:

Արդեն 1969 թ. վերջերին կուսակցությունը հասավ առաջին լուրջ հաջողությունների և սկսեց հասարակությունը դուրս բերել խոր փլուզումից: Աջ և հակասոցիալիստական ուժերը բացահայտ քաղաքական պայքարում պարտություն կրեցին, հաջողվեց կրկին ծավալել կուսակցության, հասարակական կազմակերպությունների և պետական օրգանների ստեղծագործական գործունեությունը: 1970 թ., Կենտկոմի հունվարյան պլենումում, կուսակցական տոմսերը փոխանակելու վերաբերյալ որոշում ընդունվեց. դա մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներով կուսակցության անդամների ակտիվացման, կուսակցության հեղափոխական միասնության ամրապնդման և այն կարիերիստներից ու աջ օպորտունիստներից մաքրելու հետագա կարևոր միջոց էր: Կենտկոմի այդ իսկ պլենումում քննարկվեցին երկրի տնտեսական դրության հարցերը: Մեծ ուշադրություն նվիրվեց տնտեսական քաոսի վերացման, տնտեսության կոնսոլիդացման խնդիրներին: ՉԿԿ Կենտկոմը կոմունիստներին պայքարի է կոչում ընդդեմ անպատասխանատվության և պորտաբուծության: ՉԿԿ, նորից դառնալով միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման անսասան, բաղկացուցիչ մասը և լիովին նորացնելով եղբայրական ու դաշնակցային կապերը սոցիալիզմի երկրների հետ, նոր պայքար ծավալեց աշխատավորության գաղափարի միասնության համար: Կուսակցությունը նորից է սկսում նվաճել աշխատավորների վստահությունը, թեև պայքարը դրա համար կլինի երկարատև, կպահանջի ծայրահեղ մեծ համբերություն ու նրբանկատ մոտեցում:

Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցությունը, կուսակցական տոմսերի փոխանակման ընթացքում, երաշխիք է ստեղծում, որպեսզի ոչ ինքը, ոչ մեր երկիրը այլևս երբեք չընկնեն նման աղետալի վիճակի մեջ, ինչպիսի վիճակում նրանք գտնվեցին անցյալ երկու տարիների ընթացքում: Ճշմարտացի բովանդակություն է ստանում կուսակցության անդամի կոչումը, որը պահանջում է ծայրահեղ անձնազոհություն ու ներքին հուր՝ կուսակցության ու բանվոր դասակարգի շահերը պաշտպանելիս: Զրույցների ընթացքում կուսակցությունն ազատվեց ու ազատվում է կազմալուծում սերմանողներից՝ ռևիզիոնիստներից, լիկվիդատորներից, աջ օպորտունիստներից, զատվում այն մարդկանցից, որոնք իրենց քաղաքականությամբ, գործունեությամբ անջատվեցին կուսակցությունից: Այդ մարդիկ մեծ վնաս հասցրին կուսակցությանը և քաղաքական խոր ճգնաժամի տեղիք տվին, որի հետևանքները մենք հիմա վերացնում ենք:

Որպեսզի կուսակցությունը կարողանա հաջողությամբ կատարել իր պատմական միսիան, պետք է իր շուրջը համախմբի բոլոր ազնիվ քաղաքացիներին, կարողանա հմտորեն տարբերել խաբված և ճիշտ ուղուց շեղված աշխատավոր մասսաներին աջ և հակասոցիալիստական տարրերից: Այդ խնդրի լուծումը ենթադրում է նպատակասլաց, հետևողական ու անկեղծ, համառ ու ամենօրյա ստեղծագործական աշխատանք, որը կապված է անզիջող քաղաքական պայքարի հետ ընդդեմ հակասոցիալիստական ու օպորտունիստական բոլոր ուժերի ու տենդենցների: Հենց դրանում է այն միակ նախադրյալը, որը հնարավորություն է ընձեռում կատարելու մասսաների հետ լինելու լենինյան հանրահայտ պահանջը:

Մեր փորձը, պատմական հաջողությունները և դառը դասերը պարտավորեցնում են Չեխոսլովակիայի բանվոր դասակարգին ու աշխատավորությանը Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյա հոբելյանը նշելու՝ հավատարիմ նրա ուսմունքի հետևողական, ստեղծագործական ոգուն, կրկին ամրապնդելու ՉԿԿ, որպես բանվորների, գյուղացի-կոոպերատորների և ինտելիգենցիայի մարտական կազմակերպություն և ապահովելու մեր երկրի, սոցիալիզմի ուղիով ընթացող զարգացած արդյունաբերական երկրներից մեկի, նոր, համակողմանի զարգացումը: Քաղաքականության և տնտեսության ոլորտում կոնսոլիդացիայի պրոցեսի ավարտումը, մարքսիզմ-լենինիզմի, որպես ժամանակակից, ամենաառաջադեմ ու մարդասիրական աշխարհայացքի, հեղինակության ու ազդեցության վերականգնումը—դրանում է սոցիալիստական Չեխոսլովակիայում լենինյան հոբելյանը տոնելու բուն իմաստն ու էությունը:

«Проблемы мира и социализма», № 7, 1970.

ՍԵԴԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՀՍՍՀ պետպլանի տնտեսագիտության և պլանավորման ինստիտուտի խմբի ղեկավար

# ԱՐՏԱԴՐԱՖՈՆԴԵՐԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*Մեր երկրի տնտեսական զարգացման արդի ժամանակաշրջանի բնորոշ կողմը տեխնիկական արագ առաջադիմությունն է, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը: Տեխնիկական առաջադիմության էությունը, ամենից առաջ, արտադրության տեխնիկայի ու տեխնոլոգիայի անող տեմպերով զարգացումն ու կատարելագործումն է, աշխատանքի նորանոր գործիքների ստեղծումը: Տեխնիկական առաջադիմությունը մեքենացնում ու ավտոմատացնում է ձեռքի աշխատանքը: Վ. Ի. Լենինը գրում է. ձեռքի աշխատանքը մեքենայական աշխատանքով փոխարինելու... մեջ է մարդկային տեխնիկայի ամբողջ պրոգրեսիվ աշխատանքը (տե՛ս Երկեր, հ. 1, էջ 117): Աշխատանքի արտադրողականության բարձրացման նյութական հիմքը հիմնական արտադրաֆոնդերն են:*

*Արտադրության յուրաքանչյուր ճյուղում հիմնական արտադրաֆոնդերի նորացումը և աճն իրականացվում է կապիտալ ներդրումների հաշվին: Կապիտալ ներդրումների քանակը, կազմն ու ուղղությունը կանխորոշում են արտադրաֆոնդերի աճի տեմպերն ու կազմային փոփոխությունները:*

*Կապիտալ ներդրումների աճի տեմպերով հանրապետության տեքստիլ արդյունաբերությունը գրավում է առաջին տեղերից մեկը: Այստեղ 1960—1968 թթ. արտադրական նպատակների համար նախատեսված կապիտալ ներդրումների ծավալը աճել է 2,35 անգամ:*

*Նշված ժամանակաշրջանում կապիտալ ներդրումների կազմում քանակական փոփոխություններից բացի, տեղի են ունեցել նաև էական որակական փոփոխություններ: Եթե 1950—1960 թթ. կապիտալ ներդրումների կազմում շինարարական, մոնտաժային աշխատանքների (որոնք ավելացնում են հիմնական արտադրաֆոնդերի պասսիվ մասը) տեսակարար կշիռը, ընդհանուր կապիտալ ներդրումներում, միջին հաշվով, կազմել է 59 տոկոս, ապա 1960—1968 թթ. 53,4: Համապատասխանաբար փոխվել է նաև աշխատագործիքների ձեռք բերման համար կատարված ծախսերի չափը. այն նշված տարիների առումով 41 տոկոսից հասել է 46,6-ի:*

*Կապիտալ ներդրումների ինտենսիվ աճը և դրանց տեխնոլոգիական կազմի առաջընթաց փոփոխությունները կանխորոշել են նշված ճյուղի արդյունաբերական-արտադրաֆոնդերի վերարտադրության բնույթը, այսինքն՝ դրանց նորացման պրոցեսը ևս ընթացել է արագ տեմպերով: Այսպես, 1960—1968 թթ. հիմնական արտադրաֆոնդերը, միջին տարեկան հաշվով, տեքստիլ ար-*

դյունաբերության մեջ աճել են ավելի քան 203 տոկոսով: Միության մասշտաբով այն կազմել է 180 տոկոս։

Այսպիսով, Հայաստանի տեքստիլ արդյունաբերության մեջ հիմնական արտադրաֆոնդերի աճի տեմպերը բարձր են Միության համապատասխան ճյուղի միջին տեմպերից։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա ներգործում են նաև հիմնական արտադրաֆոնդերի կազմային տեղաշարժերը, դրանց ակտիվ և պասսիվ մասերի հարաբերակցության փոփոխությունները։ Աշխատանքի արտադրողականության աճը հիմնականում պայմանավորված է արտադրաֆոնդերի ակտիվ մասի մեծացմամբ։ Այսինքն՝ որքան մեծ է հիմնական տեխնոլոգիական հաստոցների ուժային ապարատների ու սարքերի աճի տեմպը, այնքան բարձր է արտադրության տեխնիկական մակարդակը, լայն են արտադրանքի ծավալի ավելացման հնարավորությունները։

Տեքստիլ արդյունաբերության, դրա ենթաճյուղերի և առանձին ձեռնարկությունների հիմնական արտադրաֆոնդերի կազմային տեղաշարժերի ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այն ընթացել է վերընթաց գծով, այսինքն՝ արտադրաֆոնդերի ընդհանուր կազմում առավել արագ տեմպերով աճել է դրա ակտիվ մասը։ Ընդ որում, հիշյալ պրոցեսը բնորոշ է տեքստիլ արդյունաբերության գրեթե բոլոր ենթաճյուղերի ու դրանց կազմի մեջ մտնող ձեռնարկությունների համար։

ՀՍՍՀ տեքստիլ արդյունաբերության, դրա ենթաճյուղերի հիմնական արտադրաֆոնդերի կազմային տեղաշարժերը

| Տեքստիլ արդյունաբերության ճյուղերը | Հիմնական արտադրաֆոնդերի ակտիվ մասը | | | Հիմնական արտադրաֆոնդերի պասսիվ մասը | | |
|---|---|---|---|---|---|---|
| | 1960 | 1965 | 1969 | 1960 | 1965 | 1969 |
| Տեքստիլ արդյունաբերություն | 45,0 | 48,1 | 51,0 | 55,0 | 51,9 | 49,0 |
| այդ թվում՝ | | | | | | |
| բամբակագործվածքային արտադրություն | 46,0 | 49,3 | 52,0 | 54,0 | 50,0 | 48,0 |
| մետաքսագործվածքների արդյունաբերություն | 47,0 | 49,0 | 50,2 | 53,0 | 51,0 | 49,8 |
| տրիկոտաժի արդյունաբերություն | 45,0 | 47,8 | 52,2 | 45,0 | 52,2 | 47,8 |
| բրդյա գործվածքների արդյունաբերություն | 45,5 | 48,0 | 50,5 | 54,5 | 52,0 | 45,5 |

Աղյուսակի տվյալները ցույց են տալիս, որ տեքստիլ արդյունաբերության և դրա ենթաճյուղերի հիմնական արտադրաֆոնդերի կազմում կատարվել են որոշակի փոփոխություններ։ Առանձին ճյուղերում ակտիվ և պասսիվ մասերի փոխհարաբերության փոփոխությունները հօգուտ ակտիվ մասի, հասնում է 8—10 տոկոսի։ Ընդ որում, 1968 թվականին հանրապետության տեքստիլ արդյունաբերության մեջ հիմնական արտադրաֆոնդերի նորացման պրոցեսն ավելի արագ է կատարվել, քան արդյունաբերության միջինը։

Հիմնական արտադրաֆոնդերի, հատկապես դրանց ակտիվ մասի նորացման պրոցեսն ընթացել է երկու ուղղությամբ, որոնցից յուրաքանչյուրն աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպի վրա ազդել է տարբեր չափով։ Առաջինն արտադրության մեջ ֆիզիկապես նոր, սակայն տեխնիկա-տնտեսական նույն հատկություններով և արտադրողականությամբ օժտված հաստոցների ներդրումն է։ Երկրորդը՝ հին, ցածր արտադրողական հաստոցների փոխարեն տեխնիկապես կատարելագործված և նախկինի համեմատ բարձր արտադրողական հաստոցների ներդրումը։ Առաջին դեպքում արտադրության տեխնիկական բազան ընդարձակվում է, սակայն տեխնիկական մակարդակը չի բարձրանում։ Երկրորդի ժամանակ, բացի դրանից, տեղի են ունենում նաև արտադրության տեխնիկական մակարդակի առաջընթաց փոփոխություններ։



Հիմնական արտադրաֆոնդերի նորացման պրոցեսը հանրապետության տեքստիլ արդյունաբերության մեջ միաժամանակ ընթացել է նշված երկու ձևով։ Սակայն բնորոշն այն է, որ բարձր արտադրողական մեքենաների, հաստոցների ու սարքերի ներդրման տեմպերը, ընդհանուրի մեջ եղել են առաջանցիկ։ Այսպես, 1966—1968 թթ. տեքստիլ-տրիկոտաժի արդյունաբերության ձեռնարկություններում ներդրվել են նոր կոնստրուկցիայի ավելի քան 1200 գործվածքային ավտոմատ հաստոցներ։ Կարի արտադրություններում տեղակայվել են 900 կարի մեքենա, որոնց մեջ լավագույն մարկայի և բարձր արտադրողական մեքենաների տեսակարար կշիռը կազմում է 74 տոկոս։ Այնուհետև, նշված տարիներին ներդրված 350 մանող, ոլորող, փաթաթող հաստոցների մեջ նոր կոնստրուկցիայի բարձր արտադրողական հաստոցների բաժինը կազմել է մոտ 82 տոկոս։ ՍՍՀՄ-ում 1967 թ. արտադրության մեջ տեղակայված գործվածքային հաստոցների ընդհանուր թվում նոր կոնստրուկցիայի, բարձր արտադրողական հաստոցների տեսակարար կշիռը (միջինը) կազմել է 86,5, կարող մեքենաներինը՝ 76 տոկոս։

Ինչպես ճյուղի, այնպես էլ ձեռնարկությունների հիմնական ֆոնդերի նորացման մասին եղած տվյալները վկայում են, որ դրանց մեծ մասը (մոտ 40—45 տոկոսը) արտադրության մեջ ներդրվել ու գործարկվել է վերջին 5—6 տարում։ Հետևաբար, թե՛ ժամանակի և թե՛ որակական հատկությունների տեսակետից, դրանք համեմատաբար նոր են (որովհետև արտահայտում են վերջին ժամանակների ձեռք բերված նվաճումները):

ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության տեխնիկական բաժնի մոտավոր հաշվարկների համաձայն, 1967 թ. հունվարի մեկի դրությամբ, տեքստիլ արդյունաբերության մեջ գործող գործվածքային հաստոցների միջին տարիքը կազմում է 4,2, իսկ թել մանող, ոլորող հաստոցներինը՝ 5 տարի։ Տեխնիկական այս մեծ բարեփոխումները զուգակցվել են օգտագործվող հումքի կառուցվածքի կատարելագործման պրոցեսի հետ։ Քիմիական արհեստական թելերի լայն չափերով օգտագործումը լրացրել է բնական հումքի պակասը և հնարավորություն ընձեռել արտադրական կարողություններն օգտագործել լրիվ ծանրաբեռնվածությամբ։ Բացի այդ, քիմիական-արհեստական թելերի տեխնիկական բարձր հատկությունները նպաստել են հումքի և հաստոցների ռացիոնալ օգտագործմանը։ Այս բոլորը նյութական ու տեխնիկական կայուն հիմք են ստեղծել աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։

Սակայն փաստացի տվյալների համադրումը ցույց է տալիս, որ նշված տարիներին աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը հանրապետության տեքստիլ արդյունաբերության մեջ մոտ 2,5 անգամ պակաս է մեքենազինվածության աճի տեմպերից։ Բրդյա և մետաքսյա գործվածքների մեջ տարբերությունն ավելի ակնառու է։ Դա նշանակում է, որ հանրապետության տեքստիլ արդյունաբերությունում հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման աստիճանը չի հասել այնպիսի բարձրության, որ ապահովեր թողարկվող արտադրանքի առաջանցիկ տեմպը՝ դրանք արտադրող հիմնական ֆոնդերի աճի նկատմամբ։ Արդյունքը եղել է այն, որ ֆոնդահատույցն այս ճյուղում նվազել է։ Այսպես, 1968 թ., 1960 թ. համեմատությամբ, տեքստիլ արդյունաբերության ֆոնդահատույցն իջել է 29 տոկոսով, այդ թվում՝ մետաքսյա գործվածքների արդյունաբերության մեջ՝ 26, բրդյա գործվածքների՝ 31 տոկոսով և այլն։ (Արժեքային արտահայտությամբ համապատասխանաբար իջել է 1 ռ. 57 կ., 1 ռ. 87 կ. և 1 ռ. 97 կ.)։ Պակասել է նաև արտադրաֆոնդերի մեկ ռուբլուն ընկնող շահույթը։ Եթե 1960 թ. տեքստիլ արդյունաբերության արտադրաֆոնդերի մեկ ռուբլուն ընկել է 0,28 ռ. շահույթ, ապա 1969 թ.՝ 0,18 ռ.։

Այս երևույթը հիմնականում բացատրվում է արտադրական կարողությունների և հաստոցային պարկի ոչ ռացիոնալ օգտագործմամբ։ Արտադրական կարողությունների փաստացի վիճակն արտացոլող հաշվետու նյութերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ հաշվեկշռային արտադրական կարողություններն այս ճյուղում լրիվ չեն օգտագործվել։

Հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման արդյունավետությունը

բարձրացնելու գլխավոր ուղին տեխնոլոգիական հաստոցների օգտագործման հետագա բարելավումն է, որին կարելի է հասնել դրանց ինչպես էքստենսիվ, այնպես էլ ինտենսիվ օգտագործման ճանապարհով։ Աշխատանքի միևնույն միջոցները, ըստ Կ. Մարքսի, այսինքն՝ միևնույն հիմնական կապիտալը, կարելի է օգտագործել ավելի արդյունավետ, ինչպես յուրաքանչյուր տարի դրա օգտագործման ժամանակի երկարացման, այնպես էլ գործարկման ինտենսիվացման միջոցով։ Ընդ որում, դրա համար չի պահանջվում հիմնական կապիտալի վրա լրացուցիչ դրամական ծախս։

Պետք է նշել, որ տեքստիլ արդյունաբերության մեջ մեքենաների ու սարքավորումների արտադրողականության վրա մշտապես և միաժամանակ ազդում են երկու, միմյանց հակառակ գործոններ։ Առաջին՝ նոր տեխնիկայի ներդրման, գործող սարքավորումների լավագույն օգտագործման շնորհիվ բարձրանում է հաստոցների ինտենսիվ ու էքստենսիվ օգտագործումը։ Երկրորդ՝ տարբեր տեսակի բարձրորակ ու մոդայիկ գործվածքների նկատմամբ բնակչության պահանջարկի ավելացումը բարձրացնում է մանվածքների նըրբությունը (թելի համարները), մեծանում գործվածքների խտությունը և այլն։ Առաջին տենդենցը նպաստում է, իսկ երկրորդը՝ դանդաղեցնում մանվածքային և գործվածքային սարքավորումների արտադրողականության բարձրացման տեմպերը։ Քանի որ տեխնիկական առաջընթացը, հաստոցային պարկի լավագույն օգտագործումը, աշխատանքի և արտադրության ռացիոնալ կազմակերպումն աշխատանքի արտադրողականության աճի առավել մեծ հնարավորություններ են ստեղծում, քան այն կասեցվում է բնակչության աճող պահանջարկը բավարարելու շնորհիվ, ուստի, բոլոր դեպքերում հաստոցների արտադրողականությունը պետք է բարձրանա վերընթաց գծով։

Հաստոցների ինտենսիվ օգտագործման հնարավորություններն անսպառ են։ Դրանք մշտապես ծագում են արտադրության տեխնիկայի ու տեխնոլոգիայի կատարելագործման բազայի վրա, մինչդեռ էքստենսիվ ուղին խստորեն սահմանափակված է ժամանակի շրջանակներով։ Հաստոցների օգտագործումը ժամանակի մեջ առանձնակի նշանակություն է ձեռք բերել արտադրության պլանավորման և նյութական խթանման նոր սիստեմի պայմաններում։ Տնտեսավարման նոր պայմաններում արտադրական-տեխնոլոգիական հաստոցների ինտենսիվ օգտագործման աստիճանով է պայմանավորված ո՛չ միայն ձեռնարկության շահույթի մեծությունը, այլև որոշ չափով նաև ֆոնդավճարը։

Հաստոցների էքստենսիվ օգտագործումը հիմնականում իրագործվում է հերթափոխության գործակիցների բարձրացմամբ։ Դա հնարավորություն է ընձեռում ո՛չ միայն արդյունավետ օգտագործել հաստոցային պարկը, այլև շենքերն ու կառուցվածքները (հիմնական արտադրաֆոնդերի պասիվ մասը)։ Արդյունքը լինում է այն, որ արտադրանքի ծավալի աճին նպաստում է նաև շենքերի ու արտադրահրապարակների ռացիոնալ օգտագործումը։ Փաստացի նյութերի ուսումնասիրություններից պարզվում է, որ հանրապետության տեքստիլ արդյունաբերության ենթաճյուղերում միևնույն խումբ հաստոցների հերթափոխության գործակիցները միմյանցից տարբերվում են գործվածքային հաստոցների գծով՝ 20—45, մանող-ոլորող հաստոցների՝ 4—43 տոկոսով։ Դա բացատրվում է յուրաքանչյուր ձեռնարկությունում արտադրության և աշխատանքի կազմակերպման մակարդակների տարբերություններով։ Այնտեղ, ուր մեծ են հաստոցների ու բանվորական ժամանակի բացարձակ կորուստները, աշխատանքի հոսունությունը, ցածր է արտադրության կուլտուրան և աշխատանքի կազմակերպման մեջ կան լուրջ թերություններ, այնտեղ հաստոցների ու մեքենաների հերթափոխության գործակիցները համեմատաբար ցածր են։

Հաստոցների նույնատիպ խմբերի հերթափոխության գործակիցները տարբերվում են նաև ՍՍՀՄ միջինից։ Գործվածքային հաստոցների հերթափոխության գործակիցը ՍՍՀՄ-ում կազմում է 2,71, մանվածքային հաստոցներինը՝ 2,8, հանրապետության համապատասխան ցուցանիշներինը՝ 2,71 և 2,65։ Մեքենաների հերթափոխության գործակիցների ցածր լինելու հիմնական պատճառը պարապուրդներն են, որոնք առաջանում են բանվորական ուժի պակա-



սի, հումքի անհամաչափ մատակարարման, ինչպես նաև նորոգվող հաստոցների տեսակարար կշռի մեծությամբ։

Հաստոցները լրիվ չաշխատեցնելու պատճառները և չափերը պարզելու համար 1968 թ. ապրիլին նուրբ բրդյա գործվածքների, մահուդի ու Վ. Ի. Լենինի անվան մետաքսագործվածքային կոմբինատներում անց կացվեց մեքենաների օգտագործման ստուգում։ Պարզվեց, որ նշված կոմբինատների գործվածքային հաստոցների 11—16, իլիկների 9,5—10,2 տոկոսը ստուգված հերթափոխերին բոլորովին չաշխատեցին։ Ոչ լրիվ հերթափոխ գործել են հաստոցների 10—18, իլիկների՝ 13,5—17,2 տոկոսը։ Մեքենաների գործունեության խրոնոմետրաժային ստուգումների ընթացքում միաժամանակ գրի էին առնվել դրանց չաշխատելու հիմնական պատճառները (հումք չլինելու հետևանքով՝ 25,7, բանվորական ուժի պակասի՝ 28—31, ջրի և էլեկտրաէներգիայի՝ 10—11, հաստոցների նորոգման պատճառով՝ 15—26 տոկոս)։

Հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրության աշխատանքի և աշխատավարձի բաժնի 1968 թ. հունիս, հուլիս և օգոստոս ամիսներին անց կացրած աշխատաժամանակի օգտագործման ստուգատեսի տվյալներից երևում է, որ նշված ամիսներին Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկայում հումք, օժանդակ նյութեր և պահեստամասեր չլինելու պատճառով հաստոցների պարապուրդները կազմել են մոտ 50 մարդ/օր, բանվորական ուժի պակասի պատճառով՝ 1152 մարդ/օր, ջրի պատճառով՝ 558 մարդ/օր և այլն։ Կիրովականի մանվածքային ֆաբրիկայում կիսաֆաբրիկատները ժամանակին չմատակարարելու հետևանքով մանվածքային մեքենաները չեն աշխատել 37,5 հազար իլիկ/ժամ, բանվորական ուժի պատճառով՝ 7,1 տոկոսը, տեքստիլ-գալանտերիայի ֆաբրիկայի հյուսող բաժնում մանվածք չլինելու պատճառով 12 մեքենա ամբողջ օրը չեն գործել և այլն։

Հիշատակված ստուգատեսի տվյալները վկայում են, որ հանրապետության տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում այդ ամիսներին (ոչ լրիվ տվյալներով) գործվածքային հաստոցների մոտ 28, իլիկների 16 տոկոսը զանազան պատճառներով չեն գործել։ Մինչդեռ պաշտոնական հաշվետվություններում ներկայացված տվյալներն աննշան են։ Չնայած այն բանին, որ ձեռնարկություններում հաստոցների պարապուրդները լրիվ հաշվի չեն առնվում, այնուամենայնիվ, այդ ձևով գրանցված պարապուրդները նույնպես գերազանցում են պլանով սահմանված նորմաները։ Այսպես, բամբակագործվածքային արդյունաբերության ձեռնարկություններում գործվածքային հաստոցների պարապուրդները կազմում են հաստոցաժամանակի ֆոնդի 7,6 տոկոսը, պլանով նախատեսված 5 տոկոսի փոխարեն, բրդյա գործվածքների արդյունաբերության մեջ՝ 13, 9-ի փոխարեն։ Իլիկների պարապուրդները հասնում են 6—13 տոկոսի, պլանով նախատեսված 5—8-ի փոխարեն։ Գործվածքային հաստոցների պարապուրդների կրճատումը (թեկուզ կիսով չափ), դրանց արտադրողականությունը բամբակագործվածքային արդյունաբերության մեջ կբարձրացներ մոտ 3,8, բրդյա գործվածքների՝ 5,1, մետաքսյա գործվածքների՝ 2,8, իսկ մանող իլիկներինը՝ համապատասխանաբար՝ 4, 5,3 և 6,2 տոկոսով։

Հաստոցների պարապուրդների հիմնական պատճառների մասին ձեռնարկությունների ներկայացրած հաշվետվությունների տվյալների ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ բանվորական ուժի պակասը, հումքի ոչ ռիթմիկ մատակարարումը և հաճախ կրկնվող նորոգումները բնորոշ են բոլոր ենթաճյուղերին ու նրանց ձեռնարկություններին։

Հանրապետության տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունները բանվորական ուժի (գլխավորապես ջուլհակների) տևական պահանջ ունեն։ Դրան ավելացնենք նաև այն, որ աշխատուժի հոսունությունը ջուլհակների մոտ ավելի է, քան այլ մասնագիտություն ունեցող բանվորների մոտ։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ դրա պատճառները ջուլհակների աշխատանքի մեծ լարվածությունն է, աշխատանքային ոչ բարենպաստ պայմանները, ցածր աշխատավարձը և այլն։ Տեքստիլ արդյունաբե-

րության մեջ հաստոցների թերօգտագործման հիմնական պատճառներից մեկն էլ հումքի պակասն է, դրա ոչ ռիթմիկ մատակարարումը։ Այդ անհամապատասխանությունը մեղմացնելու համար կա երկու ուղի՝ գյուղատնտեսության հետագա զարգացումն ու դրա հիման վրա բնական հումքի ծավալի ավելացումը և քիմիական ու արհեստական թելերի, որպես գյուղատնտեսական հումքի լավագույն փոխարինիչների, լայն օգտագործումը։ Վերջինս արդյունավետ է նաև այն տեսակետից, որ քիմիական թելերի միավորի արտադրական ծախսերն անհամեմատ փոքր են, ինքնարժեքը ցածր։ Այսպես, մեկ տոննա լավսանի և նիտրոնի ինքնարժեքը երեք անգամ ցածր է բրդի ինքնարժեքից, իսկ բամբակաթելին փոխարինող արհեստական թելինը՝ 3,5 անգամ։

Քիմիական թելերի մեծ մասշտաբներով օգտագործելու հնարավորությունները, չնայած ձեռնարկությունների լավագույն ցանկություններին, ներկայումս սահմանափակ են։ Դրա պատճառներից մեկը մեքենաշինության համապատասխան ճյուղի ետ մնալն է։ Առաջացել է անհամապատասխանություն քիմիական ու արհեստական թելերի արտադրության և այն վերամշակող հաստոցների թողարկման չափերի միջև։ Մեքենաշինության համապատասխան ճյուղը դեռևս չի տալիս այնպիսի և այնքան մեքենաներ, որ հնարավոր լինի ժամանակակից պահանջներին համապատասխան վերակառուցել արտադրական կարողությունները և պայմաններ ստեղծել քիմիական հումքի լայն կիրառման համար։ Քիմիական թելեր մշակող հատուկ սարքավորումների անբավարարությունը (հաճախ դրանց լրիվ բացակայությունը) ստիպում է ձեռնարկությունների կոլեկտիվներին այդ թելերը մշակել բնական թելեր մշակող հաստոցներով։ Այդպիսի դեպքում, արտադրանքի որակը պահպանելու և թելերի կտրվածության հաճախականությունը կրճատելու համար, ձեռնարկություններում իջեցնում են հաստոցների պտույտների թիվը, հարմարեցնելով այն քիմիական թելեր մշակելու պահանջներին։

ՍՍՀՄ Մինիստրների սովետի աշխատանքի և աշխատավարձի պետական կոմիտեի աշխատանքի ինստիտուտում կատարված հաշվարկների համաձայն, քիմիական թելերի կտրվածության հաճախականությունը, երբ դրանք մշակվում են այդ թելերի օգտագործման համար նախանշված հատուկ հաստոցներով, 2—3 անգամ պակաս է սովորական թելերի կտրվածության հաճախականությունից։ Այսպիսով, հանրապետության տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում հումքի որակի դրական տեղաշարժերի ու արհեստական թելերը լայնորեն օգտագործելու ճանապարհին եղած խոչընդոտները վերացնելու միջոցով կարելի է հասնել հաստոցների օգտագործման օգտակար գործակցի բարձրացմանը՝ ինչպես «հումք չլինելու» պատճառով մեքենաների պարապուրդները կրճատելու (և իսպառ վերացնելու), այնպես էլ թելի կտրվածության հաճախականությունը պակասեցնելու միջոցով։

Հաստոցների աշխատանքի արդյունավետության վրա խիստ բացասական ազդեցություն է ունենում թելերի կտրվածությունը, որը հանրապետության տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում բավական բարձր է։ Թելի կտրվածության հաճախականության իջեցումը և դրա մոտեցումը թեկուզ Միության միջին ցուցանիշներին, մեր հանրապետության տեքստիլ արդյունաբերության հաստոցների աշխատանքի արտադրողականությունը կբարձրացնի նշանակալից չափով։

Թելի կտրվածության հաճախականությունը կարելի է կանխել օգտագործվող հումքի որակը բարելավելու միջոցով։ Անհրաժեշտ է նշել, որ տեքստիլ ձեռնարկություններն ստանում են ցածրորակ հումք։ Բավական է ասել, որ 1967—1969 թվականներին հանրապետության տրիկոտաժի ձեռնարկությունների ստացած բրդյա և կիսաբրդյա թելերի 61 տոկոսից ավելին եղել է ցածրորակ։ Ցածրորակ է եղել նաև նուրբ բրդյա գործվածքների կոմբինատի ստացած մերինոս բրդի մեծ մասը և այլն։ Հետևաբար, հումքի որակի բարձրացումը ինչպես Միության, այնպես էլ մեր հանրապետության տեքստիլ հաստոցներն արդյունավետ օգտագործելու գլխավոր ուղիներից մեկն է։

Տեխնիկական առաջադիմության բարձր տեմպերն ինչպես արդյունաբերության մի շարք ճյուղերում, այնպես էլ տեքստիլ արդյունաբերության մեջ,



հասցրեցին հաստոցային պարկի արագ աճի և դրանց կոնստրուկտորական կառուցվածքի բարդացման։ Դա, իր հերթին, զուգակցվեց նորոգման աշխատանքների զգալի աճով և նորոգման գործի դժվարացմամբ։ Սակայն, տեխնիկական առաջադիմության աճի տեմպերը օժանդակ տնտեսություններում և, հատկապես, նորոգման մեխանիկական արտադրամասերում, պրակտիկայում մի քանի անգամ զիջել են հիմնական արտադրության մեջ եղած տեմպերին, որի հետևանքով խզում է առաջացել հիմնական արտադրության և դրանք սպասարկող մեխանիկական նորոգման տեղամասերի զարգացման մակարդակների միջև։

ՀՍՍՀ տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում հաստոցների նորոգման համար անհրաժեշտ պահեստամասերի մեծ մասը պատրաստվում է տեղում՝ ձեռնարկությունների մեխանիկական արտադրամասերում, որոնք զուրկ են անհրաժեշտ քանակությամբ և որակով պահեստամասեր պատրաստելու նորմալ հարմարություններից։ Այդ պայմաններում պատրաստած պահեստամասերն իրենց պարամետրերով, ամրությամբ, չափսերով և այլն, զգալի չափով զիջում են նախատեսված ստանդարտներին։ Միաժամանակ անհրաժեշտ է նշել, որ այս ճյուղի ձեռնարկությունների հաստոցային պարկի 36 տոկոսը հայրենական չէ։ Դրանց համար պահեստամասեր բոլորովին չեն մատակարարվում։ Հաստոցների նորոգումը կազմակերպելու համար տեղում պատրաստված պահեստամասերի օգտագործումը ազդում է նորոգումների որակի վրա և հաստոցների հաճախակի խափանումների պատճառ դառնում։

Մենք արդեն նշեցինք պարապուրդների ընդհանուր թվում հաստոցների նորոգման ժամանակ առաջացած պարապուրդների չափը, որը զգալիորեն գերազանցում է պլանային նախատեսումներին։ Այստեղից բխում է, որ հանրապետության տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում հաստոցային պարկի օգտագործման արդյունավետության բարձրացումը մեծ չափով կախված է նաև ձեռնարկությունների պահանջներին համապատասխան որակյալ պահեստամասեր մատակարարելու միջոցով դրանց նորոգման աշխատանքների նպատակահարմար կազմակերպումից։

Հաստոցները լավագույն ձևով օգտագործելու խոչընդոտներից մեկը, որը չափազանց մեծ ազդեցություն է թողնում դրանց արտադրողականության վրա, բանվորների արտադրական որակավորման ցածր մակարդակն է։ Այստեղ աշխատողների 80 տոկոսից ավելին կանայք են, որոնք իրենց աշխատանքային գործունեության ընթացքում հաճախ մեծ ընդմիջումներ (ֆիզիոլոգիական արձակուրդներ, երեխաների խնամք և այլն) են տալիս, որը նրանց ետ է պահում արտադրության ու տեխնիկայի նորությունների ներդրմանն ու գործարկմանը մասնակցելուց։ Ուստի, այս ճյուղում բանվորների արտադրական որակավորումը բարձրացնելու նպատակով անհրաժեշտ է լուրջ միջոցներ ձեռնարկել։ Վերջինս պետք է դառնա ձեռնարկությունների կոլեկտիվների, կուսակցական ու հասարակական կազմակերպությունների ամենօրյա գործը։

Հանրապետության տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում հաստոցային պարկի օգտագործման բնագավառում աշխատանքի արտադրողականության բարձրացման մեծ հնարավորություններ կան. անհրաժեշտ է միայն կազմակերպել դրանց արդյունավետ օգտագործումը։



ՍԻԼՎԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ԿԱՆԱՆՑ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՎԵՐԱՓՈԽՄԱՆ ՀԱՄԱՐ

*Կոմունիստական շինարարության արդի էտապում չափազանց կարևոր նշանակություն է ստանում կենցաղում կնոջ դրության բարելավումը: Չէ՞ որ կոմունիզմ կարող են կառուցել ֆիզիկապես առողջ, հոգեպես հարուստ և բազմակողմանի զարգացած մարդիկ: Իսկ դրա համար պետք է ունենալ նաև ազատ ժամանակ, որը ծախսվում է ո՛չ թե հասարակական արտադրության պրոցեսում կամ տնային տնտեսության մեջ, այլ անմիջականորեն օգտագործվում է մարդու ֆիզիկական ու հոգևոր ընդունակությունները զարգացնելու, անձնական պահանջմունքները բավարարելու համար:*

*Միայն ազատ ժամանակի առկայության պայմաններում կարելի է ստեղծագործաբար ընկալել դարերի ընթացքում մարդկային սերունդների թողած հոգևոր ու կուլտուրական ժառանգությունը, հաղորդակից լինել ժամանակակից գիտության, տեխնիկայի ու մշակույթի նվաճումներին և, առհասարակ, լինել զարգացած ու կուլտուրական մարդ:*

*Սովետական իշխանության տարիներին արմատապես փոխվեց կնոջ վիճակը: Տղամարդկանց հետ համահավասար նա ակտիվ մասնակցում է նոր հասարակարգի կառուցմանը: Սովետական կինը օգտվում է կրթություն ստանալու, հավասար աշխատանքի դիմաց հավասար վարձատրության, հանգստի, սոցիալական ապահովության, պետական կառավարմանը մասնակցելու լայն իրավունքներից: Ժողովրդական տնտեսության մեջ աշխատողների կեսից ավելին ներկայումս կանայք են: Ընդ որում, որոշ բնագավառներում (լուսավորություն, բժշկություն, առևտուր և այլն) գերազանցապես կանայք են աշխատում:*

*Հատկապես ակնառու է կնոջ դրության փոփոխությունը նախկինում տընտեսապես ու առավելապես հետամնաց ծայրամասերում, այդ թվում նաև Հայաստանում: Հայ կինն անցյալում զրկանքներ ու տառապանքներ շատ է կրել, գրագիտություն չի ստացել, նրա հետաքրքրության շրջանակները խիստ սահմանափակ են եղել:*

*Արդյունաբերության ու կուլտուրայի բուռն զարգացումը Սովետական Հայաստանում ոչ միայն տղամարդու, այլև կնոջ աշխատանքի հսկայական պահանջ ներկայացրեց: Անգրագիտության համատարած վերացումը, միջնակարգ ու բարձրագույն մասնագիտական կրթության ստացումը, արտադրական ակտիվ գործունեությունը հայ կնոջը դուրս բերեցին դարավոր խավարից, նրա մեջ առաջացնելով նոր հետաքրքրություններ ու պահանջներ: Այսօր հայ կինը տղամարդու հետ միասին ստեղծում է նոր կյանք ու մարդկային նոր փոխհարաբերություններ: Նա աշխատում է ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում: Հանրապետության արդյունաբերության աշխատողների 40 տոկոսը, գյուղատնտեսության՝ 45, առևտրի, հասարակական սննդի, նյութատեխնիկական մատակարարման ու մթերման ձեռնարկությունների՝ 49, առողջապահության ու ֆիզիկական կուլտուրայի հիմնարկությունների՝ 81, կուլտուր-լուսավորական հիմնարկների ու դպրոցական աշխատողների՝ 59, գիտական ու գիտահետազոտական կազմակերպությունների՝ 38 տոկոսը կանայք են:*

*Հայաստանում հասարակական արտադրության մեջ կանանց զբաղվածության համեմատաբար ցածր մակարդակը բացատրվում է նրանով, որ որոշ սոցիալական խմբերում դեռևս կենսունակ է այն ավանդությունը, ըստ որի կինը պետք է շատ երեխաներ ունենա և արտադրությունում չաշխատի, չնայած դա բացասաբար է անդրադառնում ընտանիքի բյուջեի վրա: Բացի այդ, մանկական հիմնարկությունները չեն բավարարում եղած պահանջը, իսկ հաճախ տղամարդիկ են զբաղեցնում այն տեղերը, որոնք առավել հարմար ու օգտավետ են կնոջ աշխատելու համար: Այսպես, բնակչության սպասարկման ոլորտում, մասնավորապես, առևտրի ցանցում, աշխատողների կեսից ավելին տղամարդիկ են: Մինչդեռ Միության մեջ առևտրի ոլորտում զբաղվածների միայն 25 տոկոսն են տղամարդիկ:*

*Հանրապետության էկոնոմիկայի ու կուլտուրայի հետագա արագ զարգացումը, բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման ոլորտի խիստ ընդլայնումը կարող են ապահովվել միայն ժողովրդական տնտեսության մեջ զբաղվածության կառուցվածքային արմատական փոփոխությունների, լրացուցիչ աշխատուժի, այդ թվում նաև կանանց աշխատուժի ներգրավման միջոցով:*

*Այսպիսով, հասարակական արտադրության մեջ կանանց զբաղվածության բարձրացումը անխուսափելի ու առաջադիմական պրոցես է: Առանց կանանց ակտիվ գործունեության աներևակայելի է պատկերացնել ժամանակակից հասարակական կյանքը, անհնար է ապահովել արտադրության ու կուլտուրայի բուռն զարգացումը: Կինը կրթություն ու ազատություն է ստանում լայն ասպարեզ դուրս գալու, այլ ոչ թե նորից տնային ճահճի մեջ խորասուզվելու, մանրանալու, օրորոցին գամվելու, հոգևոր զարգացումից ետ մնալու:*

*Հասարակական կյանքի ու տնտեսական ակտիվ գործունեության մեջ ներգրավվելով, կինն ընդլայնում է իր մտահորիզոնը, աճում թե մտավորապես, թե մասնագիտական առումով, ձեռք բերում տնտեսական ինքնուրույնություն և ընտանիքում ու հասարակության մեջ գրավում ավելի հաստատուն տեղ: Բավական է նշել, որ աշխատող կնոջ վաստակը ընտանիքի բյուջեում կազմում է մոտ 40 տոկոս: Սովետական մարդիկ ավելի պահանջկոտ են դարձել, ցանկանում են ապրել բարեկարգ ու կահավորված բնակարաններում, ճաշակով հագնվել ու լավ սնվել, հաղորդակից լինել ժամանակակից կուլտուրական կյանքին, աշխարհ տեսնել: Այդ տեսակետից կնոջ վաստակը լրացուցիչ կարևոր եկամուտ է ընտանիքի բարեկեցությունն ապահովելու, նրա անդամների բազմակողմանի պահանջմունքները բավարարելու համար:*

Սակայն տնտեսական գործոնը չէ միայն, որ կնոջը ներգրավում է արտադրության մեջ։ Այստեղ ոչ պակաս դեր են խաղում նաև հոգեբանական, բարոյական ու քաղաքական գործոնները, տնային տնտեսության կապանքներից ազատվելու ձգտումը։

Բայց մյուս կողմից էլ ո՞ւմ վրա բարդել տնային աշխատանքը, երեխաների խնամքն ու դաստիարակությունը, ամուսնու և զառամյալ ծնողների նկատմամբ հոգատարությունը։ Ինչպե՞ս պահպանել կանացի հմայքն ու գեղեցկությունը, երբ աշխատանքային օրը ճանապարհի հետ խլում է 9—10 ժամ։

Ազատ ժամանակ ունենալու տեսակետից գրեթե ոչնչով չի տարբերվում նաև չաշխատող կնոջ վիճակը։ Ընդ որում, որքան մեծ է ընտանիքը, հատկապես փոքրահասակ երեխաների թիվը, այնքան կնոջ համար քիչ հնարավորություններ են ստեղծվում հասարակական արտադրության մեջ աշխատելու և ազատ ժամանակ ունենալու համար։ Անհամեմատ ավելի ծանր է գյուղի կանանց դրությունը, քանի որ նա խնամում ու դաստիարակում է ոչ միայն ավելի շատ երեխաներ և, միաժամանակ, աշխատում կոլտնտեսությունում կամ սովխոզում, այլև նրա վրա են ծանրանում տնային ու օժանդակ տնտեսության շատ աշխատանքներ, որոնք քաղաքացու համար յուրահատուկ չեն։

Այնուամենայնիվ, քաղաքում, հատկապես խոշոր քաղաքում, աշխատող կնոջ վիճակն այնքան էլ նախանձելի չէ։ Նա վաղ առավոտյան պետք է արթնանա, խանութ վազի, տունը կարգի բերի, երեխաներին կերակրի, մանկապարտեզ կամ դպրոց ուղարկի և հետո լեփ-լեցուն ավտոբուսի կամ տրամվայի մեջ արդեն հոգնած մի կերպ աշխատանքի վայրը հասնի։ Բայց այստեղ էլ նա հոգեպես չի ազատվում ընտանեկան հոգսերից, գտնվում է անհանգիստ վիճակում, երբ տանը փոքրահասակ երեխան մենակ է մնում, ժամանակին չի սնվում, դասերը կանոնավոր չի պատրաստում և, առհասարակ, առանց հսկողության է մնում։ Մայրն անհանգստանում է նաև այն դեպքում, երբ երեխան գտնվում է մանկամսուրում, որտեղ 20—25 մանուկներին մեկ դաստիարակչուհի ու մեկ դայակ է սպասարկում, որտեղ երեխաների մեջ վարակիչ հիվանդությունների տարածման վտանգը չի վերանում։

Գործնականում կինն իրեն հասարակական աշխատանքի կարող է նվիրել միայն այն ժամանակ, երբ երեխան մեծանում ու դպրոցական հասակ է առնում։ Բայց ահա այստեղ է, որ մոր համար առաջանում են նոր պրոբլեմներ. նա մտածում է, թե երեխան ինչպես անվտանգ կհասնի դպրոց ու կվերադառնա, ով կբացի տան դուռը, ինչպես կմնա մենակ բնակարանում և այլն։ Երեխան մի ամբողջ «հրահանգչական» խրատներ է ստանում գազի, էլեկտրականության օգտագործման, դուռը ծեծողներին պատասխանելու ու բանալիով ամուր փակելու մասին։ Այդ բանալին հարյուր փթանոց ծանրությամբ ճնշում է մոր սրտի ու տրամադրության վրա։ Վիճակագրական տվյալները ցույց են տալիս, որ երեխաների հետ պատահող փողոցային տրանսպորտային դժբախտ դեպքերի 3/4-ը տեղի է ունենում առավոտյան ժամը 11-ից մինչև երեկոյան ժամը 5-ը, այսինքն՝ գերազանցապես այն ժամանակամիջոցում, երբ երեխան բախտի քմահաճույքին է մատնված։

Այդպիսի պայմաններում կինը չի կարող իր ամբողջ եռանդն ու ընդունակությունները հասարակությանն ու ընտանիքին ի սպաս դնել։ Ամենից առաջ նա մտածում ու բոլոր միջոցներով ձգտում է քիչ երեխա ունենալ։ Ընդ որում, այդ հարցը ծագում է առաջին երեխան ծնվելուց հետո։ Ինչպես ցույց են տա-



լիս ուսումնասիրությունները, երկու երեխա ունենալուց հետո կանանց կեսից ավելին առհասարակ չի ցանկանում ծննդաբերել։ Դա դեռ մեր հանրապետության քաղաքներում։ Միության շատ հանրապետություններում ու մարզերում (Էստոնիա, Լատվիա, ՌՍՖՍՀ Եվրոպական մաս և այլուր) ծննդի մակարդակն անհամեմատ ցածր է։ Խոշոր քաղաքներում երկու երեխա ունենալը պրոբլեմ է։

Ամենուրեք (բացառությամբ միջինասիական հանրապետությունների ու Ադրբեջանական ՍՍՀ-ի) վերջին տասը տարում էապես նվազել է ծննդաբերությունը և մի շարք վայրերում, առանձնապես խոշոր կուլտուրական ու արդյունաբերական կենտրոններում, բնակչության ընդլայնված վերարտադրության ապահովումը վտանգի տակ է գտնվում։ Բնակչության ամբողջ կազմում ավելի ու ավելի է բարձրանում անաշխատունակ մեծահասակների տեսակարար կշիռը և բացարձակորեն կրճատվում մինչև 10—16 տարեկան երեխաների թիվը։

Ստացվում է կախարդական մի շրջանակ. որքան բարձր է հասարակական արտադրության մեջ կանանց զբաղվածությունը, նրանց կրթական ու կուլտուրական մակարդակը, այնքան ցածր է ծննդի գործակիցը և այնքան սրվում է ժողովրդական տնտեսության հետագա արագ զարգացումն աշխատանքային ռեսուրսներով ապահովելու պրոբլեմը։

Հասկանալի է, որ բնակչության անխուսափելի կենտրոնացումը քաղաքներում՝ ուրբանիզացիան, մարդկանց պահանջմունքների ու հետաքրքրությունների շրջանակի անընդհատ ընդլայնումը և բազմաթիվ այլ գործոններ գնալով ավելի են նպաստելու այն բանին, որ ընտանիքում քիչ երեխաներ լինեն։ Առավել ևս ծնողները դրանում գրեթե ոչ մի նյութական շահագրգռվածություն չունեն։ Նրանց հսկայական ծախսերը, հոգեկան մաշող վերապրումներն ու անդուլ չարչարանքը երբեք չեն փոխհատուցվում ո՛չ աղջկա և ո՛չ էլ տղայի կողմից։ Վերջիններս, որպես կանոն, ձգտում են ստանալ բարձրագույն կրթություն և աշխատանքային գործունեության մեջ են մտնում այն հասակում, երբ արդեն ինքնուրույն ընտանիք կազմավորելու անհրաժեշտություն է առաջանում, երբ նրանք շարունակում են ծնողների օգնության կարիքը զգալ։

Բնակչության ընդլայնված վերարտադրության մեջ ավելի շատ շահագրգռված է հասարակությունը, քան ընտանիքը։ Հետևապես կնոջ հասարակական ու մայրական ֆունկցիաները պետք է առնվազն հավասարաչափ գնահատվեն և խրախուսվեն։ Ամենից առաջ, անհրաժեշտ է ընդունել և, իհարկե, օրինական հիմքի վրա դնել այն ճշմարտությունը, որ մանուկ հասակում երեխայի խնամքը նույնպես հասարակական անհրաժեշտ աշխատանք է։ Հետևապես, ընդհանուր առմամբ երեխաների խնամքի ու դաստիարակության վրա ծախսված ժամանակը և հասարակական արտադրության մեջ աշխատաժամանակը պետք է աստիճանաբար կարգավորվեն այն հաշվով, որ դրանց գումարը չգերազանցի նորմալ աշխատանքային օրվա տևողությանը։ Չէ՛ որ կինը տղամարդու հետ հավասար 8 ժամվա ընթացքում գտնվում է աշխատանքի վայրում և տուն վերադառնալուց հետո լրացուցիչ հսկայական էներգիա ու ժամանակ է ծախսում ճաշ պատրաստելու, ընտանիքի անդամներին կերակրելու, բնակարանը կարգի բերելու և բազմաթիվ այլ մանր ու տաղտկալի աշխատանքներ կատարելու համար։ Դիտարկումները ցույց են տալիս, որ տղամարդը երկու-երեք անգամ ավելի ազատ ժամանակ է ունենում, քան կինը։ Պարզապես երկու աշխատող ամուսիններ խիստ անհավասար տնտեսական ու բարոյական բեռ են կրում (աշխատավարձի տարբերությունն այստեղ գրեթե ոչ մի նշանակություն չունի)։

Պետք է նաև նկատի ունենալ, որ կնոջ օրգանիզմի ու հոգեբանության վրա ավելի շատ են անդրադառնում ճառագայթումը, շոգը, ցուրտը, վնասակար գազերը, փոշին, աղմուկը, բնակարանից աշխատանքի վայրի հեռավորությունը և այլն։ Կինն ավելի ներվային է դառնում, ավելի հաճախ է հիվանդանում, մշտապես գտնվում է հոգեկան անհանգիստ վիճակում, կշտամբում ամուսնուն, երեխաներին։ Այս բոլորի հետևանքով աճում է ամուսնալուծությունների թիվը, թուլանում երեխաների նկատմամբ հոգատարությունն ու հսկողությունը, ավելանում են մանկական հանցագործություններն ու դժբախտ դեպքերը, նվազում է ծնդաբերությունը։ Որոշակի պայմաններում այդ պրոբլեմների սրումը կարող է ավելի շոշափելի տնտեսական ու բարոյական վնաս հասցնել հասարակությանը, քան կանանց աշխատանքային ներդրումներն են կազմում հասարակական արտադրության մեջ։

Մեր կարծիքով, հասարակության մեջ ու կենցաղում կնոջ աշխատանքային ու կենցաղային վիճակի բարելավման հարցերը պետք է կոնկրետ արտացոլում գտնեն սոցիալիստական պլանավորման ամբողջ սիստեմում և այդ հիման վրա կիրառվեն կոմպլեքս սոցիալ-տնտեսական միջոցառումներ։

Ժամանակն է, որ դիֆերենցիալ վերաբերմունք ցուցաբերվի ժողովրդական տնտեսության մեջ կանանց աշխատուժի օգտագործման նկատմամբ և հեռանկարային պլաններում կոնկրետ առաջադրանքներ մշակվեն նրանց աշխատանքային օրը կրճատելու, զբաղվածության առավել նպատակահարմար կառուցվածք սահմանելու, ծննդի օպտիմալ մակարդակը խրախուսելու և տնային աշխատանքը թեթևացնելու վերաբերյալ։

Երկրի տնտեսական ու տեխնիկական զարգացման ներկայիս մակարդակը թույլ է տալիս գիտական հիմքերի վրա դնել ու օրգանապես զուգակցել կնոջ հասարակական ու ընտանեկան գործունեությունը և հաջորդ տասնամյակում վճռական քայլ կատարել կանանց, ինչպես նաև տղամարդկանց ազատ ժամանակի ավելացման ուղղությամբ։ Ընդ որում, պլանավորման պրակտիկայում ազատ ժամանակը պետք է դառնա այն հավաքական ու կարևորագույն ցուցանիշներից մեկը, որով բնորոշվում է հասարակության զարգացման մակարդակը և ժողովրդի բարեկեցությունը։ Առաջիկա տասնամյակում պետք է մշակել ու իրագործել այնպիսի միջոցառումներ, որոնք հնարավորություն կտան կանանց ազատ ժամանակն ավելացնել առնվազն 3—4 ժամով։

Այդ միջոցառումները պետք է արտացոլվեն ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլաններում և ընդգրկեն ինչպես հասարակական արտադրությունում, այնպես էլ տնային տնտեսության մեջ կանանց աշխատաժամանակի կրճատման, աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավման հարցերը։ Օրինակ, նպատակահարմար է առաջիկա հնգամյակում սահմանել կանանց համար յոթժամյա, իսկ հաջորդ հնգամյակում՝ վեցժամյա աշխատանքային օր (համապատասխանորեն 35 և 30-ժամյա աշխատանքային շաբաթ)։ Դրան կարելի է հասնել աշխատանքային պրոցեսները մեքենայացնելու և ավտոմատացնելու, ինչպես նաև աշխատանքային օրն ավելի ռացիոնալ օգտագործելու միջոցով։

Պետք է նաև խրախուսել ու կիրառել կանանց համար կես աշխատանքային օրը։ Ժամանակակից տեխնիկական հեղափոխության ու աշխատանքի հետագա լարվածության պայմաններում հասարակական արտադրությունից աշխատուժի դուրս մղումը և ոչ լրիվ աշխատանքային օրվա կիրառումը անհրաժեշտություն են դառնում։ Եթե ընտանիքը քիչ թե շատ նյութապես ապա-



հովված է և կինն իր աշխատանքային փորձն ու հմտությունը չկորցնելու նպատակով ցանկանում է աշխատել, բայց ոչ լրիվ աշխատանքային օր, ապա այն պետք է խրախուսել և վճարել ըստ աշխատանքի քանակի ու որակի։ Իսկ եթե կինը ստիպված է այդ քայլին դիմելու՝ ընտանիքում մանկահասակ երեխաներ ունենալու պատճառով, ապա նա պետք է լրիվ վարձատրվի։ Ավելին, պետք է հասնել այն բանին, որ մինչև երեխայի երեք տարեկան հասակը կինն իրավունք ունենա չաշխատել, պահպանել իր աշխատանքային ստաժը և ստանալ աշխատավարձի որոշ մասը (առաջին էտապում՝ 50 տոկոսը, երկրորդում, այսինքն՝ 70-ական թվականների վերջերին՝ 80—90 տոկոսը)։

Հասարակական արտադրության մեջ կնոջ վիճակի բարելավման համար կիրառվող մյուս խումբ միջոցառումների նպատակն է թեթևացնել ու հաճելի դարձնել աշխատանքը։ Դրա համար օրենսդրական կարգով պետք է արգելել որոշ բնագավառներում կանանց աշխատուժի օգտագործումը։ Առանձնապես անհրաժեշտ է սահմանափակել կանանց աշխատուժի կիրառումը շինարարության ու հանքարդյունաբերության մեջ և ամենուրեք, որտեղ ֆիզիկական մեծ ուժ ու դիմացկունություն է պահանջվում։ Նույնիսկ աշխատանքի մեջ կինը չպետք է կորցնի իր կանացի հմայքն ու նրբությունը։ Դա, իհարկե, չի նշանակում, որ կյանքի ծանրությունն ու դառնությունը միայն տղամարդը պետք է տանի։ Խնդիրն այն է, որ ընդհանրապես բոլոր բնագավառներում աշխատանքային պրոցեսները մեքենայացվեն ու ավտոմատացվեն, աշխատանքային պայմանները հիմնովին բարելավվեն։

Միայն այդ դեպքում տղամարդիկ ու կանայք հավասարաչափ կօգտվեն ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության պտուղներից, իսկ աշխատանքը կդառնա արդեն հաճելի կենսական անհրաժեշտություն։ Եվ քանի դեռ չենք հասել այդ նպատակին, թող տղամարդիկ մի փոքր ավելի ծանրաբեռնվեն հասարակական արտադրության մեջ, որպեսզի կանայք ժամանակ ու տրամադրություն ունենան ուշադիր ու հոգատար լինելու նրանց և երեխաների նկատմամբ, ուժ ու եռանդ պահպանեն տնային գործերի համար։

Չէ՞ որ ընտանիքում, տան մեջ կշեռքի նժարը բոլոր դեպքերում թեքվում է հօգուտ տղամարդու։ Ուստի, այստեղ էլ կինը պետք է բեռնաթափվի բազմաթիվ մանր ու տհաճ աշխատանքներից, ծանր հոգսերից, թեկուզ նրանով, որ տղամարդը կարող է նրան օգնության ձեռք մեկնել և տնային որոշ ֆունկցիաներ կատարել։ Ցավոք, մեզ մոտ տղամարդը հաճախ անպատվաբեր է համարում առհասարակ տնային որևէ գործ կատարելը, կնոջն օգնելը և երբեմն իրեն պահում է որպես տիրակալ։ Ինչո՞ւ, օրինակ, դպրոցական հասակում երեխաներին, այդ թվում նաև տղաներին, չսովորեցնել տնային տնտեսավարության գործը, նրանց գիտակցության մեջ արմատավորելով տանը մորն օգնելու անհրաժեշտությունը։ Ընտանիքում աշխատանքի խելացի բաժանումը և կազմակերպումը զգալիորեն կարող են թեթևացնել կնոջ վիճակը տնային տնտեսությունը վարելու պրոցեսում։

Կենցաղում կնոջ վիճակի հետագա թեթևացումը մեծ չափով կախված է այն բանից, թե բնակարանային ինչպիսի՞ պայմաններ կստեղծվեն ընտանիքի համար, ի՞նչ ուղղությամբ ու տեմպերով կփոփոխվեն կոմունալ հարմարությունները, մասնավորապես քաղաքային տրանսպորտի միջոցները, առևտրի, հասարակական սննդի, կենցաղային սպասարկման ու կուլտուրական հիմնարկությունների աշխատանքները։ Ներկայումս ընտանիքների զգալի մասը դեռ զուրկ է բնակարանային ու կոմունալ տարրական հարմարություննե-

րից։ Հայկական ընտանիքը (որոշ բացառությամբ), որպես կանոն, չի օգտվում հասարակական սննդի, լվացքատների, այսպես կոչված, բարի ծառայություններից։ Դրան խանգարում է նաև այն հանգամանքը, որ լվացքատները քիչ են, տեղավորված են միայն քաղաքի կենտրոնում, ոչ բոլորն ունեն լավ սարքավորումներ։ Լավ կլիներ, որ բնակելի խոշոր զանգվածներում կազմակերպվեն տնային լվացքատներ՝ Միության խոշոր քաղաքների օրինակով։

Բնակչությանն անբավարար են սպասարկում նաև առևտրական կազմակերպությունները, թույլ են կիրառվում սպասարկման նոր մեթոդները։ Առևտրի հիմնարկությունները կարող են կազմակերպել (ոչ մեծ վճարով) սննդամթերքների հիմնական տեսակները տուն առաքելը։

Ծայրահեղ վատ է աշխատում քաղաքային տրանսպորտը, կենցաղում քիչ են օգտագործվում էլեկտրական սարքեր ու այլ հարմարանքներ։ Հաշվված է, օրինակ, որ կենցաղի լրիվ էլեկտրիֆիկացիան տնային տնտեսության մեջ աշխատանքային ծախսումները կրճատում է մոտ 4 անգամ։ Իսկ դրա համար պահանջվում է կենցաղում էլեկտրական էներգիայի օգտագործման ներկայիս մակարդակը բարձրացնել 8—10 անգամ։ Դա հնարավորություն կտա լրիվ մեքենայացնել տնային տնտեսության մեջ աշխատանքային պրոցեսները։

Կենցաղի արմատական վերափոխման հիմնական ուղին հասարակական ծառայությունների տարբեր ձևերի արագ զարգացումն է։ Պետք է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր ընտանիք կարողանա մատչելի գներով և առանց լրացուցիչ էներգիա ու ժամանակ կորցնելու օգտվել կենցաղային ու կուլտուրական ծառայությունների առաջավոր ձևերից։

Կնոջ աշխատանքի թեթևացման ուղիներից մեկն է բարի ծառայությունների բյուրոների ստեղծումը, որպեսզի կանայք հնարավորություն ունենան ոչ մեծ վճարով մարդիկ հրավիրել՝ օգնելու երեխաներին ու ծերերին խնամելու, բնակարանները մաքրելու գործում։ Այդ նպատակով առաջիկա տասնամյակում նկատելի քայլ կկատարվի։ Օրինակ, Հայկական ՍՍՀ պետպլանի էկոնոմիկայի և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտի տվյալներով ենթադրվում է, որ 1971—1980 թթ. հանրապետության բնակչության բնակարանով ապահովվածության մակարդակը կբարձրանա ավելի քան 40 տոկոսով, կվերացվեն հին ու խախուտ տնակները և գրեթե բոլոր բնակարաններում կտեղադրվեն բնական կամ հեղուկ գազի սարքավորումներ։ Մոտ 3 անգամ կավելանա կենցաղում մեկ շնչի հաշվով օգտագործվող էլեկտրաէներգիան։ Այդքանով էլ նախատեսվում է ավելացնել նախադպրոցական հիմնարկություններում տեղերի քանակը, կենցաղային սպասարկման ծավալը և այլն։

Հասկանալի է, որ մեկ տասնամյակում դեռևս հնարավոր չէ գիտական նորմաներով ապահովել բնակչության կոմունալ-բնակարանային ու կուլտուր-կենցաղային լրիվ պահանջմունքները։ Կենցաղի լրիվ, կոմունիստական հիմունքներով վերափոխումը երկար ժամանակ է պահանջում։



Ն. Մ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

# ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՕԲՅԵԿՏԻՎ ԵՎ ՍՈՒԲՅԵԿՏԻՎ ԳՈՐԾՈՆՆԵՐԸ

Օբյեկտիվ գործոններ հասկացությունը բովանդակում է հասարակական այնպիսի երևույթներ, որոնք անկախ են մարդկանց կամքից, պայմանավորում են նրանց գործունեության շրջանակն ու ուղղությունը։ Դրանցից են բնական պայմանները, արդյունաբերության զարգացման մակարդակը, պատմականորեն հասունացած խնդիրներն ու նյութական, քաղաքական և հոգևոր զարգացման պահանջմունքները։

Չի կարելի օբյեկտիվ գործոններ հասկացությունը նույնացնել օբյեկտիվ օրենքներ հասկացությանը։ Օրենքը երևույթների ներքին էական կապն է, որը պայմանավորում է դրանց անհրաժեշտ զարգացումը։ Օրենքն արտահայտում է երևույթների միջև որոշակի կարգը՝ պատճառական, անհրաժեշտ և կայուն կամ նյութական օբյեկտների հատկանիշները, կրկնվող էական հարաբերակցությունները, երբ երևույթների փոփոխությունն այլ երևույթների ոլորտում առաջացնում է որոշակի փոփոխություններ։

Օբյեկտիվ գործոնի և օրենքի միջև նույնությունը նրանց օբյեկտիվ բնույթն է։ Սակայն, օբյեկտիվ գործոնը համեմատաբար լայն հասկացություն է, այն իր մեջ ընդգրկում է նաև օրենքի գործողությունը։ Արտադրաուժերի և արտադրահարաբերությունների համապատասխանության օրենքը բնորոշում է հասարակական երևույթների միջև կապը և որպես ընդհանուր սոցիոլոգիական օրենք գործում հասարակական տնտեսական բոլոր ֆորմացիաներում։ Այդ օրենքի գործողությունը միաժամանակ բնութագրում է մարդկանց գործունեության շրջանակներն ու ուղղությունները՝ որպես օբյեկտիվ գործոն։ Այսպես, օբյեկտիվ գործոն է այն իրավիճակը, երբ իմպերիալիստական երկրները 1917 թ., զբաղված լինելով պատերազմով, չկարողացան կասեցնել ռուսական հեղափոխության հաղթանակը։ Այս նշանակում է, որ օբյեկտիվ գործոնները կարող են լինել և՛ անհրաժեշտ, և՛ պատահական, իսկ օրենքը՝ միայն անհրաժեշտ։ Օբյեկտիվ գործոնը կարող է լինել ժամանակավոր ու մասնակի, իսկ օրենքը մնայուն է, էական։ Օբյեկտիվ գործոնի դրսևորումը հաճախակի է փոփոխվում, օրենքի գործողությունն անհամեմատ կայուն է ընթանում։ Օբյեկտիվ գործոնը նեղ առումով միօրինակ է, իսկ օրենքը՝ ընդ-

հանուր, յուրահատուկ։ Օբյեկտիվ գործոնը հանդես է գալիս ռեալ կապերի մեջ և ոչ միշտ է, որ կանխատեսվում է։ Օրենքը կանխատեսվում է։

Օբյեկտիվ գործոնների առկայությամբ ապահովվում է երևույթի դրսևորումը (առաջացումը, իրականացումը և այլն), իսկ երևույթի առաջացումը օրենքի գործողության հետևանք է, որի իրականացումը պահանջում է նաև օբյեկտիվ գործոնների առկայություն (սոցիալիստական հեղափոխությունը արտադրաուժերի և արտադրահարաբերությունների կոնֆլիկտի արդյունք է, բայց սոցիալական հեղափոխության հաղթանակի համար անհրաժեշտ են օբյեկտիվ գործոններ)։ Այստեղ, միաժամանակ, անհրաժեշտ է նաև սուբյեկտիվ գործոնների առկայությունը, որոնք ենթադրում են մասսաների, դասակարգերի, կուսակցությունների, պետության և առանձին գործիչների գործողություններ, նրանց գիտակցականությունը, կամքը, պատրաստակամությունը և գործելու կարողությունը։ Այսպիսով, սուբյեկտիվ գործոնները սուբյեկտիվ կամքի ու գիտակցության արգասիք են, պայմանավորված օբյեկտիվ գործոններով։ Օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների տարբերությունը բացարձակ չէ, առաջինների դերի մեծացումը ակտիվացնում է սուբյեկտիվի դերը, նպաստում երևույթների զարգացմանը։

Օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների փոխհարաբերության մեջ որոշիչ դերը, վերջին հաշվով, պատկանում է առաջինին։ Սակայն, երբ սուբյեկտիվ գործոնների համար առկա են իրական հանգամանքները, սուբյեկտիվը կարող է որոշիչ դեր խաղալ։ Այդ է վկայում մարդկության պատմությունը։ Հայտնի է, երբ հասունացած օբյեկտիվ գործոնների առկայության պայմաններում հասարակական հեղաշրջումը չի իրականացվել, որովհետև բացակայել են սուբյեկտիվ գործոնները և ընդհակառակը։ Սոցիալական հեղափոխությունը օրինաչափություն է, բնապատմական պրոցես։ Այն հանդես է գալիս, երբ արտադրահարաբերություններն այլևս չեն համապատասխանում արտադրաուժերի բնույթին։ Սակայն անցյալից և մեր ժամանակաշրջանից կարելի է թվարկել օրինակներ, երբ արտադրահարաբերությունները չեն համապատասխանում արտադրաուժերի բնույթին, իսկ սոցիալական հեղափոխություն տեղի չի ունենում։ Այդ բացատրվում է օբյեկտիվ և սուբյեկտիվ մի շարք անհրաժեշտ գործոնների բացակայությամբ։ Քիչ չեն դեպքերը, երբ առկա են և՛ անհամապատասխանություն, և՛ օբյեկտիվ գործոններ, բայց սոցիալական հեղափոխություն դարձյալ տեղի չի ունենում, որովհետև բացակայում են սուբյեկտիվ գործոնները։

Երկրորդ ինտերնացիոնալի կրախը աշխատության մեջ Լենինը նշել է. «Մարքսիստի համար կասկածից դուրս է, որ հեղափոխությունն անհնարին է առանց հեղափոխական սիտուացիայի։ Ընդ որում, ամեն մի հեղափոխական սիտուացիա հեղափոխության չի հասցնում։ Որո՞նք են, ընդհանուր առմամբ, հեղափոխական սիտուացիայի նշանները։ Մենք, հավանորեն, չենք սխալվի, եթե մատնանշենք հետևյալ երեք գլխավոր նշանները. 1) անհնարինություն տիրապետող դասակարգերի համար՝ անփոփոխ պահպանելու իրենց տիրապետությունը. «վերին խավերի» այս կամ այն ճգնաժամը, տիրող դասակարգի քաղաքականության ճգնաժամը, որը ճեղքվածք է ստեղծում, և որից ճնշված դասակարգերի անբավականությունն ու վրդովմունքն է պոռթկում։ Հեղափոխության առաջացման համար սովորաբար բավական չէ միայն «ստորին խավերի չուզելը», այլ պահանջվում է նաև, որ «վերին խավերն էլ չկարողանան» ապրել առաջվա նման։ 2) Ճնշված դասակարգերի կարիքների և թշվառություն-



ների սրումը սովորականից ավելի։ 3) Մատնանշված պատճառների հետևանքով մասսաների ակտիվության նշանակալի բարձրացում, մասսաներ, որոնք «խաղաղ» դարաշրջանում հանգիստ կերպով թույլ են տալիս իրենց կողոպտել, իսկ փոթորկահույզ ժամանակներում առաջ են քաշվում, ինչպես ճգնաժամի ողջ իրադրությամբ, այնպես էլ բուն իսկ «վերին խավերի» միջոցով, ինքնուրույն պատմական ելույթի։

Առանց այդ օբյեկտիվ փոփոխությունների, անկախ ոչ միայն առանձին խմբերի ու կուսակցությունների, այլև առանձին դասակարգերի կամքից, հեղափոխությունը— ըստ ընդհանուր կանոնի— անհնարին է։ Այդ օբյեկտիվ փոփոխությունների ամբողջ գումարն է հենց, որ կոչվում է հեղափոխական սիտուացիա։ Այդպիսի սիտուացիա կար 1905 թվականին Ռուսաստանում, և Արևմուտքում՝ հեղափոխությունների բոլոր դարաշրջաններում. բայց այն եղել է նաև անցյալ դարի 60-ական թվականներին Գերմանիայում, 1859—1861, 1879—1880 թվականներին Ռուսաստանում, թեպետ և այդ դեպքերում հեղափոխություններ չեն եղել։ Ինչո՞ւ։ Որովհետև ոչ բոլոր հեղափոխական սիտուացիայից է հեղափոխություն ծագում, այլ միայն այնպիսի սիտուացիայից, երբ վերը թվարկված օբյեկտիվ փոփոխություններին միանում է սուբյեկտիվը, այն է՝ միանում է հեղափոխական դասակարգի ունակությունը մասսայական հեղափոխական գործողությունների, որոնք բավականաչափ ուժեղ են, որպեսզի փշրեն (կամ կոտրեն) հին կառավարությունը, որը երբեք, նույնիսկ ճգնաժամի դարաշրջանում, չի «ընկնի», եթե նրան «չգցեն» (տե՛ս Երկեր, հ. 21, էջ 262—263)։

Չնայած մեր օրերում հասարակական կյանքում տեղի են ունեցել արմատական վերափոխումներ, սակայն հեղափոխական իրադրության լենինյան սահմանումը չի կորցրել իր ծրագրային նշանակությունը։ Այն հարստանում է պատմական նոր ընդհանրացումներով, արդի սոցիալ-քաղաքական հարաբերությունների գիտական վերլուծությամբ։

Ժամանակակից աշխարհում կատարվել են նոր, խոր փոփոխություններ, սոցիալիստական հեղափոխություններն հաղթանակել են շատ երկրներում։ Փոփոխություններ են տեղի ունեցել ինչպես առանձին վերցրած երկրներում, այնպես և միջազգային կյանքում։ Միջազգային կյանքում ամենամեծ փոփոխությունը երկու հակամարտ լագերների առաջացումն է, որը դասակարգային պայքարի յուրօրինակ ձև է, արտահայտված խաղաղ գոյակցության համապարփակ սկզբունքում։ Արդի աշխարհում գոյացել են օբյեկտիվ և սուբյեկտիվ նոր գործոններ։ Այժմ տեղի են ունենում հասարակական նոր փոփոխություններ, նոր երևույթներ, սոցիալական հեղափոխություններ, ազգային-ազատագրական շարժումներ, պատերազմներ և այլն։ Այդ երևույթների միջև, անշուշտ, կա փոխադարձ կապ, բայց դրանք տարբեր երևույթներ են, որոնց փոխպայմանավորվածությունը դրսևորվում է միջնորդավորված եղանակներով։ Այսպես, պարտադիր չէ, որ սոցիալիստական հեղափոխությունը տեղի ունենա պատերազմի հետևանքով։ Կուբայի հեղափոխությունը չպայմանավորվեց պատերազմով, բայց այն հաղթանակեց, որովհետև առկա էին օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնները։

Սոցիալ-քաղաքական հակադիր սիստեմների գոյության պայմաններում մեծանում է սուբյեկտիվ գործոնի դերն ու նշանակությունը ժողովուրդների կյանքում, ուժեղանում է վերջինների ակտիվ վերաբերմունքը պետական կառավարման ոլորտներում տեղի ունեցող իրադարձությունների նկատմամբ։

Նոր որակ է ստանում սուբյեկտիվ գործոնի դերը հաղթանակած սոցիալիզմի երկրներում, երբ գիտակցված սոցիալական վերափոխումների մեջ ընդգրկվում են ժողովրդական լայն մասսաները, երբ ստեղծվում են լայն հնարավորություններ հասարակական կյանքի բոլոր բնագավառների պլանային զարգացման համար։ Այդ վերափոխումների առաջատար, ղեկավար ուժը կոմունիստական կուսակցություններն են։ Մեծացել է վերջիններիս դերը աշխատավորական դասակարգերի կազմակերպական և գաղափարական միասնության ասպարեզում, միջազգային կոմունիստական ու ազգային-ազատագրական շարժումների մեջ։

Օբյեկտիվ գործոնների գերագնահատումը հանգեցնում է ճակատագրականության (ֆատալիզմի) ու տարերայնության կոնցեպցիային (աջ օպորտունիզմի գաղափարախոսության), իսկ սուբյեկտիվ գործոնի գերագնահատումը սուբյեկտիվ կամայականության պրակտիկային, անարխիզմին ու ավանտյուրիզմին։ Դրա համար կոմունիստական կուսակցություններն իրենց գործունեության մեջ պայքարում են ճիշտ գնահատել օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների դերն ու նշանակությունը։

Բուրժուական պրոպագանդան, հատկապես հակակոմունիզմի գաղափարախոսությունն ամեն կերպ խեղաթյուրում են օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների դերի ու նշանակության մարքսիստական ըմբռնումը։ Մեր գաղափարական թշնամիները ճգնում են վարկաբեկել սոցիալիզմի կառուցման պրակտիկան, նսեմացնել կամ ծուռ հայելու մեջ ներկայացնել սոցիալիստական երկրների հաջողություններն ու նվաճումները, գովերգել ու գունազարդել կապիտալիզմը, թմբկահարել, այսպես կոչված՝ ազատ աշխարհի առավելությունները։ Նրանք գործադրում են հնարավոր բոլոր միջոցները ջլատելու բանվորական ու կոմունիստական կուսակցությունների միասնությունը, խափանելու ազգային-ազատագրական շարժումները, արդարացնելու նոր գաղութատիրական քաղաքականությունը և այլն։

Հակակոմունիզմի դեմ պայքարում առանձնապես մեծ նշանակություն է ստանում պայքարը հանուն մարքս-լենինյան գաղափարախոսության անաղարտության, հանուն լենինիզմի։

Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ հրապարակած ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում առանձնապես ընդգծվում է սուբյեկտիվ գործոնի դերն ու նշանակությունը հասարակության սոցիալիստական վերափոխումների մեջ։ Այնտեղ մասնավորապես ասված է. ընդգծելով հասարակական զարգացման օբյեկտիվ պայմանների ու տենդենցների վճռական նշանակությունը, Լենինը միշտ պատմական հանգամանքների գիտական խոր վերլուծությունը միացնում էր մասսաների, դասակարգերի, կուսակցությունների հեղափոխական եռանդի, նախաձեռնության, գիտակցականության, կազմակերպվածության, ինչպես նաև առանձին անհատների գործունեության նշանակության ամենավճռական ճանաչման հետ։ Նրա դիալեկտիկական միտքը բացահայտեց հեղափոխական պրոցեսի արագացման նոր հնարավորություններ, կապված սուբյեկտիվ գործոնի գործողության հետ, այն պայմաններում, երբ կապիտալիզմը սոցիալիզմով փոխարինելու ընդհանուր նախադրյալներն արդեն հասունացել են։

Այսպիսով, հասարակական զարգացման այդ երկակի գործոնները լրացնում են մեկը մյուսին, գտնվում փոխադարձ կապի ու պայմանավորվածության մեջ։ Դրանց փոխհարաբերության դիալեկտիկայի վճռական կողմը



օբյեկտիվ գործոնն է, սակայն, որոշակի իրադրություններում սուբյեկտիվ գործոնը կարող է վճռական դեր խաղալ։ Հասարակական կյանքում հաճախ ճակատագրական է լինում դրանց անտեսումը կամ թերագնահատումը։ Հիշենք այն իրադարձությունները, որոնք տեղի ունեցան Ինդոնեզիայում։ Հայտնի է, որ Ինդոնեզիայի հասարակական-քաղաքական կյանքում կոմունիստական կուսակցությունն ազդեցիկ ուժ էր։ Սակայն սոցիալիստական վերափոխումների, արմատական հեղաշրջում կատարելու համար դեռևս չկային անհրաժեշտ գործոնները։ Եվ արդյունքը այն եղավ, որ Ինդոնեզիայի կոմկուսի սխալ տակտիկայի կիրառումը ողբերգական վախճան ունեցավ։

Փաստ է, որ իմպերիալիզմը ծնում է պատերազմ և անխուսափելի են ռազմական կոնֆլիկտները։ Մեր օրերում իմպերիալիստական հակասությունները մարդկությանը սպառնում են նոր համաշխարհային պատերազմ։ Այս հանգամանքը չի կարելի անտեսել։ Սակայն սխալ կլիներ նաև թերագնահատել պատերազմը կանխելու գոյություն ունեցող օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնները։ Այժմ համաշխարհային պատերազմն անխուսափելի չէ, գոյություն ունի սոցիալիստական պետությունների համագործակցություն, միջազգային հարաբերություններում իմպերիալիզմը մենաշնորհ, վճռական դեր չի կատարում։

Ժողովուրդներն ըմբռնում են արդարացի և անարդար պատերազմների էությունը, նոր համաշխարհային պատերազմի օբյեկտիվ-սուբյեկտիվ գործոնները և ակտիվորեն ներքաշվում գիտակցական պայքարի մեջ՝ հանուն խաղաղության։ Պայքարը խաղաղության համար դարձել է պայքար դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար։ Սակայն այդ պայքարի հաջող ելքը պահանջում է ժամանակին և ճիշտ հաշվի առնել ու օգտագործել օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնները։ Այդ գործում վճռական սուբյեկտիվ գործոն են դարձել կոմունիստական ու բանվորական կուսակցությունները։ Պայքարի հաջողությունը պայմանավորված է օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների ճիշտ գնահատմամբ ու ժամանակին օգտագործմամբ։ Այդ գործում օպորտունիստական հանդուրժողականությունն ու անարխիստական տարերայնությունը հավասարապես կործանարար հետևանքների կհասցնեն։ Չպետք է թերագնահատել հակառակորդի հնարավորություններն ու ուժերը, հաղթանակի համար պետք է ակտիվացնել սուբյեկտիվ գործոնների դերը, մոբիլիզացնել ժողովրդական մասսաների գիտակցական ակտիվությունը, այդ ակտիվության ուժեղացումը պայմանավորված է հասարակական զարգացման երկակի պայմանների ճիշտ գիտակցմամբ ու օգտագործմամբ։



Ա. Ս. ՋԻԼԻՆԳԱՐՅԱՆ

# ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՄԻՋԱՎԱՅՐԻ ԷԹՆԻԿԱԿԱՆ ԲՆՈՒԹԱԳԻՐԸ

*Սոցիալական միջավայրի ուսումնասիրությունը սոցիոլոգիական մաքի էական պրոբլեմներից է, որի շուրջ վերջին ժամանակաշրջանում ստեղծվել է գիտական լուրջ գրականություն։ Սակայն սոցիալական միջավայրի էթնիկական բնութագրի ուսումնասիրման խնդիրը դեռևս դուրս է մնացել գիտական հետազոտության շրջանակից։*

*Էթնիկական առանձնահատկությունները բնորոշ են մարդկանց հանրության բոլոր ձևերին։ Նրանք կարող են լինել ինքնաբուխ, կամ ինչ-որ չափով ներմուծված։ Էթնիկական առանձնահատկությունները դրսևորվում են հատկապես սոցիալական տարբեր միջավայրերի կուլտուրական արժեքների խաչաձևման պրոցեսում։ Լինելով կենսապրոցեսի անբաժան տարրը, էթնիկական հատկանիշներն առօրյա կյանքում առանձնապես չեն դրսևորվում։ Ըստ երևույթին դրանով պետք է բացատրել հետազոտողների որոշակի անտարբերությունը սոցիալական միջավայրի էթնիկական բնութագրի և, այստեղից էլ՝ անհատների էթնիկական հատկանիշների նկատմամբ։*

*Էթնիկականը (ծագում է հունարեն «էթնոս» բառից, որը նշանակում է ժողովուրդ, ազգություն) ավելի լայն առումով կենցաղային, սովորութային, լեզվական, հոգեբանական և նման կարգի այն առանձնահատկությունների ամբողջությունն է, որոնք հատուկ են տվյալ աշխարհագրական միջավայրում ապրող ու որոշակի տնտեսություն վարող ցեղախմբին, ժողովրդին, ազգությանը, ազգին և առհասարակ մարդկանց շատ թե քիչ կայուն խմբին։ Այստեղ «էթնիկականը» քննվում է որպես սոցիալական միջավայրի էական բնութագրերից մեկը։ Անգամ անկայուն (ժամանակավոր) սոցիալական միջավայրում անհրաժեշտաբար ձևավորվում է նրա էթնիկական «դեմքը»։ Այդ են վկայում որևէ բնակավայրի աճն ու զարգացումը։ Մեր երկրում ամենատարբեր շրջաններից նոր ու հին վայրերում բնակություն են հաստատում մարդիկ, որոնք վաղուց արդեն ունեցել են իրենց զբաղմունքն ու էթնիկական բնութագիրը։ Նոր վայրում կյանքի կազմավորումն ընթանում է երկրում իշխող համակեցության օրենքների ու չափանիշների համապատասխան, սակայն նոր զբաղմունքը, գործունեության հիմնական ձևը, որը միշտ հիմնական գործոնն է էթնիկա-*



*կյանքի ձևավորման մեջ, առաջ են բերում նոր երանգներ ու հատկանիշներ։ Այս երևույթն ակներև է մեծ կառույցներում աշխատող, երկրի տարբեր շրջաններից ժամանած մարդկանց շրջանում։ Ստեղծված նոր միջավայրին բնորոշ են դառնում հատկանիշներ, որոնք պայմանավորված են այդտեղ առաջացած փոխհարաբերություններով ու հանրության նորմերով։ Դրանք վարվելակերպի նորմերն են, առանձնահատուկ լեզուն, որը թեպետ և ձևավորվում է բոլորի համար հասկանալի մեկ լեզվի հիմքի վրա (մեր երկրում դա ռուսերենն է), բայց անպայման իր մեջ է ներառնում տարրեր, որոնք բխում են նոր բնակավայրի սոցիալական շատ ուրիշ առանձնահատկություններից և այլն։ Այդ ամենը նորաստեղծ (կամ վերափոխված) սոցիալական միջավայրի էթնիկական բնութագիրն է, որը, ինչպես երևում է շարադրանքից, սոցիալական կյանքում ոչ թե պատահական երևույթ է, այլ ի հայտ է գալիս բնական անհրաժեշտությամբ։*

*Սոցիալական միջավայրի էթնիկական բնութագրի ձևավորումը պայմանավորված է նաև աշխարհագրական միջավայրով, որը հասարակության կենսագործունեության ամենաանհրաժեշտ գործոններից է։ Աշխարհագրական միջավայրը հանդես է գալիս տարբեր կերպ և՛ որպես անմիջական բնապայման (իր կուսական վիճակում), և՛ որպես մարդու աշխատանքով վերափոխված բնություն։*

*Այսպես, հայրենադարձները վերաբնակվելով Հայաստանի տարբեր քաղաքներում ու գյուղերում, ժամանակի ընթացքում անխուսափելիորեն համակերպվում են այդ բնակավայրի կլիմայական պայմաններին, լանդշաֆտի առանձնահատկություններին և այլն։ Դրանց վրա ազդեցություն է գործում ո՛չ միայն տվյալ աշխարհագրական միջավայրի անմշակ, այլև մշակված մասը. հարևան բնակավայրը, որը ևս, ինչպես հայտնի է, աշխարհագրական միջավայրի յուրովի մասն է կազմում։ Այսպիսով, վերաբնակների էթնիկական բնութագիրը ձևավորվում է ելնելով այդ բոլոր նախադրյալներից, ինչպես նաև տվյալ միջավայրի արդեն գոյություն ունեցող էթնիկական-լեզվական առանձնահատկություններից. դրանք նույնպես իրենց վրա կրել են աշխարհագրական միջավայրի ազդեցությունը։*

*Գրականության մեջ երկար ժամանակ աշխարհագրական միջավայրն առավելապես դիտվել է բնության վրա մարդու ներգործության առումով։ Ինչ վերաբերում է բնության հակազդեցությանը մարդու ոչ միայն «արտաքին» գործունեության ու ապրելակերպի, այլ նաև հոգեկան աշխարհի վրա, նման հարցերը բավարար չափով քննության չեն առնվել։*

*Աշխարհագրությունը, որպես գիտություն, ոչ միայն ընդունում է միջավայրի նկատմամբ մարդու ազդեցությունը, այլև չի կարող այդ միջավայրը պատկերացնել առանց մարդու և մարդկային գործունեության։ «Մենք կարծում ենք,— գրում է Վ. Ա. Պուլյարկինը,— որ աշխարհագրական միջավայրի կազմում պետք է մտցվեն հասարակության աշխատանքային գործունեությամբ ստեղծած այն տարրերը, որոնք Կ. Մարքսի խոսքերով՝ «անջատված չեն հողի, բնական միջավայրի հետ ունեցած իրենց անմիջական կապից»[1]։*

*Կոմպլեքսային աշխարհագրությունը ուսումնասիրում է երկրի կեղևի այն շերտը, որը հայտնի է, որպես անտրոպոսֆերա, ուր ընթանում են մարդու կյանքն ու գործունեությունը։ «Անտրոպոսֆերան,— գրում է Բ. Բ. Ռոմոդա-*

---

[1] *Տե՛ս* «Природа и общество», изд. «Наука», М., 1968, стр. 74—75.

նը,— մարդու ամենամեծ բնակարանն է, նրա ամենամեծ բնակավայրը։ Միևնույն ժամանակ դա բնական հարստությունների պահեստն է, վերականգնվելիք ռեսուրսների կենսաբանական վերարտադրության բնական անդաստանը, մարդու ֆաբրիկան, դպրոցը, ստադիոնը, թանգարանը, զբոսայգին, առողջարանը, բուժվելու վայրը, զանազան մթերքների և ծառայությունների շուկան»[1]։ Դեռ ավելին, բուն անտրոպոսֆերան ընդգրկում է մշակութային լանդշաֆտի ոլորտը և իրեն՝ մարդուն։

Միջավայրի ու մարդու փոխհարաբերության ոլորտը բարդ է ու միջնորդավորված։ Միջավայրի առանձնահատկությունները ներազդում են բնակավայրի, ժողովրդի, ազգի էթնիկական նկարագրի վրա։ Աշխատանքի բնույթը, ընտանիքը, կենցաղը, սովորությունները, ավանդույթները զգալի չափով պայմանավորված են հասարակությանը շրջապատող արտաքին (աշխարհագրական) միջավայրով։

Բացի այդ, աշխարհագրական միջավայրը ինչ-որ չափով պայմանավորում է նաև մարդկանց բնորոշ անհատական գծերը։ Պարզ է, իհարկե, որ մարդկանց այդ բնորոշ գծերը, որպես աշխարհագրական միջավայրի ուղղակի ազդեցության արդյունք, չեն դրսևորվում, այլ բեկվում են դրանց անհատական ժառանգական ձիրքերի ու հակումների, ինչպես նաև տվյալ սոցիալական միջավայրում ձեռք բերած հատկանիշների միջով։ Պատահական չէ, որ ազգագրական ուսումնասիրություններում, իբրև կանոն, մեծ տեղ է հատկացվում աշխարհագրական միջավայրի նկարագրությանը։ Այն արվում է ո՛չ միայն հետազոտվող ժողովրդի կամ էթնիկական խմբի գտնվելու վայրը նշելու նպատակով, այլև էթնիկական բնութագրի առանձնահատկությունների ձևավորման պրոցեսում ընդգծելու աշխարհագրական գործոնի նշանակությունը։ Ճապոնիան, օրինակ, գրականության մեջ բնութագրվում է որպես կղզիների պետություն։ Ըստ որում, դա արվում է գլխավորապես էթնիկական հատկանիշների մեջ աշխարհագրական առանձնահատկությունների նշանակությունը ըմբռնելու համար։ Ճապոնիան ուսումնասիրող հեղինակներն ընդգծում են նաև, որ հաճախակի երկրաշարժերն իրենց կնիքն են դնում ճապոնացիների կենցաղի և հոգեբանության վրա։

Մի խոսքով, ազգագրական տեսանկյունից աշխարհագրական միջավայրի էթնիկական նշանակությունը ո՛չ միայն չի ժխտվում, այլ ընդունվում է որպես ակնհայտ իրողություն, քանի որ այն չափազանց ցայտուն է դրսևորվում ժողովուրդների ապրելակերպում, աշխատանքում, հոգևոր արժեքների բնագավառում։ Այսպիսով, տվյալ սոցիալական միջավայրին հատուկ նյութական արտադրության գերիշխող եղանակն ու ճյուղը, ապա նաև նրան շրջապատող բնական (աշխարհագրական) առանձնահատկություններն անվիճելիորեն պայմանավորում են այդ սոցիալական միջավայրի էթնիկական «կերպարը», այսինքն՝ նրա կենցաղային, լեզվական, ազգային-հոգեբանական և մշակութային կարգի այլ և այլ առանձնահատկությունները, դրանով իսկ տարբերելով տվյալ սոցիալական միջավայրը մեկ ուրիշից։

Այս հանգամանքը կարևոր նշանակություն է ձեռք բերում մի այլ հարցի կապակցությամբ, որը, բացի գիտական հետաքրքրությունից, ունի նաև առօրյա պրակտիկ կողմ. խոսքն այն մասին է, թե ներկայումս, երբ արդեն գոյություն ունեն վաղուց ի վեր ձևավորված ժողովուրդներ ու ազգեր, աշխարհագրական միջավայրը և էթնոգենեզի մյուս, վերը հիշատակած գործոնները արդյոք ներգործո՞ւմ են կենցաղի, տնտեսության, հոգևոր ու նյութական մշակույթի և նման այլ երևույթների վրա։ Այլ կերպ ասած, դեռևս տեղի ունենո՞ւմ են էթնիկական պրոցեսներ նաև այժմ, սոցիալական հսկայական տեղաշարժերի ու գիտատեխնիկական աննախընթաց առաջադիմության մեր դարաշրջանում։

1 Նույն տեղը, էջ 101։



Անկասկած, էթնիկական պրոցեսներ տեղի են ունենում նաև մեր օրերում։ Վերջերս լույս տեսած «Ազգագրության հիմունքներում» ազգագրական գիտության խնդիրները սահմանելիս, նշվեց ժամանակակից էթնիկական պրոցեսների հետ կապված պրոբլեմների ուսումնասիրության անհրաժեշտությունը։ Այդ պրոցեսները միանգամայն իրավացիորեն կապվում են ողջ աշխարհում այժմ տեղի ունեցող սոցիալ-տնտեսական և քաղաքական տեղաշարժերի հետ։ Սակայն այստեղ խոսք չկա այդ պրոցեսներում աշխարհագրական միջավայրի դերի մասին, բացի այդ, բոլոր էթնիկական պրոցեսներից հատկապես կարևոր է համարվում ազգային կոնսոլիդացիայի, էթնիկական հանրությունների ամրապնդման, նոր խոշոր ազգերի աստիճանական գոյացման պրոցեսը ի հաշիվ փոքրերի։ Նման դատողությունները կարող են հանգեցնել այն թյուր եզրակացության, թե ժամանակակից էթնիկական պրոցեսները, լինելով միայն սոցիալ-տնտեսական և քաղաքական տեղաշարժերի արդյունք, և ընթանալով փոքր ազգերից նոր՝ մեծ ազգեր առաջանալու ձևով, աստիճանաբար պետք է նվազեն և ապա ամենևին դադարեն։ Դժվար թե նման հետևությունը կարելի է գիտականորեն հիմնավորված, հետևապես նաև ընդունելի համարել։ Ինչ-որ չափով դրա հետ առնչվում է ժամանակակից բուրժուական ազգագրագետների այն կարծիքը, թե էթնոգրաֆիայի խնդիրն է ուսումնասիրել Ավստրալիայի, Աֆրիկայի, Ամերիկայի և այլ մայրցամաքների կուլտուրապես հետամնաց ժողովուրդներին, իսկ առաջավոր, բարձր կուլտուրայի ժողովուրդները, իբր, էթնոգրաֆիական ուսումնասիրության ենթակա չեն։ Այստեղ էլ, ինչպես տեսնում ենք, էթնիկականը վերջավոր, ինքն իրեն սպառող փաստ է համարվում, համենայն դեպս, մարդկանց որոշակի խմբի մոտ («բարձր կուլտուրայի ժողովուրդներ»), ըստ այս տեսության, բացառվում է էթնիկական բնութագիրը։ Դրանցից քիչ է տարբերվում մեկ այլ կարծիք, որի համաձայն ազգագրագետին պետք է հետաքրքրի ամեն մի ժողովրդի «ավելի հետամնաց մասը՝ գյուղացիությունը, իսկ քաղաքային կուլտուրան իբր գտնվում է նրա հետաքրքրության շրջանակներից դուրս»[1]։ Հարկ է նկատել, որ այս տեսակետները դեռ պատշաճ քննադատության չեն ենթարկվել սովետական գիտական շրջաններում։ Այս տեսակետներից անընդունելի է նախ այն, որ էթնիկական պրոցեսները պայմանավորված են համարվում միայն սոցիալ-տնտեսական ու քաղաքական տեղաշարժերով, թեև ճիշտ է, որ այդ տեղաշարժերը այժմ ամենաբնորոշն են էթնիկական պրոցեսների համար։

Սակայն չպետք է մոռանալ, որ մարդկության ընդհանուր զարգացման ընթացքը մեզ հիմքեր չի տալիս եզրակացնելու, թե մոտավոր ապագայի հասարակությունը բոլորովին զերծ կլինի էթնիկական պրոցեսների առկայությունից։ Անկասկած է, որ հասարակության վերընթացը դեռևս շատ երկար ժամանակ կպահպանի էթնիկական իր հատկանիշները։

Միանգամայն անվիճելի է, որ ներկայումս տեղի ունեն կոնսոլիդացիայի, ժողովուրդների ու մշակույթների մերձեցման, փոխադարձ ակտիվ ներգործության պրոցեսներ։ Ի դեպ, բոլոր ժողովուրդների կյանքն ու պատմու-

1 Տե՛ս **Основы этнографии**, изд. «Высшая школа», М., 1968, стр. 5.

թյունը միանգամայն անըմբռնելի կլինի, եթե հաշվի չառնվեն այն ազդեցությունների ու փոխներգործությունը, մերձեցումը (ինչպես նաև թշնամանալը), բռնի ու ոչ բռնի ասիմիլյացիան, որոնք այս կամ այն չափով տեղի ունեն այժմ և տեղի են ունեցել անցյալում։

Սակայն դրա կողքին, և պատմական նույնպիսի անհրաժեշտությամբ, տեղի են ունեցել և այժմ տեղի ունեն ժողովուրդների (երբեմն նույնիսկ միատարր համարվող ժողովուրդների) տարրաբաժանման ու ազգային-էթնիկական հատկանիշների բյուրեղացման պրոցեսներ։ Դրա անվիճելի ապացույցը կարող են համարվել «բարձր կուլտուրայի» և վաղուց ձևավորված ազգային-էթնիկական իր «դեմքն» ունեցող այնպիսի երկրներ, ինչպիսիք են Անգլիան ու Իռլանդիան, Բելգիան, Կանադան և այլն, ուր ներկա ժամանակաշրջանում տեղի ունեն էթնիկական ակտիվ դիֆերենցման պրոցեսներ։ Ճիշտ է, հիշյալ երկրներում էթնիկական դիֆերենցման ու ազգային հատկանիշների բյուրեղացման պրոցեսները զուգակցվում են նեգատիվ սոցիալական երևույթների հետ ընդհուպ մինչև ռազմական ընդհարումը, բայց դա արդյունք է սոցիալ-քաղաքական այն հարաբերությունների, որոնք իշխում են այդ երկրներում, այսինքն՝ կապիտալիզմի։ Այլ կերպ ասած, բոլոր դեպքերում չէ, որ էթնիկական դիֆերենցումը, ազգային հատկանիշների բյուրեղացման պրոցեսները խորթացում են առաջ բերում ժողովուրդների միջև։ Դեռ ավելին, սոցիալիզմի օրոք այդպիսի պրոցեսները, փաստորեն պայման են հանդիսանում ազգերի մերձեցման, փոխադարձ ներգործության ու մշակույթների հարստացման համար։

Այս բոլորն ավելի ևս ակտուալ են դարձնում գիտաազգագրական համակողմանի հետազոտություններն ու այդ բնագավառում գոյություն ունեցող վաղուց արմատացած թերությունների վերհանումը։

Այսպես, հայտնի է, որ առաջին ազգագրական գիտելիքները դեռ շատ վաղ շրջանում (Հունաստանում, Հռոմում) սկսեցին ձեռք բերվել այսպես կոչված՝ զարգացած ժողովուրդների ջանքերով, և ոչ այն ժողովուրդների, որոնք գտնվում էին օտարերկրյա լծի տակ։ Նոր շրջանում կապիտալիզմի գաղութատիրական քաղաքականությունը նույնպես յուրովի նպաստեց ազգագրության զարգացմանը, սակայն այդ ձևով ձեռք բերված ազգագրական նյութի վրա հիմնված հետևությունների ու տեսությունները գլխավորապես ծառայում էին գաղութատիրության թեորիական հիմնավորմանը։ Այդ առումով հատկապես ուշագրավ է Բրոնիսլավ Մալինովսկու և Ռադկլիֆ Բրաունի, այսպես կոչված՝ ֆունկցիոնալ ուղղությունը, որն առաջ է եկել առաջին համաշխարհային պատերազմից հետո և դարձել բրիտանական իմպերիալիզմի գաղութատիրության հիմնավորումը։ Այդ և նման տեսությունների անկյունաքարն էր գաղութատիրության պաշտպանությունը։

Ճիշտ է, կան պատմականորեն օբյեկտիվ գործոններ, որոնք վկայում են ժամանակի առումով այս կամ այն ժողովրդի հոգևոր կամ նյութական կարողությունների որևէ կողմի ակնհայտ դրսևորումը և առավելությունը մյուս ժողովուրդների համեմատությամբ։ Սակայն դա բնավ չի խոսում այն մասին, որ մյուս ազգերն ի վիճակի չեն հավասարվել առաջադիմությունը գլխավորող ժողովուրդներին։ Խիստ կարևոր է հաշվի առնել նաև այն, որ տվյալ սոցիալական միջավայրում առաջացած սեփական մշակույթը դարերի ընթացքում ընդունում է առանձնահատուկ ազգային երանգ, իր ոճն ու ձևը և այն գնահատելիս պետք է ելնել գլխավորապես առաջավոր գիտության սահմանած չափանիշներից։

Այս տեսակետից խիստ կարևոր նշանակություն է ձեռք բերում սովետական ազգագրության հարցադրումը՝ առանձին երկրների, ամբողջ աշխարհի բնակչության էթնիկական կազմի, էթնոգենեզի և ազգագրական պատմության պրոբլեմների ուսումնասիրության հրամայական անհրաժեշտության մասին։

Ազգային մշակույթը, ազգային-էթնիկական առանձնահատկությունների ամբողջությունը տվյալ ժողովրդի համար սեփական կենսագործունեության կողմնակի ու մեռյալ արդյունք չէ, այլ կենդանի գործոն, ռեալ իրողություն և ամեն պատմական-կոնկրետ իրողության մեջ ընթանում է այն ձևերով ու ուղիներով, որոնք օբյեկտիվորեն բխում են այդ իրողությունից։

Սոցիալիզմի կառուցման պրակտիկան ցույց է տալիս, որ համամարդկային կուլտուրայի վերելքը հնարավոր է միայն ազգային կուլտուրաների զարգացմամբ։ Հենց այդ հողի վրա են դրսևորվում ժողովուրդների մերձեցման առավել արդյունավետ ուղիները, իրագործվում նրանց մշակույթների փոխադարձ ներթափանցումն ու հարստացումը։ Այդ են վկայում Սովետական Միության ժողովուրդների ծաղկումն ու բարգավաճումը։

Շնորհիվ բնական-աշխարհագրական պայմանների բազմազանության, իսկ հետագայում նաև մարդկանց կյանքի հասարակական կազմակերպման առանձնահատկությունների, մարդկությունը, սկզբից ևեթ, իբրև այդպիսին, ձևավորվել է՝ բաժանված լինելով փոքր ու մեծ էթնիկական խմբերի։ Էթնիկական բնութագիրը, մարդկության զարգացման տարբեր էտապներում դրսևորվելով տարբեր ձևերով, հանդիսացել է սոցիալական միջավայրի բնորոշ հատկանիշներից մեկը։ Սոցիալական մյուս գործոնների առկայության դեպքում որքան ավելի երկարատև ու պատմությամբ հարուստ է դառնում էթնիկական այս կամ այն ճյուղը, այնքան ավելի կենսունակ է դառնում նրա մշակույթը, ավելի զգալի ազդեցություն գործելով ամեն մի նոր սերնդի վրա։ Սոցիալիստական հասարակարգում էթնիկական ճյուղերը հանդես են գալիս որպես միևնույն սոցիալական օրգանիզմի հարազատ տարրեր։ Մեր երկրի ժողովուրդներն այժմ ապրում են իրենց էթնիկական լինելության և ներհատուկ կարողությունների ամենաակտիվ դրսևորման ժամանակաշրջանը։

Սակայն դա մեր երկրում էթնիկական պրոցեսների զարգացման միակ ուղղությունը չէ։ Սովետական ժողովուրդների միջև հաստատված աննախադեպ ակտիվ հաղորդակցման ու նրանց մշակույթների տարրերի փոխներգործության շնորհիվ ծագել ու զարգացել է մեր ողջ երկրի միասնական մշակույթը, մի բան, որ բացարձակապես աներևակայելի էր անցյալում։ Այդ համընդհանուր մշակույթի հիմքն է կազմում երկրի միասնական ու հարատև զարգացող էկոնոմիկան, որը բնավ չի կորցրել աշխարհագրական ու այլ հանգամանքներով պայմանավորված տեղական առանձնահատկությունները։

Այս բոլորից ելնելով, կարելի է պնդել, որ ազգային-էթնիկական պրոբլեմների լուծման սոցիալիստական պրակտիկան նոր հասարակարգի սոցիալական առավելությունների անվիճելի վկայություններից է, և ապացուցում է, որ իր որոշակի առումներով կարող է նախատիպ ծառայել առհասարակ էթնիկական պրոցեսների զարգացման համար։




## ՏԱՋԻԿՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՔԱՂՈՒՍՈՒՑՄԱՆ ՈՒՍԱՆԵԼԻ ՕՐԻՆԱԿԸ

Գաղափարական աշխատանքի հիմքը կոմունիստների կողմից մարքսիզմ-լենինիզմի տիրապետումն է, նրա պատշաճ պրոպագանդումը աշխատավորության լայն մասսաների շրջանում։ Տաջիկստանի կոմկուսի Կենտկոմը, հանրապետության կուսկազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում այդ աշխատանքին։

Կոմունիստների գաղափարական կոփման վրա մեծ ազդեցություն գործեցին ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակին նախապատրաստվելու մասին» և «ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների կատարման ասպարեզում Տաջիկստանի կոմկուսակցության Կենտկոմի կատարած աշխատանքի մասին» որոշումները։

Անցած ուսումնական տարիներին հանրապետության մարքս-լենինյան կրթության սիստեմում ընդգրկված էին կոմունիստների ավելի քան 75 տոկոսը, մեծ թվով կոմերիտականներ և անկուսակցական ակտիվիստներ։ Գործում էին մարքսիզմ-լենինիզմի երկու երեկոյան համալսարան, կուսակցական-տնտեսական ակտիվի քաղաքային ու շրջանային 46 դպրոց, տեսական, պրոբլեմային և մեթոդոլոգիական 798 սեմինար, մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ուսումնասիրող 1778 դպրոց, 1002 տարրական քաղդպրոց։ Ավելի քան 10 հազար կոմունիստներ հեղափոխական տեսությանը տիրապետում էին ինքնակրթությամբ։

Մեզ մոտ ուսումնական տարվա սկզբին նախորդում է մանրակրկիտ նախապատրաստումը։ Որոշվում է ունկնդիրների կազմը կուսակցական ուսուցման յուրաքանչյուր օղակում։ Ընտրվում և հաստատվում են պրոպագանդիստները, կոնսուլտանտները, քաղաքական լուսավորության կաբինետների մեթոդական խորհուրդները, քաղաքային ու շրջանային պրոպագանդիստական սեմինարների ղեկավարները։ Ամառային շրջանում քաղաքական լուսավորության տանը կազմակերպվում են մեթոդական խորհուրդների նախագահների, պրոպագանդիստների, սեմինարների ղեկավարների, կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցների դասատուների հնգօրյա, իսկ քաղկոմներում ու շրջկոմներում՝ պրոպագանդիստների եռօրյա սեմինարներ։ Միջոցներ են ձեռնարկվում պրոպագանդիստներին և ունկնդիրներին ուսումնական գրականությամբ ու ձեռնարկներով ապահովելու համար։

Անցած ուսումնական տարիներին մեծ ուշադրություն է նվիրվել կուսակցական ուսուցման տարրական օղակի աշխատանքին։ Բանն այն է, որ հանրապետության որոշ գյուղական շրջաններում ցածր հանրակրթական պատրաստականություն ունեցող կոմունիստները կազմում են կուսակցության անդամ-թեկնածուների մոտ 40 տոկոսը։ Նրանց զգալի մասը, երեք տարի պարապելով քաղդպրոցներում, բավականաչափ պատրաստված չէ մարքսիզմ-լենինիզմի հիմունքները միջին օղակում խոր կերպով յուրացնելու համար։ Հարկ եղավ մտցնել ուսուցման լրացուցիչ, անցողիկ ձև, որը մեզ մոտ կոչվում է բարձր տիպի տարրական քաղդպրոց։ Քաղլուստունը մշակեց երկամյա հատուկ ծրագիր՝ «Կուսակցության վերաբերյալ լենինյան ուսմունքի հիմունքները և նրա հետագա զարգացումը ՍՄԿԿ փաստաթղթերում»։ Աշխատանքի մեկ տարվա փորձը և ամփոփիչ պարապմունքները հաստատեցին այդպիսի որոշման ճշտությունը։ Ունկնդիրները ձեռք բերեցին կուսակցական փաստաթղթերի, Վ. Ի. Լենինի փոքրածավալ երկերի ուսումնասիրության վրա կատարած ինքնուրույն աշխատանքի փորձ, ծանոթացան կուսակցության վերաբերյալ լենինյան ուսմունքի հանգուցային հարցերին, ՍՄԿԿ գործունեության հիմնական պատմական էտապներին։ Կոմունիստներից շատերը՝ այդ դպրոցների ունկընդիրները, ուսումնական տարվա արդյունքները քննարկող կուսակցական ժողովներում նշում էին, որ կուսակցության վերաբերյալ լենինյան ուսմունքի ուսումնասիրությունն օգնել է իրենց առավել խոր յուրացնելու ՍՄԿԿ կանոնադրության դրույթները, մասսայական-քաղաքական ավելի հաջող աշխատանք կատարելու Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստման և անցկացման կապակցությամբ։

Բեղմնավոր աշխատանք կատարեց Վախշի շրջանի «Կոմունիզմ» կոլտնտեսության կուսկազմակերպության բարձր տիպի տարրական քաղդպրոցը (պրոպագանդիստ՝ Մախմուդ Վահիդով)։ Խմբակում սովորում էին 13 կոմունիստ և 5 կոմերիտական։ Պարապմունքներն անց էին կացվում ամսական երեք անգամ։ Տարվա ընթացքում ունկնդիրներն ուսումնասիրեցին երեք թեմա՝ Վ. Ի. Լենինը որպես նոր տիպի հեղափոխական կուսակցության ստեղծող, ՍՄԿԿ գործունեության պատմական էտապները. կուսակցության երեք ծրագիրը, լենինյան կազմակերպական սկզբունքները և կուսակցական կյանքի լենինյան նորմերը, դրանց հետագա զարգացումը ՍՄԿԿ ծրագրում և XXIII համագումարի որոշումներում։ Ուսման պրոցեսում ունկնդիրներն ուսումնասիրում էին ո՛չ միայն ուսումնական պլանով հանձնարարվող գրականությունը, այլև կուսկազմակերպության գործունեության տարբեր կողմերը, պրոպագանդիստի ներկայությամբ զրույցներ էին ունենում կոլտնտեսականների հետ։ Ամփոփիչ պարապմունքները ցույց տվեցին, որ դպրոցի ունկնդիրները ձեռք են բերում մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ապագայում խոր ուսումնասիրելու անհրաժեշտ բազա և մարդկանց հետ քաղաքական աշխատանք կատարելու որոշ ունակություններ։

Հանրապետության կուսակցական ուսուցման սիստեմում տեսական մեծ կշիռ ունի միջին օղակը՝ մարքսիզմ-լենինիզմի հիմունքների ուսումնասիրման դպրոցները, որոնցում ընդգրկված էր կոմունիստների մոտ 50 տոկոսը։ Այդ դպրոցների աշխատանքում գլխավորը ծրագրային նյութի ուսումնասիրումն էր՝ սկզբնաղբյուրների, հատկապես, Վ. Ի. Լենինի աշխատությունների օգտա-

գործմամբ, ինքնակրթության, ինչպես նաև մասսաների մեջ քաղաքական աշխատանք կատարելու ունակությունների ամրապնդումն ու զարգացումը։ Գերակշռում էին ուսուցման ակտիվ մեթոդները։ Պրոպագանդիստների մեծ մասի աշխատանքում տեսական դասախոսությունները զուգակցվում էին ունկնդիրների ինքնուրույն աշխատանքի և սեմինար պարապմունքների հետ։ Որպես օրինակ, կարելի է բերել Փենջիքենդ քաղաքի Մարգիդար սովխոզի կազմակերպության մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ուսումնասիրող դպրոցի աշխատանքի փորձը (ՍՄԿԿ պատմության պրոպագանդիստ, սովխոզի կուսկոմիտեի քարտուղար՝ Սերոժիդին Օդինաև)։ Դպրոցի ունկնդիրներն են երկու տարի առաջ տարրական քաղդպրոցն ավարտած բրիգադավարներ ու մեխանիզատորներ, որոնք գրեթե բոլորն էլ ագիտատորներ են։ Յուրաքանչյուր թեմայի վերաբերյալ ընկ. Օդինաևը կարդում է տեսական դասախոսություն, առաջադրանք է տալիս ուսումնասիրել ուսումնական պլանով հանձնարարված գրականությունը, առանձին ընկերների հանձնարարում է լրացուցիչ ուսումնասիրել Վ. Ի. Լենինի այս կամ այն աշխատությունը, կուսակցական այս կամ այն փաստաթուղթը, կարդալ Տաջիկստանի կոմկուսակցության պատմության վերաբերյալ այս կամ այն գրքույկը, ռեֆերատ գրել և հաղորդում անել սեմինար պարապմունքի ժամանակ։ Եթե թեման թույլ է տալիս, նա առանձին կոմունիստների հանձնարարում է ուսումնասիրել կուսկազմակերպության գործունեության այս կամ այն կողմը։ Պարապմունքների միջև ընկած ժամանակամիջոցում պրոպագանդիստը հաճախ հանդիպում է ունկնդիրներին և նրանց օգնում ավելի լավ կատարելու տրված առաջադրանքը։ Նրանց գրած ռեֆերատները և հանձնարարությունների կատարումը մեծ աշխուժություն են մտցնում սեմինար պարապմունքներում՝ հաճախ առաջ բերելով բանավեճ։ ՍՄԿԿ պատմության գրեթե յուրաքանչյուր թեմայի մեջ ընկ. Օդինաևը գտնում է անկուսակցական ընկերներին հետաքրքրող հարցեր և ունկնդիրներին առաջարկում դրանց վերաբերյալ զրույցներ անցկացնել բրիգադներում։ Նա անձամբ ներկա է լինում այդ զրույցներից շատերին, իսկ այնուհետև դպրոցում կազմակերպում դրանց քննարկումը։ Աշխատանքի այդ սիստեմն առաջ է բերում ունկնդիրների նպատակասլաց հետաքրքրությունը յուրաքանչյուր թեմայի նկատմամբ։ Իսկ դա կարևոր նշանակություն ունի նյութն ակտիվորեն ընկալելու և գիտակցաբար յուրացնելու համար։ Ամփոփիչ պարապմունքների ժամանակ ունկնդիրները դրսևորեցին խոր գիտելիքներ և դրանից օգտվելու ունակություն։

Կուսկազմակերպությունները հատուկ ուշադրություն են նվիրում կոմունիստների մարքս-լենինյան ուսուցման բարձրագույն օղակին։ Եվ դա հասկանալի է։ Այդտեղ են պատրաստվում դասախոսների, պրոպագանդիստների և քաղինֆորմատորների հիմնական կադրերը, այդտեղ են իրենց գաղափարական-տեսական մտահորիզոնն ընդլայնում ղեկավար կադրերը։ Մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանների ունկնդիրների 65 տոկոսը պարապում է այն ֆակուլտետներում, որոնք պրոպագանդիստներ ու քաղինֆորմատորներ են պատրաստում։ Կուսակցական-տնտեսական ակտիվի բոլոր դպրոցներն ունեն պրոպագանդիստական թեքում։ Դրանցում, հիմնական առարկաներից զատ, ուսումնասիրվում է կուսակցական պրոպագանդայի և քաղաքական ինֆորմացիայի մեթոդիկան։ Տեսական շատ սեմինարների աշխատանքը կառուցվում է գործնական նպատակահարմարության սկզբունքով։ Օրինակ, կուսակցության Ջկալովի քաղկոմին առընթեր աշխատում էին չորս տեսական սեմի-



նարներ՝ նվիրված ներքաղաքական ու էկոնոմիկայի պրոբլեմներին, երկրի կուլտուրական կյանքի և ՍՍՀՄ միջազգային դրության հարցերին։ Սեմինարներում պարապում են այդ ասպարեզում մասնագիտացած դասախոսներ ու քաղինֆորմատորներ։

Բարձրագույն օղակի ունկնդիրների կեսից ավելին ուսումնասիրում էր լենինյան գաղափարական ժառանգությունը։ Մինչև նոր ուսումնական տարվա սկիզբը քաղաքական լուսավորության տունը մշակեց «Լենինյան տեսական ժառանգությունը և արդիականությունը» հատուկ ծրագիրը՝ պատմական, տնտեսագիտական և փիլիսոփայական բաժիններով։ Երկրորդ տարին այդ ծրագրով գործեց հանրապետության ղեկավար աշխատողների՝ Տաջիկստանի կոմկուսի Կենտկոմին առընթեր սեմինարը։ Սեմինարի ունկնդիրների համար սահմանված են խիստ կանոններ. նրանք պարտավոր են ներկա լինել դասախոսություններին, պարապմունքների ժամանակ ակտիվորեն մասնակցել ուսումնասիրվող նյութի քննարկմանը, Կենտկոմի դասախոսական խմբի ուղեգրերով աշխատավորության առաջ հանդես գալ լենինյան թեմաների վերաբերյալ զեկուցումներով, ուսումնասիրել գաղափարական աշխատանքի վիճակը սկզբնական կուսկազմակերպություններում։

Համանման սեմինարներ էին գործում կուսակցության քաղկոմ-շրջկոմներին կից և շատ խոշոր կուսկազմակերպություններում։ Միայն Դուշամբե քաղաքում գործում էր լենինյան գաղափարական ժառանգությունը և աշխատանքի լենինյան ոճն ուսումնասիրող 178 սեմինար։

Քաղաքական լուսավորության տներն ու կաբինետները մեծ օգնություն էին ցույց տալիս կոնսուլտանտներին, քաղաքական ինքնակրթությամբ զբաղվողներին, նրանց համար կազմակերպում էին դասախոսությունների ցիկլեր, կոնսուլտացիաներ, զրույցներ ու տեսական կոնֆերանսներ։ Անհատական պլաններով ուսուցման գնահատականի հիմնական չափանիշը կոմունիստների մասնակցությունն է գործնական աշխատանքին, քանի որ նրանց 70 տոկոսն աշխատում է որպես դասախոսներ, պրոպագանդիստներ, քաղինֆորմատորներ և այլն։ Քաղաքական ինքնակրթությամբ զբաղվող կոմունիստների համար հանրապետական քաղլուստանը կազմակերպվել են տեսական կոնֆերանսներ՝ նոր տնտեսական ռեֆորմը լենինյան տնտեսավարման սկզբունքների կենսագործումն է, Վ. Ի. Լենինը աշխատանքի գիտական կազմակերպման մասին, լենինյան ուսմունքը իմպերիալիզմի մասին և արդի իմպերիալիզմը, գաղափարների պայքարում կոմպրոմիս չկա, Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատությունը և արդի բնագիտությունը, կուսակցության վերաբերյալ լենինյան ուսմունքը և նրա հետագա զարգացումը ՍՄԿԿ փաստաթղթերում թեմաներով։

Հանրապետությունում խիստ ուշագրավ է կոմունիստների մարքս-լենինյան կրթության վիճակը Նուրեկի հիդրոէլեկտրակայանի շինարարների երիտասարդ քաղաքում՝ Նուրեկում։ Այստեղ կոմունիստների 97 տոկոսն ընդգրկված է քաղաքական և հանրակրթական ուսուցման տարբեր ձևերում։ Քաղաքում գործում է մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանի ֆիլիալ, որի պրոպագանդիստական ֆակուլտետն ամեն տարի ավարտում է 30—35 մարդ։ Ղեկավար կադրերի համար կուսակցության քաղկոմին առընթեր գործում է սեմինար, որի ունկնդիրների թվում են կուսակցության քաղկոմի, քաղսովետի գործկոմի, շինարարական վարչությունների և ձեռնարկությունների 80 ղեկավար աշխատողներ։ Քաղաքում գործում են լենինյան տեսական ժառանգու-

թյունն ուսումնասիրող 6 սեմինար, մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ուսումնասիրող 26 դպրոց, 3 տարրական քաղդպրոց։ 80 կոմունիստներ անհատական պլաններով մարքսիզմ-լենինիզմն ուսումնասիրում են ինքնակրթության մեթոդով։ Տեսական բոլոր սեմինարների աշխատանքի հիմքում դրված է Վ. Ի. Լենինի երկերի և կուսակցական փաստաթղթերի ուսումնասիրությունը՝ ըստ ընտրած պրոբլեմների։ Աշխատանքի լենինյան ոճի սեմինարում ուսումնասիրվել են չորս պրոբլեմներ՝ տնտեսական գործունեության զուգակցումը մասսաների մեջ կատարվող քաղաքական աշխատանքի հետ, քննադատությունն ու ինքնաքննադատությունը որպես ղեկավար կադրերի կոփման կարևորագույն միջոց, ղեկավարների դերը մասսաների ստեղծագործական ակտիվությունն ու նախաձեռնությունը զարգացնելու գործում, լենինաբար ընտրել և դաստիարակել կադրերին։ Յուրաքանչյուր պրոբլեմի շուրջ կարդացվել են դասախոսություններ, տրվել հանձնարարված գրականության տեսությունը և ռեֆերատների թեմատիկան։ Մեկուկես-երկու ամսվա ինքնուրույն աշխատանքից հետո սեմինարի մասնակիցները հավաքվել են կոլեկտիվ քննարկման։ Յուրաքանչյուր պարապմունքի ժամանակ երկու-երեք ընկեր հանդես են եկել ռեֆերատներով, իսկ մյուսները ակտիվորեն մասնակցել դրանց քննարկմանը։ Սեմինարը ղեկավարել և քննարկումների արդյունքներն ուսումնասիրել է կուսակցության քաղկոմի առաջին քարտուղար Պ. Գորբաչյովը։ Եզրափակիչ պարապմունքում շատ ընկերներ նշում էին, որ սեմինարը մեծապես օգնել է իրենց գործնական աշխատանքին։ Երեք սեմինարում մասնագետ-շինարարներն ուսումնասիրել են Վ. Ի. Լենինի տեսական ուսմունքը, երկուսում՝ լենինյան փիլիսոփայությունը, մեկում՝ Վ. Ի. Լենինի աթեիստական ժառանգությունը։

Կոմունիստների 60 տոկոսը սովորել է մարքսիզմ-լենինիզմի դպրոցներում, նրանց կեսն ավարտել է ՍՄԿԿ պատմության, փիլիսոփայության և քաղաքատնտեսության հիմունքների ուսումնասիրությունը։ Գաղափարական ու մեթոդական բարձր մակարդակով էին անցնում մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ուսումնասիրող դպրոցների պարապմունքները, որոնք ղեկավարում էին ՀԷԿ-ի շինվարչության պետի տեղակալ Ա. Սավչենկովը, հողաժայռային աշխատանքների շինվարչության պետի տեղակալ Յա. Միրֆազիլովը, ՀԷԿ-ի շենքի կառուցման գլխավոր ինժեներ Ի. Վասիլևը, երկաթ-բետոնե առարկաների գործարանի դիրեկտոր Զ. Շիյանովը, դպրոցի դիրեկտոր Ֆ. Աբդուլաևը։ Նրանք կարողանում են հրապուրել ունկնդիրներին, հետաքրքրություն արթնացնել դեպի քաղաքական գիտելիքները, Վ. Ի. Լենինի աշխատությունները, դասախոսություններում և սեմինար պարապմունքներում ապահովել տեսության ու պրակտիկայի օրգանական կապը, կիրառել տեսողական ու լսողական դիտողական միջոցներ, օգնել ունկնդիրներին՝ յուրացնելու մարքսիզմ-լենինիզմը ո՛չ թե որպես քարացած դոգմա, այլ որպես գործողության ուղեցույց։ Այդ դպրոցների գրեթե բոլոր ունկնդիրներն էլ հասարակական-քաղաքական ակտիվ աշխատանք են կատարում, կուսբյուրոյի անդամներ են, արհմիութենական ակտիվիստներ, քաղինֆորմատորներ կամ ագիտատորներ։ Ընկեր Սավչենկոն արդեն վեց տարի է, ինչ աշխատում է որպես պրոպագանդիստ։ Այդ ժամանակամիջոցում նրա ունկնդիրներից յոթն անցել են կուսակցության շարքերը, երեքը դարձել կուսկազմակերպությունների քարտուղարներ, հինգը՝ պրոպագանդիստներ։ Պրոպագանդիստական ակտիվ աշխատանքի



համար Սավչենկոն պարգևատրված է Տաջիկական ՍՍՀ Գերագույն սովետի պատվոգրով և Տաջիկստանի կոմկուսի Կենտկոմի գովասանագրով։

Ամփոփիչ պարապմունքները, սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության վերլուծությունը ցույց են տալիս, որ Նուրեկի քաղաքային կուսկազմակերպությունում քաղաքական ուսուցումը մեծապես նպաստում է կոմունիստների գաղափարական մակարդակի և սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացմանը։

Կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների կողմից կոմունիստների մարքս-լենինյան կրթությունը ղեկավարելու գործում գլխավորն այն է, որ նրանք գործնական օգնություն են ցույց տալիս պրոպագանդիստներին, բարձրացնում կոմունիստների պատասխանատվությունը՝ իրենց գաղափարական-տեսական աճի համար։ Կուսակցական ուսուցման սիստեմի պրոպագանդիստներին, ունկնդիրներին տեսական և մեթոդական օգնություն են ցույց տալիս քաղաքական լուսավորության տներն ու կաբինետները։ Հանրապետությունում գործում են քաղաքական լուսավորության 2 տուն, 58 հաստիքային և 280 արտահաստիքային կաբինետներ։ Դրանցից յուրաքանչյուրն ունի մեթոդական խորհուրդ, որի անդամները կազմակերպում են կոնսուլտացիաներ, մշակում մեթոդական խորհուրդներ ու հանձնարարականներ, ուսումնասիրում և ընդհանրացնում կուսուսուցման սիստեմի տարբեր օղակների աշխատանքի փորձը, պարբերաբար ներկա լինում քաղդպրոցների ու սեմինարների պարապմունքներին, կազմակերպում պրոպագանդիստների փոխադարձ հաճախումներ միմյանց պարապմունքներին։

Քաղդպրոցների և սեմինարների աշխատանքը վերահսկելու նպատակով կուսակցության շատ քաղկոմներ ու շրջկոմներ իրենց անդամներին և ապարատի աշխատողներին ամբողջ ուսումնական տարվա ընթացքում ամրացնում են նրանց։ Մարքս-լենինյան կրթության հարցերը պարբերաբար քննարկվում են կուսակցական կոմիտեների պլենումների և բյուրոների նիստերում։ Տաջիկստանի կոմկուսի Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը և քաղաքական լուսավորության տունը անցած ուսումնական տարում ուսումնասիրել են 13 քաղաքների ու շրջանների ղեկավար կադրերի մարքս-լենինյան կրթության փորձը, 28 գիտական, նախագծային ու կոնստրուկտորական կազմակերպությունների գիտական ու գիտատեխնիկական ինտելիգենցիայի գաղափարական-քաղաքական դաստիարակության վիճակը։ Այժմ կուսակցական բոլոր կոմիտեներում վերականգնված է սիստեմատիկորեն, ինչպես նաև աշխատանքի ուղարկելիս կոմունիստների հետ տեսական զրույցներ անցկացնելու պրակտիկան։

Հանրապետության կուսկազմակերպությունում աշխատում են 7 հազար պրոպագանդիստներ, որոնց 80 տոկոսն ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն, 20 տոկոսը կուսակցական, սովետական, արհմիութենական և տնտեսական ղեկավար կադրեր են։ Պրոպագանդիստներ են պատրաստվում մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանի պրոպագանդիստական ֆակուլտետներում, կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցներում, բուհերի հասարակագիտական ֆակուլտետներում, քաղաքական լուսավորության տներին առընթեր դասընթացներում։ Հանրապետության երեք քաղաքներում գործում են պրոպագանդիստների երկամյա հեռակա դպրոցներ։ Դրանց ունկնդիրներն ամեն ամիս մեկ օրով գալիս են սեմինար պարապմունքի, լսում համապատասխան դասախոսություններ։

Քաղաքական լուսավորության տներում պրոպագանդիստներն անցնում են միամսյա պատրաստություն։ 1965—1966 թթ. այդպիսի պատրաստություն են անցել ՍՄԿԿ պատմության 600, 1967—1968 թթ.՝ փիլիսոփայության և քաղաքատնտեսության 1300 պրոպագանդիստ։ Անցած ուսումնական տարում պատրաստվեցին գիտական կոմունիզմի հիմունքների պրոպագանդիստներ։ Քաղաքական լուսավորության տանը ամեն տարի վերապատրաստվում են պրոպագանդիստական սեմինարների ղեկավարները, մեթոդական խորհուրդների նախագահները և կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցների դասատուները։ Տարեկան 2—3 անգամ քաղլուսկաբինետների վարիչների և կուսակցական գրադարանների գրադարանավարների համար կազմակերպվում են սեմինարներ։

Կուսակցության բոլոր քաղկոմներում ու շրջկոմներում կարգավորված է պրոպագանդիստների մշտապես գործող սեմինարների աշխատանքը, ամեն ամիս անց է կացվում Տաջիկստանի կոմկուսի Կենտկոմի հաստատած «Պրոպագանդիստի օրը»։ Դասընթացներում և սեմինարներում պրոպագանդիստներն ստանում են ո՛չ միայն տեսական պատրաստություն, այլև նրանց համար կազմակերպվում են կուսակցական պրոպագանդայի մեթոդիկայի, մանկավարժության, հոգեբանության և տրամաբանության վերաբերյալ դասախոսություններ և սեմինարներ։ 1968 թվականին անցկացվեց հանրապետական երկրորդ մեթոդական կոնֆերանսը, որի նյութերի հիման վրա անցած ուսումնական տարում լույս ընծայվեց «Պրոպագանդիստական վարպետության ուղին» ժողովածուն։ Քաղաքական լուսավորության տունը մշակում և կաբինետներին է ուղարկում մեթոդական զանազան նյութեր, մեթոդիկայի, մարքսիզմ-լենինիզմի տեսության առանձին թեմաների, քաղդպրոցների ու սեմինարների առավել հաջող պարապմունքների, Վ. Ի. Լենինի և նրա զինակիցների ճառերի մագնիտաֆոնային գրառումներ։ Այժմ ձայնագրող ապարատներ կան քաղաքական լուսավորության գրեթե բոլոր տներում ու կաբինետներում։

Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները բարձր են գնահատում պրոպագանդիստների աշխատանքը և ամեն կերպ խրախուսում են նրանց։

Այժմ կուսակցական ուսուցման սիստեմի ունկնդիրների ճնշող մեծամասնությունը մասսայական-քաղաքական մեծ աշխատանք է կատարում։ Պրոպագանդիստները հանդես են գալիս դասախոսություններով ու զեկուցումներով, իրենց փորձը հաղորդում ագիտատորներին, զեկուցողներին և քաղինֆորմատորներին։

**Մ. Ի. ԺԳՈՒՏՈՎ**
Տաջիկստանի կոմկուսի Կենտկոմի հանրապետական քաղլուստան վարիչի տեղակալ



## ՀՄՈՒՏ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԸ

Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի գործվածքային արտադրամասի մարքսիզմ-լենինիզմի դպրոցի պրոպագանդիստ Խաչիկ Ռաֆայելյանը, ունենալով պրոպագանդիստական աշխատանքի փորձ, հումանիտար և տնտեսական գիտելիքների պաշար, կարողանում է հմտորեն անցկացնել պարապմունքները։ Նա պարտքի բարձր գիտակցությամբ է կատարում կուսակցական պատվավոր հանձնարարությունը։ Ռաֆայելյանը հաճախ օգտագործում է ո՛չ միայն հայրենական, այլև արտասահմանյան գրողների, հրապարակախոսների, գիտնականների, քաղաքական ու պետական գործիչների, տարբեր լրագրերի վկայությունները Սովետական Միության քաղաքականության ճշմարտացիության վերաբերյալ։

Պարապմունքի ընթացքում թեմային վերաբերող մեջբերումները գրավում են ունկնդիրների ուշադրությունը, շարժում նրանց հետաքրքրությունը՝ պարապմունքը դարձնելով ավելի աշխույժ ու բովանդակալից։

Խ. Ռաֆայելյանը երբեք չի փորձում շրջանցել ունկնդիրների հարցերն ու առաջարկությունները։ Պրոպագանդիստի աշխատանքի դրական կողմը նաև այն է, որ նա ձեռք բերված հաջողությունների ֆոնի վրա կարողանում է համոզիչ կերպով բացատրել եղած առանձին դժվարությունների պատճառները, ցույց տալ թերությունների վերացման ուղիներն ու հնարավորությունները։

Խորանալով գործվածքային արտադրամասի տնտեսական գործունեության մեջ՝ պրոպագանդիստը կուսակցական քաղաքական լուսավորության անցած ուսումնական տարվա պարապմունքներից մեկում նպատակահարմար գտավ առաջադրել «Ինչպես է կիրառվում լենինյան տնտեսավարության սկզբունքը մեր արտադրամասում» հարցը։ Այն մտքերի աշխույժ փոխանակության տեղիք տվեց։ Ունկնդիրներ Ե. Ասլանյանը, Վ. Մարտիրոսյանը նշեցին, որ արտադրվող մետաքսաթելն իր որակով և քանակով չի համապատասխանում պետական ստանդարտին։ Դա հաստատեցին նաև մյուսները։ Պրոպագանդիստի և ունկնդիրների ուսումնասիրությունը ցույց տվեց, որ նկատվող թերությունն սկիզբ է առնում մատակարարող կազմակերպություններից, որոնք, օգտվելով թույլ հսկողությունից, բռնել են աչքակապության և իրենց իրավունքների չարաշահման ուղին։ Համատեղ աշխատանքով կանխվեց նկատվող արտառոց երևույթը, մեկընդմիշտ փակվեց հանրային ունեցվածքի վատնման ճանապարհը։ Այդ ամենի շնորհիվ տնտեսվեց տասնյակ հազարավոր ռուբլի։

«Վ. Ի. Լենինն աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին» թեման անցնելիս՝ պրոպագանդիստ Ռաֆայելյանը ունկնդիրների ուշա-

դրությունը հրավիրեց հատկապես այն բանին, թե սոցիալիստական հասարակարգի կառուցման համար ինչպիսի կենսական խոշոր նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության բարձրացումը։ Նախապես պատրաստած սխեմաների միջոցով նա ցույց տվեց սովետական իշխանության տարիներին ՍՍՀՄ-ում և Հայաստանում աշխատանքի արտադրողականության աննախընթաց աճը։ Այդ ամենը պրոպագանդիստն ամրապնդեց նաև կոմբինատից վերցրած կոնկրետ օրինակներով։

— 1953 թվականին,— շարունակելով իր խոսքը,— ասաց Խ. Ռաֆայելյանը,— կոմբինատը շահագործման հանձնելու առաջին տարում, 500 աշխատողներով արտադրվեց մեկ միլիոն 340 հազար մետր մետաքսե գործվածքեղեն, վերջին յոթ տարում աշխատողների թիվն ավելացել է մոտ 2,5, իսկ արտադրանքը՝ տասն անգամ։

Այնուհետև պրոպագանդիստն ունկնդիրների ուշադրությունը հրավիրեց աշխատանքի արտադրողականության աճին զուգընթաց բարձրորակ արտադրանքի թողարկման վրա, նշեց այդ գործում նկատվող թերությունները, խորհուրդ տվեց ավելի լրջորեն ուսումնասիրել կոմբինատի հետ մրցության մեջ գտնվող Լատվիայի, Էստոնիայի և Միության մյուս նույնատիպ ձեռնարկությունների աշխատանքի առաջավոր փորձը։

Սովետական ապարատի աշխատողի գործունեության լենինյան ոճի մասին պատմելիս՝ պրոպագանդիստը հանգամանորեն կանգ առավ այն հարցի վրա, թե գործվածքային արտադրամասում ինչպես են լուծվում աշխատանքի պլանավորման, վարձատրման ու կազմակերպման հարցերը, ինչպիսի բյուրոկրատական քաշքշուկներ են տեղի ունենում և ինչպես պետք է վերջ տալ այդ ամենին։ Պրոպագանդիստի ելույթից հետո սկսվեց մտքերի փոխանակություն։ Ունկնդիրների ելույթներից հայտնի դարձավ, որ աշխատանքի սխալ կազմակերպման պատճառով ենթավարպետների տված արտադրանքի ամենօրյա որակի և քանակի ցուցանիշները հայտնի են դառնում 4—5 օր հետո միայն։ Պրոպագանդիստի և ունկնդիրների միջամտությամբ կոմբինատի ղեկավարությունը կարգավորեց այդ հարցը։ Այժմ ձեռք բերված ցուցանիշների մասին հաջորդ օրը իմանում է ամեն մի աշխատող։

Հերթական մի պարապմունքի ընթացքում օրինական հարց բարձրացվեց.

— Ինչո՞ւ աշխատանքի նույնանման պայմաններում ունկնդիրներ Ե. Ասլանյանը, Գ. Զաքարյանը, Ռ. Տատեսյանը, Կ. Շաբանյանը, Կ. Ղահրամանյանը և ուրիշներ գերակատարում են իրենց ամենօրյա առաջադրանքները, իսկ ոմանք նկատելիորեն ետ են մնում, թերակատարում պլանները։

Ետ մնացողներին առաջավորներին հասցնելու նպատակով պրոպագանդիստը հերթական պարապմունքում պարզաբանեց տնտեսական խթանման էությունը։ Նա ցույց տվեց, որ առաջավոր աշխատողները ձեռնարկության խրախուսման ֆոնդի հաշվին լրացուցիչ վարձատրություն են ստանում անհատական լավագույն ցուցանիշների համար, իսկ ձեռնարկության խրախուսման ֆոնդն ավելի մեծ չափերի է հասնում այն դեպքում, երբ կոմբինատը կատարում է տարեկան պլանը՝ տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով։ Այստեղից էլ այն հետևությունը, որ ետ մնացողները ո՛չ միայն խանգարում են կոմբինատի առջև դրված խնդիրների լուծմանը, այլև առաջավորներին զրկում են ավելի բարձր, լրացուցիչ վարձատրություն ստանալու հնարավորությունից։

Սակայն պրոպագանդիստին և ունկնդիրներին ամենից առաջ հուզում է գաղափարական ու տնտեսական աշխատանքի ճիշտ զուգակցման, ինչպես և



արտադրության ետ մնալը մեկընդմիշտ կանխելու հարցերը։ Այդ նպատակով վերջերս նրանք առաջ քաշեցին իրենց տեղամասը բանիմաց կադրերով ամրապնդելու, աշխատողների մասնագիտական որակավորումը բարելավելու խնդիրը։ Կոմբինատի դիրեկցիան և կուսկոմիտեն, բավարարելով նրանց պահանջը, այստեղ աշխատանքի ուղարկեց արտադրության հմուտ կազմակերպիչ, «Պատվո նշան»-ի շքանշանակիր Գագիկ Կոչկակարյանին։ Ձեռնարկվեցին արտադրության հետագա զարգացումը խթանող շատ այլ միջոցառումներ։ Կարելի է հուսալ, որ այս ամենը դրական արդյունք կտա։ Տեսնելով դըպրոցի դրական արդյունքները՝ արտադրության նոր ղեկավար Գ. Կոչկակարյանն սկսեց ակտիվորեն մասնակցել պարապմունքներին։

Պրոպագանդիստ Խ. Ռաֆայելյանը կոմբինատի մեքենահաշվային կայանի պետն է։ Աշխատանքին զուգընթաց նա ավարտել է Երևանի պետական համալսարանի տնտեսագիտական ֆակուլտետը և մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանը։ Նա իր բախտն ամբողջապես կապել է կոմբինատի բախտին, ապրում է իր գործով, սիրում պրոպագանդիստական աշխատանքը, սիստեմատիկ զբաղվում իր գաղափարական մակարդակի բարձրացմամբ, որոնում և գտնում պարապմունքը վարելու առավել արդյունավետ մեթոդներ։ Պատահական չէ, որ Ռաֆայելյանի պրոպագանդիստական աշխատանքի ուսանելի փորձը լսվել է կոմբինատի կուսկազմակերպության ժողովում, ՀԿԿ Շահումյանի շրջկոմի քաղլուսկաբինետում, ընդհանրացվել և դարձել շատ պրոպագանդիստների սեփականությունը։ Կուսշրջկոմը նրան էքսկուրսիա է ուղարկել լենինյան վայրերը։

Երբ խոսք է լինում լավագույն պրոպագանդիստների մասին, կոմբինատի կուսկոմիտեի քաղլուսկաբինետի վարիչ Գրետա Սարգսյանը առաջինը մատնացույց է անում Խաչիկ Ռաֆայելյանին։ Նրա մասին գովեստով են խոսում կոմբինատի աշխատողները, հատկապես նրա ղեկավարած մարքսիզմ-լենինիզմի դպրոցի ունկնդիրները։

— Նա մեր ամենամոտ ու զգայուն բարեկամն է, լավագույն ընկերը և խորհրդատուն,— այսպես են արտահայտվում ունկնդիրներն իրենց պրոպագանդիստի մասին։ Պարապմունքի ժամին և պարապմունքից դուրս նրան դիմում են ամեն կարգի հարցերով՝ համոզված լինելով, որ պրոպագանդիստն անտարբեր վերաբերմունք ցույց չի տա, պատասխանատվության բարձր զգացումով կմոտենա իրեն դիմողին, ամեն կերպ կձգտի հնարավորին չափ օգնել նրան՝ հասնելու հարցի լուծմանը։

Ահա թե ինչու են հարգում պրոպագանդիստ Խ. Ռաֆայելյանին։ Նրա աշխատանքի առանձնահատկությունն այն է, որ նա տեսական-գաղափարական աշխատանքը հմտորեն ուղղում է տնտեսության առջև դրված կարևորագույն խնդիրների լուծմանը։

Կոմբինատի արտադրանքի մակնիշը հասցնել համաշխարհային ստանդարտին, լենինյան տեսական ժառանգությունը դարձնել ունկնդիրների սեփականությունը— ահա այն նպատակը, որին հետապնդում է Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի գործվածքային արտադրամասի մարքսիզմ-լենինիզմի դպրոցի գաղափարական ամբողջ աշխատանքը։

Կ. Մ. ԽՈՋՈՅԱՆ

# ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՏԱՐԵԹՎԵՐ

Լ. Հ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր

## ԻԴԵԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՅԻ ԿԼԱՍԻԿԸ

(ՀԵԳԵԼԻ ԾՆՆԴՅԱՆ 200-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



Անցյալ ժամանակների այն մտածողների թվում, որոնք դարեր շարունակ ստեղծել ու ձևավորել են մարդկության փիլիսոփայական մեծ կուլտուրան, Հեգելին հատուկ տեղ է պատկանում: Գերազանցապես մետաֆիզիկական մտածելակերպի երկարատև տիրապետությունից հետո, նա փիլիսոփայության պատմության մեջ առաջին անգամ սիստեմատիկ կերպով մշակեց զարգացման համապարփակ տեսություն՝ դիալեկտիկան: Բայց հեգելյան դիալեկտիկան որոշակիորեն խարսխվում էր իդեալիստական աշխարհայացքի վրա, այն ամենը, ինչ շարժվում էր ու զարգանում, նա, ըստ էության, պատկերում էր իբր ինչ-որ ինքնուրույն գոյություն ունեցող հոգևոր սկզբնաղբյուր, «բացարձակ իդեա»: Բայց դա չէր կարող խանգարել, որ Հեգելի ստեղծած զարգացման տեսությունը դառնար մարքսիստական փիլիսոփայության առաջացման տեսական աղբյուրներից մեկը: Հենց սա է Հեգելի իդեալիստական դիալեկտիկայի պատմական մեծ նշանակությունն արդի գիտական փիլիսոփայության լինելության հարցում:

Բնականաբար, Հեգելը դիալեկտիկան չի՛ «հորինել», չի՛ արարել առ ոչնչից: Որքանով որ դիալեկտիկական օրինաչափություններն իշխում են ամբողջ օբյեկտիվ ռեալ աշխարհում, մարդկային մտածողությունն իր բնությամբ պետք է լիներ դիալեկտիկական՝ այդ աշխարհին համապատասխանելու համար: Այն հենց դիալեկտիկական է եղել, բայց միայն տարերային, անգիտակից, ինչպես, օրինակ, հույներինը,



որոնք մշակեցին դիալեկտիկական աշխարհայացքի առաջին պատմական ձևը: Օրինակ, աշխարհի, որպես միասնական և հավերժ փոփոխվող մի ամբողջության մասին Հերակլիտի պատկերացումը ինչ-որ ինքնին հասկանալի և անմիջականորեն հասկանալի մի բան է:

Բայց հունական, դեռևս կիսապոետական աշխարհայացքի թուլությունն այն էր, որ վերջինս, նկատի ունենալով միայն ամբողջն ու ընդհանուրը, չէր կարող (հատուկ գիտելիքների բացակայության կամ ոչ բավարար զարգացության հետևանքով) հետամտել երևույթների համընդհանուր կապն՝ իր մանրամասնություններում, և էմպիրիկ կերպով հիմնավորել դիալեկտիկական մոտեցման իրավացիությունը: Իմացությունը, է՛լ ավելի խորանալով տրոհման և վերլուծության մեջ, այդ տեսակետից զգալի առաջընթաց քայլ կատարեց: Բայց այդուհանդերձ կորավ աշխարհի, որպես միասնականի, անտրոհելի ամբողջականի նկատմամբ գոյություն ունեցող սկզբնական հայացքի թարմությունը:

Միջին դարերում և նոր ժամանակներում փիլիսոփայության մեջ արդեն գերիշխել սկսեց մի այլ մտածողություն, որի սկզբունքների համաձայն իրերն իրենց բուն հիմքով (իրենց սուբստանցիայով) անփոփոխ են և ներքին միասնությամբ կապված չեն միմյանց հետ, ընդհանուրը ինչ-որ տեղ գոյություն ունի առանձնակիից և մասնակիից անջատ, ճշմարտությունը և մոլորությունը, բարին և չարը, ընդհանրապես ողջ դրականն ու բացասականը բացարձակապես ժխտում են միմյանց, անհրաժեշտությունը և ազատությունը, պատճառականությունը և մարդու անձնական պատասխանատվությունը ընդմիշտ մնում են որպես քարացած հակադրություններ և այլն և այլն: Այսպիսին էր այն դարաշրջանի ընդհանուր ինտելեկտուալ ֆոնը, որ կոչվում է մտածողության մետաֆիզիկական եղանակ:

Հիրավի, այդ դարաշրջանում ևս դիալեկտիկան ունեցավ իր փայլուն ներկայացուցիչները, որոնք դիալեկտիկական մտածողության հիանալի նմուշներ տվին (Լեյբնից և Սպինոզա, Տոլանդ և Դիդրո): Բայց դարից առաջ անցած նրանց դիալեկտիկական հեռանըշմարումները վերաբերում էին այս կամ այն *առանձին* փիլիսոփայական պրոբլեմներին և մնում էին դիալեկտիկական տարերային մտածողության առկայծումներ, և դա այն իմաստով, որ զարգացման պրոցեսն ու նրա ընդհանուր օրինաչափությունները, ինչպես նաև դրանց համապատասխանող մըտածողության ձևերը դեռևս չէին ուսումնասիրվում:

Այդ խնդիրը, այսինքն՝ դիալեկտիկայի համընդհանուր ձևերի համապարփակ և գիտակցական պատկերման կամ, այլ կերպ, զարգացման տեսության ստեղծման և այդ տեսակետից մարդկային գիտելիքների բոլոր հիմնական բնագավառների քննարկման բուն հարցը ամենից առաջ Հեգելն առաջադրեց: Բայց ինչի՞ շնորհիվ հնարավոր եղավ այդպիսի մի վիթխարի խնդիր առաջադրել: Ինչո՞ւ դա հնարավոր դարձավ հենց Հեգելի ժամանակ:

Ծիծաղելի պեդանտիզմ կլիներ կարծել, թե զարգացման տեսության հայտնվելու անհրաժեշտությունը վերջնականապես հասունացավ Հեգելի՝ Թյուբինհենյան համալսարանն ավարտելու (1793 թ.) ժամանակներում կամ, ասենք, նրա կողմից իր առաջին աշխատությունը՝ *Ոգու ֆենոմենոլոգիան* (1806 թ.) ավարտելու պահին: Ակներև է, որ այդ ամբողջ դարաշրջանը պետք է քննարկել ավելի լայն առումով, չսահմանափակվելով Հեգելի կյանքի ժամանակագրական շրջանակով:

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը բազմիցս (ինչպես իրենց վաղ շրջանի, այնպես և հետագա աշխատություններում) մատնանշել են որոշ զուգահեռականություն Ֆրանսիայի քաղաքական հեղափոխության և Գերմանիայի փիլիսոփայական հեղափոխության միջև: Այդ անալոգիայի իմաստը տարբեր դեպքերում տարբեր է: Սակայն դրանցից կարևորագույնն այն է, ըստ որի դիալեկտիկան, որը հասունանալ սկսեց Կանտի, Ֆիխտեի և Շելլինգի ուսմունքներում և ավարտման հասավ Հեգելի փիլիսոփայությունում, ֆրանսիական բուրժուական մեծ հեղափոխության յուրահատուկ արտացոլումն է և արտահայտությունը:

Ողջ խորհող Եվրոպան ցնցող իրադարձությունները՝ բուրժուական հեղափոխությունը Ֆրանսիայում, նապո-

լենյան պատերազմները, տեսական իմաստավորում էին պահանջում: Եվ դիալեկտիկական ուսմունքը, որը բացահայտում է զարգացման անվիճելի բնույթը, կարող էր ընկալվել և ընկալվում էր (մասնավորապես, այնպիսի մարդկանց կողմից, ինչպես Հայնեն և Գերցենը), որպես իրենց դարն ապրած ֆեոդալական կարգերը ոչնչացնելու անհրաժեշտության փիլիսոփայական հիմնավորում: Այդ կապակցությամբ հարկավոր է նշել, որ իր աշխարհայացքի ձևավորման պահին Հեգելը հրճվանքով դիմավորեց Ֆրանսիայի հեղափոխության լուրը և դեռ երիտասարդ օպոզիցիոն դիրք էր գրավում պաշտոնական իշխանության և կրոնի նկատմամբ: Այսպիսով, դիալեկտիկան որպես մշտական փոփոխության և զարգացման վերաբերյալ ուսմունք, կյանքի կոչվեց նախ և առաջ դարաշրջանի խոշորագույն սոցիալ-քաղաքական իրադարձությունների շնորհիվ:

Դրա հետ միասին, դիալեկտիկական մտածելակերպի ծագումը պայմանավորված էր հատուկ գիտելիքների զարգացման պահանջներով, սեփական տրամաբանության ուժով, որը ձգտում էր ազատվել մետաֆիզիկայի կապանքներից: Տակավին Կանտի տիեզերածագման հիպոթեզն առաջին ճեղքը բացեց երկրի և արեգակնային սիստեմի՝ որպես ինչ-որ հավիտենական գոյության վերաբերյալ եղած հայացքներում: Հետագայում XVIII դարի վերջում և XIX դարի սկզբում, երկրաբանության, հնէաբանության, ֆիզիոլոգիայի և քիմիայի հաջողությունները ընդհուպ մոտեցրին այն հետևությանը, որ բնության մեջ կա զարգացում: Գիտական իմացության պրոգրեսն ավելի ու ավելի էր կաշկանդվում մետաֆիզիկական մտածողության շրջանակներում: Բայց հարկավոր էր Հեգելի հիրավի հանրագիտական ուսյալությունը և ստեղծագործական հանճարը՝ այդ վիթխարի նյութն ամփոփել կարողանալու և դրանից ընդհանուր դիալեկտիկական հետևություններ կատարելու համար:

Ընդսմին, դարաշրջանի պատմական սահմանափակությունը և Գերմանիայի առանձնահատուկ հանգամանքները պայմանավորեցին հեգելյան դիալեկտիկայի սահմանափակությունն ու անհետևողականությունը: Եթե Կանտի փիլիսոփայության, որպես «ֆրանսիական հեղափոխության *գերմանական տեսության*» մարքսյան բնութագիրը տարածենք գերմանական փիլիսոփայության ներկայացուցիչների և գլխավորապես Հեգելի մշակած դիալեկտիկայի վրա, ապա այդ բնութագրում կարելի է նկատել ոչ միայն դրական, այլև բացասական մոմենտներ: Դիալեկտիկան, նախ *բուրժուական* հեղափոխության տեսությունը լինելով, նմանապես չէր կարող հետևողական լինել, ինչպես չէր կարող հետևողական լինել (մարդու ամեն տեսակ ստրկացումը ոչնչացնելու իմաստով) բուն իսկ բուրժուական հեղափոխությունը: Այնուհետև, եթե այդ դիալեկտիկան բուրժուական հեղափոխության *գերմանական* տեսություն էր, ապա դա նշանակում է, որ վերջինում հակաֆեոդալական տրամադրությունները ու ձգտումները այնպիսի արտահայտություն էին ստացել, որը համապատասխանում էր Գերմանիայի հետամնաց տնտեսական ու քաղաքական պայմաններին և գերմանական բուրժուազիայի բնությանը, որը գործնականորեն հեռու էր հեղափոխականությունից և հակված՝ ամեն տեսակ կոմպրոմիսի:

Ամենօրյա իրադրությունը, որի պայմաններում ապրում էր Հեգելը, չինովնիկական-ազնվականական և բյուրգերական միջավայրը, որի հետ նա կապված էր՝ լինելով տնային ուսուցիչ ու գիմնազիայի դիրեկտոր՝ Նյուրնբերգում, Բեռլինի համալսարանի ռեկտոր, տոգորված էր քաղքենիության ոգով, որը գերմանական սպեցիֆիկ հետամնացության յուրահատուկ արգասիք էր: Բացի դրանից, այն դարաշրջանը, որում ապրում էր Հեգելը, չէ՛ որ ոչ միայն ֆրանսիական հեղափոխության և ֆեոդալական Եվրոպայի դեմ Նապոլեոնի հաղթական պատերազմների դարաշրջանն էր, այլև հին կարգերի *ռեստավրացիայի* դարաշրջանը:

Այդ ամենն այն քողարկված ենթահողն էր, որի վրա աճեցին հեգելյան պատկերացումները զարգացման մասին, որպես մի պրոցեսի, որն ընթանում է միայն համաշխարհային բանականության ոլորտում և որը, վերջին հաշվով, անխուսափելիորեն պետք է հասնի իր ավարտին՝ դադարին:

Այդ իսկ հանգամանքները չէին կարող չներգործել Հեգելի սոցիալ-քաղա-



քական հայացքների վրա, որոնք՝ նրա կյանքի հատկապես բեռլինյան ժամանակաշրջանում ձեռք բերին պահպանողականության, իսկ մասամբ նաև ուղղակի հետադիմականության յուրահատուկ գծեր (փիլիսոփայությունն ու գիտությունը կրոնի հետ հաշտեցնելու տենդենցը, պրուսական պետականության աստվածացումը, որոշ նացիոնալիստական գաղափարներ):

Այն «ճանաչումը», որ իր ժամանակին արժանացրել էին Հեգելին գերմանական ֆաշիզմի գաղափարախոսները, բացատրվում է նրանց բնական համակրանքով բացառապես հեգելյան աշխարհըմբռնողության այդ գծերին: Բայց որքան էլ չափազանցնեին և փառաբանեին Հեգելին՝ գերմանական տնտեսապես, քաղաքականապես թույլ և անվճռական բուրժուազիայի գաղափարախոսի թուլությունները, Հեգելի, որպես մտածողի մեծությունը, փիլիսոփայական մտքի զարգացման մեջ նրա ավանդը, իհարկե, այդ չէ: Նա փիլիսոփայության պատմության մեջ մտավ նախ և առաջ որպես իդեալիստական դիալեկտիկայի կլասիկ:

Հեգել-դիալեկտիկը չբավարարվեց սոսկ միայն հռչակելով զարգացման սկզբունքը, այն գաղափարները, որ աշխարհը միասնական մի ամբողջություն է, որի մեջ յուրաքանչյուր երևույթ պետք է ըմբռնվի որպես այդ ամբողջությունն ընդգրկող զարգացման մի օղակ: Նա իր առաջ առավել բարձր և առավել բարդ խնդիր էր դրել՝ ստեղծել զարգացման տեսությունը, այսինքն՝ վերլուծել ու բացատրել յուրաքանչյուր զարգացման հիմնական և ընդհանուր ձևերը: Բայց Հեգելը դրանով ևս չսահմանափակվեց. նա ձգտում էր հիմնավորել զարգացման գաղափարը, այդ նպատակի համար ներգրավելով (ի դեպ ոչ միշտ բացահայտորեն, այլ մերթ ընդ մերթ, ինչպես նկատել է Ֆոյերբախը, «բնությունը խցկելով ծանոթագրությունների ոլորտը») իրեն ժամանակակից կրթվածության ամբողջ զինանոցը: Այդ առումով Ֆ. Էնգելսը գրում էր, թե «...հեգելյան սիստեմն ընդգրկել է անհամեմատ ավելի լայն բնագավառ, քան նախորդ սիստեմներից որևէ մեկը, և այդ բնագավառում զարգացրել է դեռ մինչև օրս էլ չեղած մտքերի ապշեցուցիչ հարստություն: Ոգու ֆենոմենոլոգիա..., տրամաբանություն, բնության փիլիսոփայություն, ոգու փիլիսոփայություն, որոնք մշակվել են նրա երկերում. պատմության, իրավունքի, կրոնի փիլիսոփայությունը, էսթետիկան, փիլիսոփայության պատմությունը և այլն, այդ տարբեր պատմական բնագավառներից յուրաքանչյուրում Հեգելն աշխատում է գտնել և ցույց տալ զարգացման թելը»[1]:

«Ոգու ֆենոմենոլոգիան», որի մասին այստեղ հիշատակում է Ֆ. Էնգելսը, որոշակի կերպով հետաքրքրական է ոչ միայն այն պատճառով, որ դա Հեգելի առաջին ինքնուրույն աշխատությունն է, այլև այն, որ նրանում տրված են Հեգելի դիալեկտիկական-իդեալիստական սիստեմի հիմքերը և պարզորոշ ուրվագծված է նրա հիմնական մտահղացումը: Եվ այդ իմաստով դա մի բանալի է հեգելյան ամբողջ փիլիսոփայությունը հասկանալու համար: Վերլուծելով դրսևորվող ֆենոմենը (երևույթը)—ոգին, այսինքն՝ մարդկային գիտակցությունը, նրա տարբեր, անհատական և հասարակական դրսևորումները, Հեգելը դրանց բուն հիմքում հայտաբերում է որոշ «բացարձակ»— անդեմ համաշխարհային ոգի, որն էլ հենց զարգացման իսկական սուբյեկտն է (կրողը և կարծես թե գործող անձը): Եվ հենց այստեղ էլ Հեգելը պարզաբանում է, որ զարգացման իմաստն ու էությունը ոչ այլ ինչ է, քան մտածողությունը, իմացությունը, այդ ոգու ինքնաճանաչումը: Այդպես է Հեգելը մոտենում իր փիլիսոփայության վճռական սկզբունքին՝ կեցության և մտածողության նույնացմանը, այն գաղափարին, թե կեցության էությունն ու հիմքը մտածողությունն է:

Իսկ ինչպե՞ս է Հեգելը բխեցնում իր բացարձակ իդեալիզմի համար այդ կարևոր սկզբունքը: Ինչպե՞ս է կեցությունն ըստ էության նույնական դառնում մտածողությանը՝ անդեմ («բացարձակ») բանականության ճանաչողական գործունեությանը:

Փիլիսոփայության նախընթաց զարգացման մեջ նրա կենտրոնական հարցերից մեկը եղել է սուբստանցի պրոբլեմը, այն հարցը, թե որն է կեցության ամբողջ բազմազանության միասնա-

---

[1] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 21, стр. 278.

կան և էական հիմքը: Հեգելն այդ պրոբլեմը չի հերքում, ընդհակառակը, նա համաձայն է իր նախորդների հետ այն բանում, թե, ցանկանալով հասկանալ կեցության էությունը, հարկավոր է բացահայտել ամբողջ գոյություն ունեցածի հիմքը՝ սուբստանցը. այդ իմաստով նա բարձր է գնահատում Սպինոզայի ուսմունքը միասնական սուբստանցի մասին: Բայց Հեգելը, որպես դիալեկտիկ, հատկապես պնդում է, թե սուբստանցը հարկավոր է ներկայացնել ոչ որպես անշարժ հիմք, այլ ինչ-որ կենդանի, ակտիվ և գործունյա, այսինքն՝ որպես սուբյեկտ: Ամբողջ բանն այն է, գրում է Հեգելը, ընդգծելով այդ հանգամանքի որոշակի նշանակությունը, որ կեցության էությունն ըմբռնվի ոչ միայն որպես սուբստանց, այլև հավասարապես որպես սուբյեկտ[1]:

Բայց սուբստանցը լոկ այն ժամանակ է հանդես գալիս որպես սուբյեկտ, երբ այն ինքն շարժում է, գործունեություն, ակտիվություն: Այդ բացարձակ սուբյեկտ-սուբստանցը սկզբից ևեթ հանդես չի գալիս կազմավորված, ձևավորված: Այն ինքն իրեն կենսագործում և իրացնում է իր լինելության մեջ, այսինքն՝ միայն զարգացման պրոցեսում է այն դառնում ինքնին: Հեգելն այդ կապակցությամբ երբեմն ասում է, թե բացարձակը պետք է հասկանալ որպես բուն այդ շարժումն ու զարգացումը[2]:

Սուբստանցի այդպիսի դիալեկտիկական ըմբռնմամբ Հեգելը, անտարակույս, ավելի ճիշտ տեսակետ ունի, քան Սպինոզան և, առավել ևս, XVIII դարում այնքան անուն հանած Քր. Վոլֆը: Բայց, հարկադրված լինելով վճռելու այն հարցը, թե *ինչն է*, այնուամենայնիվ, շարժվում և զարգանում, Հեգելը հավատարիմ է մնում օբյեկտիվ իդեալիզմին, սուբյեկտ-սուբստանցը կոչելով մե՛րթ համաշխարհային բանականություն, մե՛րթ գաղափար, մե՛րթ ոգի, մե՛րթ նույնիսկ պարզապես աստված: Վերջին հաշվով, գոյության և միասնության հիմքում դրվում է որոշակիորեն *իդեալական* էություն:

Հեգելը, ձգտելով կառուցել փիլիսոփայության մոնիստական սիստեմ, մի ուսմունք, որը բխեցվում է մեկ, միասնական սկզբունքից, չէր կարող ելակետային ու առաջնային համարել անհատի գիտակցությունը կամ նույնիսկ առհասարակ մարդկային գիտակցությունը: Նա շատ առումներով արդարացիորեն քննադատեց այդ ուղիով ընթացող սուբյեկտիվ իդեալիզմը, ցույց տալով, որ չի կարելի մարդու (կամ նույնիսկ մարդկության) գիտակցությունից բխեցնել իրականություն, կեցություն, բնություն:

Բայց, մյուս կողմից, Հեգելը չէր կարող բնության օբյեկտիվ գոյությունը համարել առաջնային և ընդունել, որ օբյեկտիվ և գործունյա սուբստանց-սուբյեկտը մատերիան է:

Դեպի Արիստոտելը տանող և իդեալիզմի պատմության մեջ ամրապնդված տրադիցիայի համաձայն, մատերիան համարվում էր պասսիվ, քարացած, անգործուն սկիզբ: Այն հենց այդպես էլ պատկերացնում էր Հեգելը: Բացի այդ, հասկանալու համար մատերիայի զգայական աշխարհի առաջնայնության հեգելյան բացասումը, անհրաժեշտ է նկատի ունենալ սենսուալիզմի և էմպիրիզմի նրա քննադատությունը: Այդ ուղղությունների սահմանափակությունը նա տեսնում էր այն բանում, որ դրանք որպես իրականություն և ճշմարտություն են ընդունում միայն արտաքինը, եզակին, պատահականը[3]: Բայց քանի որ փիլիսոփայության առարկան ընդհանուրն ու անհրաժեշտն է, իսկ վերջիններս իրենց զուտ ձևով միայն մտածողության մեջ են տրված, ապա հարկավոր է ընդունել ինչ-որ օբյեկտիվ, ոչ մարդկային մտածողություն, որն ընկած է էմպիրիկ և զգայական աշխարհի հիմքում:

Բայց միակողմանի սենսուալիզմի և էմպիրիզմի Հեգելի քննադատությունն անտեսելով մատերիայի ակտիվությունը և բուն համընդհանրականության ու անհրաժեշտության գոյությունը բուն իսկ օբյեկտիվ իրականության մեջ, նրան հանգեցրեց օբյեկտիվ-իդեալիստական հետևությունների, թեև այդ քննադատությունն իր մեջ որոշ արժեքավոր մոմենտներ է պարունակում: Դրանք, մասնավորապես, դրսե-

[1] См. Гегель, Соч., т. IV, стр. 9.
[2] См. Гегель, Соч., т. XI, стр. 498.
[3] См. Гегель, Соч., т. I, стр. 82, 91, 112 и др.



վորվում են նրանով, որ տափակ էմպիրիզմը և սենսուալիզմը թե՛ տրամաբանորեն, թե՛ պատմականորեն (մի գիծ, որը Լոկկից անցնում է Յումին և Կանտին) հանգեցնում է ագնոստիցիզմի: Սակայն ագնոստիցիզմի հեգելյան քննադատությունը ելնում է օբյեկտիվ իդեալիզմի դիրքերից, ուստի, Հեգելի աշխարհը մարդկային ճանաչելի մտածողությունն է, որ այդ աշխարհի հիմքում ընկած է «աբսոլյուտ» մտածողությունը:

Այնուհետև, հենց այն պատճառով, որ Հեգելի կարծիքով որպես սուբստանց հանդես է գալիս համաշխարհային բանականությունը, ապա դրա գործունեությունը կարող է լինել ոչ այլ ինչ, քան մտածողությունը, այսինքն՝ ճանաչողական բնույթի գործունեություն: Քանի որ այդ անդեմ սուբյեկտը՝ բանականությունը, բացարձակ է, համապարփակ և գոյություն ունեցող ամեն մի էության՝ թե՛ բնության, թե՛ մարդկության հոգևոր աշխարհի մեջ թափանցող, ապա նա, ըստ էության, ոչինչ չունի ճանաչելու, բացի, վերջին հաշվով, ինքն իրեն: Բայց ինքն իրեն ճանաչելու համար բացարձակ բանականությունը պետք է իջնի զուտ մտքի ոլորտից, ճանաչման առարկա դարձնի ինքն իրեն, առաջացնի, ինչպես Հեգելն է ասում, սեփական «այլակեցություն», իր գոյության ինչ-որ մի ուրիշ արտաքին ձև՝ բնություն, ինչպես և հասարակություն, մարդ՝ նրա վերջնական, ոգու՝ գիտակցության հետ միասին:

Հեգելյան սիստեմում աբսոլյուտի գոյության այդ երեք ոլորտներին (կամ ասպեկտներին) համապատասխանում են նրա երեք բաղկացուցիչ մասերը՝ տրամաբանությունը, բնության փիլիսոփայությունը և ոգու փիլիսոփայությունը: Այդ վերջին հատվածին են հարում և լրացնում նրա աշխատությունները և նրա դասախոսությունները պատմության փիլիսոփայության, իրավունքի փիլիսոփայության, փիլիսոփայության պատմության, էսթետիկայի վերաբերյալ: Հետամտելով մարդկության և նրա հասարակական գիտակցության բազմազան ձևերի ամբողջ զարգացմանը, Հեգելը ձգտում է ցույց տալ մարդկային գիտակցությունը (որն սկզբում սահմանափակ է և սուբյեկտիվ) ճանաչման անմիջական առարկայում (բնական և սոցիալական երևույթներում), բացահայտել դրանց վերջնական էությունը, այսինքն՝ աբսոլյուտը, հասնելով բացարձակ գիտակցության, վեր է ածվում աբսոլյուտ ոգու: Դրանով իսկ համաշխարհային բանականությունն ինքնին բացահայտում է իր էությունը, իրացվում է աբսոլյուտ գաղափարի ամբողջականությունն ու իրականությունը:

Զարգացման այդպիսի ըմբռնումը (և դրան համապատասխան սիստեմի կառուցումը) Հեգելի համար մի շարք անհաղթահարելի դժվարություններ հարուցեց: Նախ և առաջ անբացատրելի և միստիկ է անցումը զուտ մտքի ոլորտից դեպի նրա «այլակեցությունը»՝ բնությունը: Պատահական չէ, որ Հեգելն այդ մասին խոսում է մանվածապատ և այլաբանական լեզվով, օգտագործելով խոսքի այնպիսի դարձվածքներ, ինչպես «...իդեան ինքն է իրեն ազատորեն արձակում...»[1]: Դեռ ավելին, այստեղ Հեգելն անխուսափելիորեն խճճվում է հակասությունների մեջ, գտնելով, թե աշխարհը «արարված է եղել հավիտենապես»[2], որովհետև աշխարհի հավիտենականությունն ու արարվածությունը իրականում լիովին բացասում են միմյանց: Այս հարցում Հեգելի մոնիզմը (ինչպես և ամբողջ իդեալիստական մոնիզմը) խորտակվում է, որովհետև բնությունը գաղափարից «բխեցնելու» խնդիրը սկզբունքորեն անլուծելի է, ինչպես էլ որ հասկացվի այդ գաղափարը:

Բայց հեգելյան դիալեկտիկայի իդեալիզմը միայն այն չէ, որ որպես սկիզբ և ելակետ ընդունված է ինչ-որ իդեալականը, այլ նաև ոչ պակաս չափով այն, որ զարգացումն այդ դիալեկտիկայում մեկնաբանվում է որպես ճանաչողական գործունեություն, որպես մտածողություն: Ըստ հեգելյան մտահղացման, աշխարհի բանական սուբստանցը պետք է հասնի իր ճանաչմանը, այլապես չպարզված կմնա, թե ինչն է աշխարհի իսկական սուբստանցը: Բայց, մյուս կողմից, հենց որ բացարձակ գաղափարը հասնում է բացարձակ ինքնաճանաչման, այն այլևս ճանաչելու ոչինչ չունի: Լինելության պրոցեսը հասնում է ավարտին,

[1] См. Гегель, Соч., т. VI, стр. 319.
[2] См. Гегель, Соч., т. II, стр. 22.

զարգացումը (ճանաչումը) սպառում է իրեն, դադարում:

Այսպիսով, Հեգելի փիլիսոփայության մեջ, որտեղ իդեալիզմն ու դիալեկտիկան օրգանապես կապված են, իդեալիզմը հակասության մեջ է ընկնում զարգացման գաղափարի հետ: Իդեալիստական սիստեմը ձևաեղծում, աղճատում է դիալեկտիկական մեթոդը, այն դարձնում է անհետևողական և, վերջին հաշվով, հանգեցնում ինքնաժխտման: Հասկանալի է, որ հեգելյան փիլիսոփայության այն հետևորդները, որոնք նրա մեջ գնահատել են «սիստեմը», կարող էին լինել պահպանողականներ և նույնիսկ հետադիմականներ: Ընդհակառակը, նրանք, ովքեր դիալեկտիկական մտածողության մեթոդի մեջ տեսել են նրա ռացիոնալ բովանդակությունը, կարող էին Հեգելի փիլիսոփայությունից ամենահեղափոխական հետևություններ կատարել:

Հեգելի փիլիսոփայության ուժը և թուլությունն այն է, որ ըստ նրա՝ միասնական սուբստանցը հանդես է գալիս զարգացող համաշխարհային բանականության ձևով: Կեցությունը հանգեցնելով մտածողությանը, որպես հիմք ընդունելով կեցության և մտածողության, բանականության, գաղափարի, ոգու նույնությունը, Հեգելն իդեալիստորեն է լուծել փիլիսոփայության հիմնական հարցը: Համաշխարհային ոգին պատկերելով որպես զարգացող, Հեգելն առաջինն էր, որ մտածողության ու կեցության նույնությունը ներկայացրեց որպես մի ներունակություն, որը իրացվում է զարգացման պրոցեսում և որի հետևանքով, իր մեջ հաղթահարված ձևով պահպանում է անցած ամբողջ ուղին: *Ճշմարտությունը*՝ որպես օբյեկտիվի և սուբյեկտիվի զուգադիպում՝ *պրոցես է*. այսպիսին է հեգելյան հարցադրման ռացիոնալ, դիալեկտիկական իմաստը:

Ճիշտ է, կեցության ու մտածողության նույնացման ըմբռնումը պարունակում է մատերիալիզմի համար անընդունելի մի հանգամանք ևս: Հեգելի փիլիսոփայության մեջ առանձին ուսմունք չկա կեցության մասին (գոյաբանություն) և ոչ էլ ճանաչողության մասին (իմացաբանություն), ինչպես դա եղել է Լեյբնից-վոլֆյան ավանդույթում: Սակայն, ամբողջ բանն այն է, որ գոյաբանությունն ու իմացաբանությունը Հեգելի մոտ զուգադիպում են այն բանի հետևանքով, որ ըստ նրա մտահղացման նույնական են կեցությունն ու մտածողությունը:

Այստեղ հեգելյան փիլիսոփայությունը դրսևորում է մի ասպեկտ, որը չափազանց արգասաբեր է փիլիսոփայության հետագա առաջադիմական զարգացման համար: Ըստ Հեգելի, կեցության ու մտածողության նույնականություն ասելով պետք է հասկանալ ոչ միայն կեցության հանգեցումը մտածողությանը, այլև, մասնավորապես, կեցության ու մտածողության զարգացման օրենքների ընդհանրություն: Դա նշանակում է, որ արտաքին աշխարհի լինելությունը և այն ճանաչելու պրոցեսը և դրա ընդհանուր տրամաբանությունը բնութագրվում են միևնույն ընդհանուր դիալեկտիկական օրինաչափություններով: Այլ կերպ ասած, օբյեկտիվ աշխարհի և մտածողության «սուբյեկտիվ» դիալեկտիկան համընկնում են: Հեգելի այն գաղափարը, թե այդ իմաստով դիալեկտիկան, տրամաբանությունը (դիալեկտիկական) և իմացության տեսությունը միևնույն բանն են, բարձր է գնահատվում մարքսիստական-լենինյան փիլիսոփայության կլասիկների կողմից:

Դիալեկտիկորեն հասկացվող ամեն մի զարգացման այդ ընդհանուր օրինաչափությունների նկարագրմանն ու հետազոտությանն է նվիրել Հեգելն իր առավել նշանակալի աշխատությունը՝ *Տրամաբանության գիտությունը*, մի ստեղծագործություն, որի մասին Վ. Ի. Լենինն ասել է, թե այդ երկի գլխավոր առարկան դիալեկտիկական մեթոդն է և որ չի կարելի լիովին հասկանալ Մարքսի *Կապիտալը*, չուսումնասիրելով և չհասկանալով Հեգելի *ամբողջ Տրամաբանությունը*[1]:

Բանն այն է, որ Հեգելի տրամաբանական ուսմունքը միայն արտաքին հայացքից է թվում որպես նրա էնցիկլոպեդիկ փիլիսոփայական սիստեմի առաջին օղակ (թեև, այսպես կոչված, «Փոքր տրամաբանությունը» ինքը Հեգելն է մտցրել «Փիլիսոփայական գիտությունների հանրագիտարանի» մեջ որպես նրա առաջին մաս): Ավելի մո-

[1] См. В. И. Ленин, Полн. собр. соч., т. 29, стр. 215 и 162.



տիկից քննարկելու դեպքում հեշտ է նկատել, որ Հեգելի համար տրամաբանությունն ավելի շուտ նրա սիստեմի մի կողմն է, ասպեկտը, քան մեկուսացված մաս: Չէ՛ որ այն դիալեկտիկական օրինաչափությունները, որոնք գործում են տրամաբանական «զուտ մտքի» ոլորտում, դրանք, ըստ Հեգելի, իրենց ամբողջ նշանակությունը պահպանում են ամեն մի զարգացման նկատմամբ: Տրամաբանության առարկան հասկացությունների «ինքնաշարժումն» է, բայց Հեգելի համար «հասկացությունը *պահպանվում է* իր այլակեցության մեջ, համընդհանուրը՝ իր առանձնացվածության մեջ...»[1]: Ուստի, հեգելյան տրամաբանության ռացիոնալ ընթերցման դեպքում դառնում է զարգացման ընդհանուր օրինաչափությունների ու ձևերի հետազոտություն՝ վերցնելով վերացականորեն և «զուտ» ձևով:

Իր Տրամաբանության մեջ Հեգելը հասկացությունները վերլուծում է կարծես թե դրանց օժտելով շարժման ու զարգացման սեփական ունակությամբ: Բայց հասկացությունների կապերում և հարաբերություններում, դրանց մեկը մյուսին «անցումներում» Հեգելին հաջողվեց կռահել և սևեռել դիալեկտիկական պրոցեսի իրական օրինաչափությունները, օբյեկտիվ դիալեկտիկայի էական և որոշիչ մոմենտները: Կարճ ասած, հասկացությունների դիալեկտիկայում Հեգելը հանճարեղ կերպով կռահեց իրերի դիալեկտիկան[2]:

Հետազոտելով այնպիսի ընդհանուր հասկացություններ, ինչպես քանակը և որակը, էությունը և երևույթը, բովանդակությունը և ձևը. և այլն, Հեգելը ցույց տվեց, որ իրենց ամբողջ հակասականությամբ հանդերձ, դրանք ոչ թե բացառում, այլ պայմանավորում են միմյանց, ուստի և պետք է պատկերացվեն անխզելի միասնության մեջ. հարաբերականի մեջ կա բացարձակի մոմենտը և հարաբերականի ու բացարձակի տարբերությունն ինքն իր հերթին հարաբերական է, դրականի մեջ դրված է բացասականը, մի ուժ, որն անխուսափելիորեն բացասում է նրան հանում այն նորի, որի մեջ, սակայն «հաղթահարված ձևով» կարծես ավելի բարձր մակարդակով են պահպանվում անցած էտապների ինչ-որ մոմենտներ և այլն և այլն:

Հեգելը հատուկ նշանակություն էր տալիս բացասմանը և բացասականի կատեգորիաներին: Նա բողոքում էր այն առօրյա պատկերացման դեմ, թե բացասումը պարզ խորտակում է, իսկ բացասականը որպես մի որոշ տհաճ անցանկալիություն: *Տրամաբանության գիտության* ներածականում նա գրում է՝ «Գիտական առաջընթաց շարժման համար... միակ հարկավոր բանը տրամաբանական դրույթի ճանաչումն է. բացասականը միաժամանակ նաև դրական է»[3]: Բացասման ոգու ճիշտ ըմբռնման մեջ Հեգելը, հետևապես, տեսնում էր դիալեկտիկայի էությունը հասկանալու բանալին (*Տրամաբանության գիտությունը* Հեգելը գրել է 1812—1816 թվականներին, երբ հակադրվում էր պրուսական կարգերին): Հեգելին յուրահատուկ դիալեկտիկական մտածողությունը հարմոնիկ ֆոն էր ծառայում այն «հեղափոխական զայրույթի»[4] բռնկումների համար, որոնք բավական հաճախ պոռթկում էին նրա երկերի էջերից:

Այստեղ չմոռանանք ասել, որ սոցիալ-քաղաքական հանգամանքների բերումով և «սիստեմի ներքին կարիքների» ճնշմամբ, որը հղկում և ավարտում էր պահանջում, Հեգելն առավելապես հակվում էր փիլիսոփայության պահպանողական կողմը:

Բայց դիալեկտիկական մեթոդի նրա ուսմունքն ըստ էության, իր իսկ նշանակությամբ հեղափոխական էր:

Հենց դրանով է բացատրվում, որ բուրժուական փիլիսոփայական միտքը հրաժարվեց գերմանական դասական փիլիսոփայության թողած ժառանգությունից, երես դարձրեց Հեգելից: Նեոհեգելականությունը, որ անցյալ դարի երկրորդ կեսին տարածվել է Եվրոպայի մի շարք երկրներում, նախ և առաջ հիմնականում ժխտում է հեգելյան դիալեկտիկան, հաճախ իռացիոնալ մեկնություն տալով նրան: Եվ բուրժուական միտքը, մեկնելով Հեգե-

[1] Гегель, Соч., т. VI, стр. 315.
[2] См. В. И. Ленин, Полн. собр. соч., т. 29, стр. 178—179.

[3] Гегель, Соч., т. V, стр. 33.
[4] См. К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 21, стр. 279.

լից, համենայն դեպս չկարողացավ ստեղծել շատ թե քիչ կայուն և կենսունակ փիլիսոփայական կոնցեպցիա:

Միակ մարդիկ, ովքեր կարողացան ըստ արժանվույն գնահատել, փրկել և զարգացնել հեգելյան դիալեկտիկան, Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսն էին: Այդ խնդիրը չկարողացավ կատարել այնպիսի մի մտածող, ինչպիսին Ֆոյերբախն էր, որը շատ բան է արել «աբսոլյուտ» իդեալիզմի մատերիալիստական քննադատության առումով: Քանզի նա չկարողացավ հաղթահարել հեգելյան փիլիսոփայությունը վերջինիս իսկական իմաստով, այսինքն՝ ոչնչացնել նրա ձևը և փրկել նրա ձեռք բերած նոր բովանդակությունը: Այդ խնդիրն իր ամբողջ բարդությամբ վիճակվեց պրոլետարական աշխարհայացքի հիմնադիրներին, որոնք, կանգնելով մինչև վերջ միակ հեղափոխական դասակարգի տեսակետի վրա, դիալեկտիկան դարձրին աշխարհի ճանաչման ու վերափոխման հետևողական հեղափոխական մեթոդը: Չնայած Մարքսն ու Էնգելսը սուր քննադատեցին Հեգելի իդեալիզմը և նրա դիալեկտիկայի իդեալիստական բնույթը, բայց նա չմեկուսացվեց և չմոռացվեց: Հեղափոխական շարժման այն երիտասարդ գործիչներին, ովքեր անհոգ էին իրենց մտածողության հարստացման բնագավառում և մետաֆիզիկորեն էին խորհում, Էնգելսը զայրացած կշտամբում էր. «Նրանց համար Հեգել գոյություն չի ունեցել»:

Այն ժամանակ, երբ բուրժուազիան կորցրեց ամեն մի հետաքրքրություն դասական փիլիսոփայության նկատմամբ, բանվոր դասակարգն իրեն հայտարարեց մարդկության մշակած բոլոր հարստությունների, այդ թվում գերմանական դասական փիլիսոփայության ժառանգորդը: Ուստի, սխալ կլիներ այնպիսի հարցադրումը, թե հեգելյան ժառանգությունն արդյոք ա՞յն պատճառով է մեզ համար թանկ, որ նա մարքսիստական-լենինյան փիլիսոփայության տեսական աղբյուրներից մեկն է, թե՞ այն պատճառով, որ Հեգելն էական ավանդ մուծեց մարդկության փիլիսոփայական գիտելիքների գանձարանը: Հենց այն բանը, որ Հեգելը նշանակալիորեն հարստացրեց մարդկության գիտելիքները դիալեկտիկական զարգացման օրինաչափությունների ու ձևերի մասին, նրա ուսմունքը դարձրեց ժամանակակից գիտական փիլիսոփայության աղբյուրներից մեկը: Իսկ, մյուս կողմից, մարքսիստական-լենինյան փիլիսոփայությունը դարձավ Հեգելի իսկական ժառանգորդը հենց այն բանի շնորհիվ, որ նա կարողացավ իդեալիստական դիալեկտիկայի կլասիկ ուսմունքին նոր կյանք ու իմաստ հաղորդել:

Ամենատարբեր առիթներով և հանախակի մարքսիզմ-լենինիզմի կլասիկներն անդրադարձել են հեգելյան փիլիսոփայության այս կամ այն կողմին, նրա հեղափոխական մեթոդին ու հետադիմական սիստեմի գնահատմանը: Այսպես, օրինակ, Հեգելի *Ոգու ֆենոմենոլոգիայի* վեհությունը Մարքսը համարում էր այն, որ հանճարեղ այդ մտածողն ըմբռնում էր աշխատանքի էությունը, մարդուն դիտում որպես սեփական աշխատանքային գործունեության արգասիք: Հասկանալի է, թե ապագա տնտեսագետ Մարքսի համար որպիսի բեղմնավոր գաղափար էր դա, որը նա այնքան համակողմանի ու խորապես զարգացրեց իր հիմնարար երկերում:

Հայտնի է այն աշխույժ ու տևական բանավեճը, որը հարուցվեց Հեգելի այն թևավոր մտքով, թե.

*«Ինչ բանական է, այն իրական է.*

*Ինչ իրական է, այն բանական է»*[1]:

Իր կլասիկ երկում *(Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը)* Ֆ. Էնգելսը, հանգամանորեն վերլուծելով հեգելյան վերոհիշյալ թեզը, նշեց, որ այն, ըստ Ֆրիդրիխ-Վիլհելմ III-ի, ակներևաբար ողջ եղածի փիլիսոփայական արդարացումն էր: Սակայն, ըստ Հեգելի, ամեն գոյություն ունեցածն *անպայման իրական չէ: Իրականը*՝ լոկ *անհրաժեշտն է*: Զարգացման հետևանքով որոշ աստիճանում իրականը դադարում է անհրաժեշտ լինելուց, հետևաբար և զրկվում գոյության իրավունքից: Ուրեմն, դադարում է բանական լինելուց: «Մեռնող իրականության տեղը գրավում է նոր, կենսունակ իրականությունը, գրավում է խաղաղ կերպով, եթե հինը բավականին խոհեմ է, որպեսզի մեռնի առանց դիմադրության՝ բռնությամբ, եթե այն դիմակայում է այդ անհրաժեշտությանը: Այսպիսով, հեգելյան այդ դրույթը շնորհիվ հեգելյան դիալեկտիկայի վերածվում է իր հակադրությանը. մարդկային պատմության բնագավառում ողջ իրականը ժամանակին անբանական է դառնում, այն, հետևաբար, անբանական է իր իսկ բնությամբ, կանխավ հղի է անբանականությամբ: Իսկ այն ամենը, ինչ բանական է մարդկանց գլուխներում, դատապարտված է անիրական դառնալու, որքան էլ այն չհակասի գոյություն ունեցող կարծեցյալ իրականությանը: Մտածողության հեգելյան մեթոդի բոլոր կանոնների համաձայն, ողջ իրականության բանական լինելու վերաբերյալ թեզիսը վերածվում է մի այլ թեզիսի՝ այն ինչ գոյություն ունի, արժանի է խորտակման»[1]:

Պատմական իրողությունն այն է, որ Հեգելի մտածողության վերին աստիճանի հեղափոխական մեթոդն արմատապես հակասության մեջ ընկավ նրա պահպանողական իդեալիստական սիստեմի հետ: Ահա թե ինչու, Մարքսը և Էնգելսը այն մեծ հեղափոխականներն էին, ովքեր արմատապես վերամշակելով հեգելյան մեծարժեք դիալեկտիկայի բանական հատիկը, դրեցին այն նոր, մատերիալիստական հիմքերի վրա: Մտքի այս վիթխարի խիզախումն ի նկատի ուներ Լենինը, երբ նշում էր. «Հեգելյան դիալեկտիկան, որպես զարգացման ամենակողմանի, բովանդակությամբ հարուստ և խոր ուսմունք, Մարքսն ու Էնգելսը գերմանական կլասիկ փիլիսոփայության մեծագույն նվաճումն էին համարում: ...Մարքսը յուրացրեց ու զարգացրեց Հեգելի փիլիսոփայության այդ հեղափոխական կողմը»[2]:

Քննադատորեն մերժելով այն ամենը, ինչ իդեալիստական էր Հեգելի ուսմունքում (բացարձակ ոգի, բացարձակ գաղափար, աստված և այլն), Լենինը հատկապես բարձր էր գնահատում հեգելյան այն ըմբռնումը, որն յուրաքանչյուր շարժման և ինքնաշարժման աղբյուրը, արմատը հակասություններն էր համարում: Այն հանգամանքը, որ Հեգելի հայեցակետով, հակասություններն ի վերջո կարող են հաշտվել և հնարավոր է դրանց չեզոքացումը, թե պրուսական պետությունը բանական հիմքերի վրա է խարսխված և որ պետությունը ոչ թե միջոց է, այլ նպատակ ինքնին, որի լավագույն ձևը սահմանադրական միապետությունն է և այլն, այս ամենը չէին խանգարում Լենինին «մատերիալիստորեն ընթերցելու Հեգելին», որը «գլխիվայր դրված մատերիալիզմն է»: Երբ Հեգելը գրում է, թե «Սուբստանցիան մի կարևոր աստիճան է իդեայի զարգացման պրոցեսում», Լենինը կարդում է այսպես. «կարդա՝ կարևոր աստիճան է բնության ու *մատերիայի, մարդկային իմացության* զարգացման պրոցեսում»[3]:

*Գեորգ-Վիլհելմ-Ֆրիդրիխ Հեգելի*՝ մարդկության պրոգրեսին մատուցած ծառայությունը շա՜տ մեծ է: Իր մտքի գանձերով նա շատ է հարուստ, որոնց հիմնավոր յուրացումը Լենինը համարում էր մարտնչող մատերիալիստների առաջնահերթ խնդիրը:



[1] Гегель, Соч., т. VII, стр. 15.

[1] К. Маркс и Ф. Энгельс, Избр. произв., т. 3, М., 1970, стр. 375.

[2] *Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 52, 53:*

[3] *Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 38, էջ 188—189:*

## Դեպի ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 50-ԱՄՅԱԿԸ

# ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ 50-ՏԱՐՈՒՄ

Հ. Վ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստր

Նախասովետական Հայաստանն ագրարային հետամնաց երկիր էր: Տի-
րող կարգերը, գյուղատնտեսության ցածր կուլտուրան, հասարակ գործիքնե-
րը, բազմատանջ աշխատավոր գյուղացիության անասելի կեղեքումը ոչ մի-
այն կաշկանդում, այլև հետզհետե խորացնում էին գյուղի քայքայումը:
Այդ պրոցեսն ավելի խորացավ առաջին համաշխարհային իմպերիալիս-
տական պատերազմի, թուրքական արշավանքների ու դաշնակցության հակա-
ժողովրդական քաղաքականության հետևանքով: 1919 թվականին ամբողջ ժո-
ղովրդական տնտեսության, այդ թվում և գյուղատնտեսության քայքայումը
հասավ իր ծայրագույն աստիճանին: Բավական է ասել, որ նույն ժամանակա-
շրջանում Հայաստանի բնակչության յուրաքանչյուր շնչին միջին հաշվով տա-
րեկան հասնում էր 20—25 կգ հացահատիկ և 2 կգ կարտոֆիլ, որը հասցրեց
մասսայական սովի: 1918—1919 թթ. ձմռանը քաղցից ու տիֆից մեռան ավե-
լի քան 150 հազար մարդ:
Կործանման եզրին կանգնած Հայաստանը փրկվեց միայն սովետական
իշխանության շնորհիվ, երբ աշխատավոր ժողովուրդը կոմունիստական կու-
սակցության ղեկավարությամբ տեր դարձավ երկրին: Հենց այդ պահից սկսվեց
նրա վերածնության, տնտեսական ու մշակութային ոսկեդարը:
Սովետական իշխանության 50 տարիներին հայ ժողովուրդը կտրեց-ան-
ցավ հարյուրամյակների ուղի, հաղթահարեց դարավոր հետամնացությունը,
հասատուն կերպով բռնեց համակողմանի զարգացման, հարաճուն վերելքի
ու ստեղծագործական սխրանքների ճանապարհը: Նա Սովետական Միության
ժողովուրդների հետ համագործակցելով, ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգ-
նությամբ, ձեռնամուխ եղավ ստեղծագործական աշխատանքի և պատմակա-
նորեն ամենակարճ ժամանակամիջոցում Հայաստանը դարձրեց զարգացած



ինդուստրիայի և մեքենայացված գյուղատնտեսության երկիր: Ծաղկուն Սովե-
տական Հայաստանը ժողովրդական տնտեսության զարգացման բոլոր բնա-
գավառներում, այդ թվում և գյուղատնտեսության մարզում, ձեռք է բերել
խոշոր հաջողություններ:
Սովետական իշխանության անցած տարիները հանդիսացան գյուղատըն-
տեսության սոցիալ-տնտեսական վերակառուցման և գյուղացիության նյու-
թական ու կուլտուրական կյանքի արմատական վերափոխման տարիներ: Սո-
ցիալիստական կարգերի առավելության շնորհիվ 1928 թ. գերազանցվեց Հա-
յաստանի գյուղատնտեսության 1913 թ. մակարդակը: Իսկ այժմ գյուղատնտե-
սական մթերքների արտադրությունը, 1913 թ. համեմատությամբ, աճել է ա-
վելի քան չորս անգամ:
Գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման շնորհիվ գյուղա-
ցիական մանր, մենատնտեսական արտադրությունը փոխարինվեց խոշոր կոլ-
տնտեսային արտադրությամբ: Գյուղում հաստատվեց արտադրամիջոցների
հանրային սեփականություն, ձևավորվեցին նոր, սոցիալիստական արտադրա-
հարաբերություններ: Նախկին գյուղացիության փոխարեն, որը մասնատված
էր սոցիալական տարբեր խմբավորումների, ստեղծվեց նոր, կոլտնտեսային
գյուղացիություն: Այժմ հանրապետությունում կան 476 կոլտնտեսություն, 306
սովխոզ և գյուղատնտեսական այլ պետական ձեռնարկություններ: Հողատա-
րածության միջին չափը մեկ կոլտնտեսությունում կազմում է 1420 և մեկ սով-
խոզում՝ 3 հազար հեկտար:
Հանրապետության գյուղատնտեսության զարգացման համար սովետա-
կան կառավարությունը հսկայական միջոցներ է տրամադրել: Բավական է ա-
սել, որ անցած 50 տարում կոլտնտեսություններում ու սովխոզներում կապի-
տալ ներդրումները կազմել են 1 միլիարդ 211 միլիոն ռուբլի, որից 766 միլիո-
նը ներդրված է վերջին 10 տարում: Դրանց շնորհիվ խոշոր գործ է կատարված
գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազայի ամրապնդման, հիմնա-
կան արտադրաֆոնդերի զարգացման, կուլտուր-կենցաղային շինարարության
ծավալման, կոլտնտեսությունների ու սովխոզների տեխնիկական զինվածու-
թյան և մեքենայացման աշխատանքի ընդլայնման ուղղությամբ: Գոհունա-
կությամբ պետք է նշել, որ ներկայումս հանրապետության համայնական դաշ-
տերում աշխատում են 9.503 տրակտոր. դա 8,5 անգամ ավելի է 1940 թվա-
կանին ունեցած տրակտորներից: Հացահատիկային կոմբայնների թիվը հաս-
նում է 1.624-ի կամ հինգ ու կես անգամ ավելի է, քան կար 1940 թվականին:
Համարյա նույն չափերով ավելացել են գութանները, շարքացանները և գյու-
ղատնտեսական մյուս մեքենաները:
Մինչև 1950 թվականն անասնապահական ֆերմաներում համարյա ոչ մի
աշխատանք մեքենայացված չէր: Այդ ժամանակից սկսած ֆերմաներում աս-
տիճանաբար տեղակայվեցին ջրի ավտոմատ խմոցներ, կերի փոխադրման և
կերի վերամշակման մեքենաներ: Թռչնաբուծա-
կան ֆաբրիկաներում վերջին չորս տարում տեղադրվել են տարբեր տիպի ավ-
տոմատացված սարքավորումներ:
Գյուղատնտեսության մեջ կատարված տեխնիկական հեղաշրջման մասին
է վկայում էներգետիկ ռեսուրսների օգտագործումը: Այսպես, եթե նախասովե-
տական շրջանում Հայաստանի գյուղատնտեսության մեջ միակ շարժիչ ուժը
բանող անասուններն էին, ապա 1969 թվականին էներգետիկ ռեսուրսների
ոլորտում մեքենայական շարժիչների բաժինը կազմեց 99,4 տոկոս: Գնալով

գյուղատնտեսության մեջ լայնորեն մուտք է գործում նաև էլեկտրաէներգիան։ Մեր բոլոր գյուղերն ու ավանները վաղուց ապահովված են էլեկտրական լույսով։

Հանրապետության գյուղատնտեսական հողատարածությունները պատված են լայն ու նեղ կապույտ ժապավեններով՝ ոռոգման ջրանցքներով, որոնց կենարար ջուրը շունչ ու կենդանություն է տալիս դարերի ընթացքում արևից խանձված հողին։ Թալինի, Աշտարակի, Աբովյանի, Հոկտեմբերյանի, Արարատի և մի շարք այլ շրջանների երբեմնի քարքարոտ, կիսաանապատային տարածությունների հազարավոր հեկտարներ այժմ դարձել են ծաղկուն այգեստաններ։ Բավական է նշել, որ ներկայումս Հայաստանում ոռոգվող հողատարածությունները կազմում են ավելի քան 260 հազար հեկտար, 1913 թվականի 97 հազարի և 1919 թվականի 60 հազար հեկտարի դիմաց։ Միայն 1969 թվականին ջրաշինարարության համար ներդրվեց 29,9 միլիոն ռուբլի։ Դա հնարավորություն տվեց նոր ոռոգվող հողատարածություններն ավելացնել 10000 հեկտարով, արոտավայրերի ջրարբիացումը՝ 2900 հեկտարով, հողերի հարթեցումը՝ 6000 հեկտարով և ոռոգման ցանցի վերակառուցումը՝ 4700 հեկտարով։

Ոռոգելի հողատարածությունների ընդարձակման շնորհիվ նոր թափով զարգացան խաղողագործությունն ու պտղաբուծությունը։ Այգիների ընդհանուր տարածություններն ընդարձակվեցին ավելի քան 10 անգամ։

Հայաստանի գյուղատնտեսության առաջատար ճյուղերից է բուսաբուծությունը։ Մեր հանրապետության բնակլիմայական պայմանները թույլ են տալիս մշակելու բազմատեսակ կուլտուրաներ՝ ինչպես ջերմասեր, այնպես էլ ցրտադիմացկուն։

Թե ինչպես է ընթացել հանրապետության խաղողագործության և պտղաբուծության զարգացումը թեկուզ վերջին երկու տասնամյակներում, դա կարելի է տեսնել ներքոհիշյալ աղյուսակներում.

Այգեգործությունը Հայկական ՍՍՀ-ում
*(ըստ տարիների)*

| Ցուցանիշը | 1950 | 1960 | 1969 |
|---|---|---|---|
| Տարածությունը բոլոր կատեգորիայի տնտեսություններում (հազ. հեկտար) | 19,2 | 30,9 | 36,8 |
| Բոլոր կատեգորիայի տնտեսությունների համախառն բերքը (հազ. ցենտներ) | 495,7 | 915,7 | 1950,0 |

Պտղաբուծությունը Հայկական ՍՍՀ-ում
*(ըստ տարիների)*

| | | | |
|---|---|---|---|
| Տարածությունը բոլոր կատեգորիայի տնտեսություններում (հազ. հեկտար) | 15,5 | 24,4 | 42,6 |
| Բոլոր կատեգորիայի տնտեսության համախառն բերքը (հազ. ցենտներ) | 185,1 | 482,9 | 702,0 |

Այսպիսով, հանրապետությունում խաղողագործությունը և պտղաբուծությունն առանձնապես մեծ չափով զարգացան վերջին տասնամյակներում, երբ խաղողի և պտղատու այգիների տարածությունը 55,3 հազար հեկտարից հասավ 79,4 հազար հեկտարի։

Եթե մոտ անցյալում խաղողագործության և պտղաբուծության զարգացման հիմնական գոտին Արարատյան դաշտն էր, ապա այժմ, ոռոգելի նոր



հողերի առկայության պայմաններում, այն ընդարձակվել է և ընդգրկում է Աշտարակի, Թալինի, Աբովյանի, ինչպես նաև հյուսիս-արևելյան՝ Նոյեմբերյանի, Թումանյանի, Իջևանի, Շամշադինի, մասամբ Եղեգնաձորի և Զանգեզուրի շրջանները։ Շնորհիվ զարգացման բարձր տեմպերի, այդ շրջաններում այգեգործությունն ու պտղաբուծությունը երկրորդական, օժանդակ ճյուղերից վերածվել են հիմնական ճյուղերի։

Վերջին տարիներին պտղաբուծությունը լայն տարածում է գտել հանրապետության լեռնային շրջաններում, առանձնապես՝ Սիսիանում, Մարտունիում, Կամոյում, Հրազդանում, Ախուրյանում։ Այդ շրջանների պտղատու այգիների տարածությունները հասնում են 2545 հեկտարի, որից միայն վերջին երեք տարում հիմնվել են 750 հեկտարը։

Հայաստանի խաղողի ասորտիմենտը հետզհետե հարստանում է այգեգործության և պտղաբուծության գիտահետազոտական ինստիտուտի սելեկցիոներների՝ Սուրեն Պողոսյանի, Սուսաննա Խաչատրյանի, Վարդան Սարգըսյանի և ուրիշների ստեղծած լավագույն սորտերով։ 1969 թվականին լավ աշխատեցին հանրապետության խաղողագործները, որոնք պլանով նախատեսված 170 հազար տոննայի դիմաց պետությանը հանձնեցին 180,5 հազար տոննա խաղող։

Չնայած այգեգործության և պտղաբուծության զգալի զարգացմանը, առանձին շրջաններում (Եղեգնաձոր, Թումանյան, Սպիտակ, Գորիս և այլն) դանդաղ է ընթանում այդ արժեքավոր կուլտուրաների տարածությունների ընդարձակումը։ Բազմամյա տնկիների տարածությունների դանդաղ ընդարձակման հետ մեկտեղ, մի շարք շրջաններում դեռևս ցածր է դրանց բերքատվությունը։ Այսպես՝ վերջին 5 տարում պտղատու կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը Ստեփանավանի շրջանում եղել է 6,6, Սպիտակում՝ 17,7, Թումանյանում՝ 21,2 ցենտներ և այլն։ Նույն ժամանակամիջոցում խաղողի բերքատվությունը Եղեգնաձորի շրջանում եղել է 13,4 ցենտներ, Էջմիածնի շրջանում՝ 29,3 ցենտներ և այլն։

Վերը նշված և մի շարք այլ շրջաններում խաղողի ու պտղի ցածր բերքատվությունը բացատրվում է նրանով, որ դեռևս վատ են մշակվում այգիները, ցածր է դրանց լիարժեքությունը, անբավարար է պայքարը հիվանդությունների ու վնասատուների դեմ և, վերջապես, բերքահավաքի վատ կազմակերպման հետևանքով փչանում է բերքի զգալի մասը։

Նախասովետական Հայաստանում բանջարաբուծությունը գյուղատնտեսության ամենահետամնաց ճյուղերից էր՝ մշակության ցածր ագրոտեխնիկայով։ Բանջարեղենի տեսակային կազմը խիստ սահմանափակ էր, իսկ բերքատվությունը՝ ցածր։

Սովետական իշխանության տարիներին իրագործած մի շարք միջոցառումների շնորհիվ ընդարձակվեցին բանջարեղենի ցանքատարածությունները, ստեղծվեցին քաղաքամերձ մասնագիտացված տնտեսություններ։ Եթե հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում բանջարանոցային կուլտուրաների ցանքատարածությունը 1932 թ. կազմում էր 2,2 հազար հեկտար, ապա 1969 թ. այն հասավ 8,9 հազար հեկտարի կամ ընդարձակվեց 4 անգամ։ Ցանքատարածությունների ընդարձակման հետ մեկտեղ բարձրացավ բերքատվությունը. այսպես, եթե 1919 թվականին բանջարանոցային կուլտուրաների բերքատվությունը մեկ հեկտարից կազմում էր 79 ցենտներ, ապա 1969 թվականին այն կազմեց 197 ցենտներ կամ ավելացավ մոտ 2,5 անգամ։

*բերքատվության բարձրացման, ցանքատարածությունների ընդարձակման շնորհիվ զգալիորեն աճեց համախառն արտադրանքը: Այսպես, եթե 1913 թվականին արտադրվել է 30 հազար տոննա բանջարեղեն, ապա 1969 թվականին միայն կոլտնտեսություններում և սովխոզներում այն հասավ 176 հազար տոննայի:*

*Բանջարային կուլտուրաների հետ միասին տարեցտարի ընդարձակվում են նաև բոստանային կուլտուրաների ցանքատարածությունները: Հանրապետության բանջարաբույծների քրտնաջան աշխատանքով 1969 թվականին համայնական դաշտերում աճեցվեց բանջարա-բոստանային կուլտուրաների առատ բերք: Պլանով նախատեսված 207 հազար տոննայի փոխարեն պետությանը հանձնվեց 224.700 տոննա բանջարային և բոստանային կուլտուրաների բերք և պետական պլանային առաջադրանքը կատարվեց 108,6 տոկոսով:*

*Հանրապետությունում մեծ ուշադրություն է նվիրվում տեխնիկական կուլտուրաների մշակության, ցանքատարածությունների ընդարձակման և համախառն արտադրանքի ավելացմանը: Տեխնիկական կուլտուրաներից այժմ մեզ մոտ մշակում են ծխախոտ, շաքարի ճակնդեղ, կտավհատ, խորդենի:*

*Ծխախոտի լայն մասշտաբներով մշակությունը Հայաստանում սկսվել է սովետական իշխանության տարիներին: Խոշոր է ծխախոտի դերը հանրապետության էկոնոմիկայում, այդ պատճառով մեծ ուշադրություն է նվիրվում մշակվող տարածությունների ընդարձակման և բերքատվության բարձրացման վրա: Եթե ծխախոտի ցանքատարածությունը 1913 թվականին 0,1 հազար հեկտար էր, ապա 1969 թվականին հասավ 8 հազարի: Միության մեջ ծխախոտի բերքատվությամբ Հայաստանը գրավում է առաջին տեղերից մեկը: Շամշադինի, Իջևանի, Մարտունու շրջանների և շատ առաջավոր տնտեսություններ ու աշխատողներ ծխախոտի մշակության և դրա բերքատվության բարձրացման գործում ձեռք բերած աչքի ընկնող հաջողությունների համար բազմիցս եղել են ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի մասնակիցներ, արժանացել են ոսկե մեդալների, դիպլոմների և այլ պարգևների: Միության մեջ Հայաստանն այժմ համարվում է ծխախոտի արժեքավոր սորտերի մշակության կարևոր շրջան: Միության ծխախոտի արտադրության 10—12 տոկոսը տալիս է մեր հանրապետությունը:*

*Հայաստանում մշակվող տեխնիկական կուլտուրաներից է շաքարի ճակնդեղը, որի մշակությամբ զբաղվում են Ախուրյանի, Սպիտակի, մասամբ նաև Արթիկի և Ամասիայի շրջանների տնտեսությունները: 1969 թ. հանրապետությունում շաքարի ճակնդեղի ցանքատարածությունները կազմեցին 4,4 հազար հեկտար, իսկ յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը՝ 270 ցենտներ:*

*Մեր հանրապետության գյուղատնտեսական արտադրության մեջ ուշագրավ է եթերայուղատու՝ խորդենու մշակությունը: Դրա ցանքատարածությունները 1966 թ. 233 հեկտարից այժմ հասել են 1100 հեկտարի, իսկ առաջիկա հնգամյակում կհասնեն 2000 հեկտարի:*

*Այժմ մեր վարելահողերի մոտ 50 տոկոսը հատկացվում է հացահատիկային և հատիկաընդեղեն կուլտուրաների մշակությանը, որի մեքենայացման աստիճանի բարձրացման, նոր սորտերի ստեղծման և բարձր ագրոտեխնիկայի շնորհիվ հացահատիկի բերքատվությունը 1969 թ., 1913 թ. համեմատությամբ կրկնապատկվել է:*

*Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման, ինչ-*



*պես և որակի բարելավման գործում մեծ է սերմնաբուծության դերը: Նախասովետական Հայաստանում չկար սելեկցիոն սերմնաբուծական ոչ մի կազմակերպություն կամ գիտահետազոտական հիմնարկություն: Կուսակցության և կառավարության 1937 թվականի որոշմամբ հանրապետությունում կազմակերպվեցին հացահատիկային կուլտուրաների 33, խոտերի՝ 16 հատուկ սերմնաբուծական տնտեսություններ, էլիտային սերմնաբուծական 9 տնտեսություններ, 16 պետական սորտափորձադաշտեր, պետսորտֆոնդ՝ իր ցանցով և սելեկցիոն կայան՝ Լենինականում: Սերմնաբուծության այդ ցանցը զգալի աշխատանք կատարեց սորտային սերմերի արտադրության ու մատակարարման ասպարեզում:*

*Մինչև 1949 թվականը մեր հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում մշակվող աշնանացան ցորենների 18, գարնանացան ցորենների 9 սորտերից միայն 4-ն են եղել տեղական հինավուրց պոպուլյացիաներ: Գիտահետազոտական ինստիտուտների և առանձին մասնագետների ջանքերով առաջին անգամ, 1949 թվականին, շրջանացվեցին աշնանացան ցորենի «Արտաշատի—4—42» և «Արմյանկա» սորտերը: 1967 թվականին բերքի աշնանացան ցորենների սորտերից 7-ը, գարնանացանից 2-ը, գարնանացան գարիներից 1-ը ստացվել են մեր հանրապետության սելեկցիոներների ջանքերով: Բացի այդ, շրջանացվել և արտադրությանն են հանձնվել նաև հատիկա-ընդեղենների, յուղատու կտավատի, ոսպի, պոմիդորի, բադրիջանի, սեխի, ծխախոտի սելեկցիոն նոր սորտեր և հիբրիդներ: Հատուկ ուշադրություն է նվիրվում «Բեզոստա—1» («Անքիստ»), «Միրոնովկա—808» և այլ նոր սորտերի օգտագործման վրա, որոնք մեր պայմաններում ևս ռեկորդային բերք են տալիս:*

*Հաջողությունները զգալի են խաղողի տեխնիկական և սեղանի վաղահաս սորտերի ստեղծման ու տարածման գործում: Հանրապետության այգեգործության, գինեգործության և պտղաբուծության գիտահետազոտական ինստիտուտի աշխատողներն ստացել են խաղողի տեխնիկական և սեղանի բազմաթիվ սորտեր, որոնցից 7-ը շրջանացված են: Էական հաջողություններ են ձեռք բերված պոմիդորի նոր սորտերի ստացման գործում: Այժմ մեր տնտեսություններում մշակվող պոմիդորի ցանքատարածությունների 85 տոկոսը զբաղեցված է բանջարաբուծության փորձա-սելեկցիոն կայանում ստեղծված սորտերով. սելեկցիոներ Ա. Անանյանի ստեղծած 12 սորտերից 6-ը շրջանացված են:*

*Մինչև սովետական կարգերի հաստատումը կազմակերպված պայքար չի մղվել գյուղատնտեսական կուլտուրաների հիվանդությունների և վնասատուների դեմ: Պլանավորված ձևով այդ պայքարն սկսվում է կոլտնտեսությունների, սովխոզների և մեքենատրակտորային կայանների ստեղծումից հետո, երբ տեղերն ապահովված էին մասնագետներով ու թունաքիմիկատներով: Ներկայումս տարեկան ավելի քան 170—200 հազար հեկտար տարածության վրա ինքնաթիռներով պայքար է տարվում մկնանման կրծողների և 10—12 հազար հեկտարի վրա՝ մոլախոտերի ու կարտոֆիլի ֆիտոֆտորա հիվանդության դեմ: Հանրապետության դաշտերում օգտագործվում են նաև ուղղաթիռներ:*

*Չնայած ձեռք բերած հաջողություններին, հանրապետության առանձին շրջաններում և տնտեսություններում դեռևս լուրջ թերություններ կան գյուղատնտեսության վարման կուլտուրայի բարձրացման, մշակության ագրոտեխնիկական միջոցառումների կոմպլեքսի ներդրման, ցանքաշրջանառությունների կիրառման, դաշտավարական առանձին կուլտուրաների (հացահատիկային,*

բազմամյա ցանովի խոտաբույսերի և այլն) սերմնաբուծության գործի կազմակերպման ուղղությամբ և այլն։

Դեռևս անբավարար են գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունների կենտրոնացման, շրջանների ու տնտեսությունների մասնագիտացման ուղղությամբ տարվող աշխատանքները։ Այդ և մյուս այլ պատճառների հետևանքով մի շարք շրջաններում ցածր է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։ Այսպես, վերջին տասը տարում հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը Ազիզբեկովի, Ղուկասյանի, Կրասնոսելսկի և մի շարք այլ շրջաններում տատանվել է 5—6 ցենտների սահմաններում։ Ծխախոտի միջին բերքատվությունը Ղափանի շրջանում եղել է 5—6, Գորիսում՝ 10—12, Եղեգնաձորում՝ 12—13 ցենտներ և այլն։ Բանջարեղենի միջին բերքատվությունը Իջևանի, Նոյեմբերյանի, Սպիտակի շրջաններում տատանվել է 60—70 ցենտների սահմաններում։

Հայաստանի գյուղատնտեսության հիմնական ճյուղերից է անասնաբուծությունը, որի զարգացմանը մեծ չափով նպաստում են կլիմայական պայմանները։

Սովետական կարգերի հաստատումից հետո հսկայական ջանքեր են գործադրվել անասնաբուծությունը պատշաճ բարձրության վրա դնելու գործում։ Մեր հաջողություններն այդ մարզում երևում են հետևյալ տվյալներից.

Անասունների գլխաքանակի աճը ըստ տարիների
(հազար գլուխներով)

| Տեսակային կազմը | Բոլոր տնտեսություններում | | Այդ թվում հանրային տնտեսություն. | | Աճի տոկոսը 1968 թ. 1941 թ. համեմատ. |
|---|---|---|---|---|---|
| | 1941 | 1968 | 1941 | 1968 | |
| Խոշոր եղջերավոր անասուններ | 598,3 | 705,1 | 291,2 | 443,0 | 152,1 |
| այդ թվում՝ | | | | | |
| կովեր | 212,4 | 281,1 | 48,2 | 144,8 | 300,0 |
| ոչխար, այծ | 1221,3 | 2366,6 | 658,9 | 1400,0 | 212,4 |
| խոզեր | 58,8 | 92,6 | 31,3 | 68,1 | 217,6 |
| Թռչուններ բոլոր տեսակի | — | 3830,1 | — | 1674 | — |

Աղյուսակից երևում է, որ բոլոր տնտեսություններում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն աճել է ավելի քան 106 հազար գլխով, կովերինը՝ 68700-ով, ոչխարներինը՝ 1145300, խոզերինը՝ 33.800 գլխով։ Անասունների գլխաքանակի աճին զուգընթաց ավելացել է նաև անասնաբուծական մթերքների արտադրությունը, բարձրացել անասունների մթերատվությունը։

Անասնաբուծական մթերքների արտադրության աճը
(ըստ տարիների)

| | Չափի միավորը | Բոլոր տնտեսություններում | | Հանրային տնտեսություններում | |
|---|---|---|---|---|---|
| | | 1940 | 1968 | 1941 | 1968 |
| Միս կենդանի քաշով | հազ. տոննա | 39,9 | 79,6 | 15,4 | 48,3 |
| Կաթ | » | 170,0 | 373,7 | 49,4 | 232,6 |
| Բուրդ | տոննա | 1500 | 4316 | 977 | 2921 |
| Ձու | մլն հատ | 46,0 | 200,4 | 1,5 | 66,3 |



Անասունների ու դրանց մթերատվության աճը հնարավորություն ընձեռեց հանրապետությանը ժամկետից շուտ կատարել պետական գնումների և հանձնումների պլանները։ 1969 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, բոլոր տնտեսություններից պետական մթերումներն ավելացել են՝ կաթինը՝ 8,1, ձվինը՝ ավելի քան 13, բրդինը՝ 3,5 անգամ։

Մսի արտադրության ավելացմանը մեծ չափով նպաստել է տնտեսություններում խոշոր եղջերավոր անասունների ու ոչխարների արոտային գիրացման և խոզերի բտման կազմակերպումը։ Ամեն տարի կոլտնտեսություններում և սովխոզներում արոտային շրջանում գիրացվում են 70—80 հազար տավար և 150—200 հազար ոչխար։

Անցած 50 տարվա ընթացքում կովերի գլխաքանակի ավելացման հետ մեկտեղ հանրապետությունը լուրջ հաջողությունների է հասել նաև կաթնատվության բարձրացման գործում։ Այսպես, եթե 1926 թ. մեկ կովի միջին կաթնատվությունը եղել է 536 կգ (ըստ ակադեմիկոս Ա. Ջ. Թամամշևի), 1968 թվականին այն կազմում էր 1577 կգ, այսինքն՝ ավելացել է մոտ 2,5 անգամ։

Կովերի կաթնատվության ավելի բարձր ցուցանիշների հասան Շահումյանի, Կալինինոյի, Ստեփանավանի, Հոկտեմբերյանի շրջանների կոլտնտեսություններն ու սովխոզները։ Առանձին առաջավոր տնտեսություններում յուրաքանչյուր կովի միջին կաթնատվությունը կազմել է՝ Լոռվա տոհմային բուծարանում՝ 3674 կգ, Կալինինոյի սովխոզում՝ 3219, անասնապահականանասնաբուծական գիտահետազոտական ինստիտուտի Կալինինոյի էքսպերիմենտալ բազայում 3450 կգ։ Շահումյանի շրջանի ՍՄԿԿ XVIII համագումարի անվան կոլտնտեսություններում՝ 3935 կգ և այլն։

Ոչխարների տրամախաչման և ցեղի բարելավման շնորհիվ հանրապետության տնտեսություններում զգալի չափով աճել է արտադրվող բրդի քանակը և, հատկապես, նուրբ ու կիսանուրբ թանկարժեք բուրդը։ Այսպես, եթե 1953 թվականին կոլտնտեսություններում և սովխոզներում արտադրվել է 2300 տոննա բուրդ, ապա 1969 թվականին այն հասավ 3092 տոննայի, կամ բրդի արտադրությունը նույն ժամանակաշրջանում աճել է 35 տոկոսով։

Հատուկ ուշադրություն է նվիրվել նաև անասունների ցեղային կազմի բարելավմանը։ Այսպես, եթե 1935 թ. պետական տնտեսություններում և կոլտնտեսություններում տոհմային խոշոր եղջերավոր անասունների տեսակարար կշիռը մթերատու անասունների ընդհանուր նախիրում կազմում էր 3,6 տոկոս, ապա 1969 թվականին կազմեց 77,7 տոկոս, ցեղային ոչխարներինը՝ համապատասխանաբար՝ 0,2 և 98,3, խոզերինը՝ 18,3 և 85,2 տոկոս։

Հանրային անասունները կերով ապահովելու համար տարեցտարի ընդարձակվում են ցանովի կերային կուլտուրաների ցանքատարածությունները, ավելանում է միջին բերքատվությունը, բարելավվում են բնական խոտհարքներն ու արոտները։ Ընդհանուր առմամբ կուտակվող խոտի և սիլոսի մեջ աստիճանաբար նվազում է վայրի խոտաբույսերի տեսակարար կշիռը, ավելանում է ցանովի կերային կուլտուրաներից կուտակվող խոտի ու պատրաստվող սիլոսի քանակը։

Քաղաքային ազգաբնակչության աճող պահանջմունքներն անասնաբուծության մթերքներով բավարարելու գործում որոշակի դեր ունի նաև թռչնաբուծությունը, որն անասնապահության ամենավաղահաս ճյուղն է։ Հանրային տնտեսություններում թռչունների գլխաքանակը 1965 թվականի 1000900-ից

1969 թվականին հասավ 1987000-ի կամ ավելացավ մոտ 2 անգամ։ Ձվի ար-
տադրությունը 1965 թ. եղել է 48600 հազար, իսկ 1969 թ.՝ 81367 հազար հատ
կամ ավելացել է 1,7 անգամ։ Նույն ժամանակամիջոցում թռչունի մսի արտա-
դրությունն ավելացել է 1,5 անգամ և 1969 թվականին պետությանը հանձնվել
է 32279 ցենտներ միս։

Արդյունաբերական թռչնաբուծությունը Հայաստանում զարգացման մեծ
հեռանկարներ ունի։ Սովետաշենում կառուցվում է Սովետական Միության խո-
շորագույն ֆաբրիկաներից մեկը, տարեկան 4 միլիոն բրոյլերի (մսացու ճտե-
րի) կարողությամբ, որը մասամբ շահագործման կհանձնվի 1970 թվականին և
տարեկան կտա 50 հազար ցենտներ սպանդանոցային քաշով թռչունի դիետիկ
միս։ Առաջիկայում նման թռչնաբուծական ֆերմաներ կկառուցվեն Սևանում
(200 հազար ածան հավի կարողությամբ), Կիրովականում (2 միլիոն բրոյլեր-
ների կարողությամբ), Լենինականում (50 հազար ցենտներ միս արտադրելու
կարողությամբ), Երևանում (500 հազար ածան հավի կարողությամբ) և այլն։

Սոցիալ-տնտեսական խոշոր վերափոխումների հետ մեկտեղ հայկական
գյուղում տեղի ունեցավ կուլտուրական հեղափոխություն։ Ամենուր իրագործ-
վում է համընդհանուր ութնամյա պարտադիր ուսուցումը և լայն չափով տաuն-
ամյա միջնակարգ կրթությունը։ Գյուղական երիտասարդության մեծ մասը
ավարտելով միջնակարգ դպրոցը, սովորում է բարձրագույն ուսումնական
հաստատություններում, տեխնիկումներում, մասնագիտացված դպրոցներում
և ուսումնարաններում։ Նախասովետական Հայաստանում այդպիսի ուսում-
նական հաստատություններ ընդհանրապես գոյություն չունեին։ Միայն կոլ-
տնտեսություններում և սովխոզներում աշխատում են 8766 գյուղատնտեսա-
կան մասնագետներ, այդ թվում՝ 3369 մարդ բարձրագույն կրթությամբ։ 1969
թվականին գյուղատնտեսական բուհերում սովորում էր 6 հազար և տեխնի-
կումներում՝ 5966 ուսանող։ Գյուղատնտեսական բուհերում և տեխնիկումնե-
րում հիմնականում սովորում են գյուղից եկած երիտասարդները։

Ներկայումս գյուղատնտեսական հիմնարկություններում և բարձրագույն
ուսումնական հաստատություններում գյուղատնտեսական գիտության պրոբ-
լեմների մշակմանը մասնակցում են գիտությունների հարյուրավոր դոկտոր-
ներ և թեկնածուներ։ Միայն գյուղատնտեսության մինիստրության սիստեմի
գիտահետազոտական հիմնարկություններում աշխատում են 25-ից ավելի գի-
տությունների դոկտորներ և 250-ից ավելի թեկնածուներ, որոնք հետազոտություն-
ներ են կատարում շուրջ 130 գիտական թեմաներով։

Հանրապետության գիտահետազոտական հիմնարկությունների գիտական
աշխատողները զգալի աշխատանք են կատարել գյուղատնտեսական արտա-
դրության զարգացման կարևոր պրոբլեմների լուծման գործում։ Նրանց ջան-
քերով ստեղծված են գյուղատնտեսական կուլտուրաների բարձրարժեք և տեղի
պայմաններին հարմարված սորտեր և հիբրիդներ։

Մեծ հաջողությամբ մշակվում և արտադրության մեջ ներդրվում են աղա-
կալած հողերի աղազերծման ու հողերի էրոզիայի դեմ պայքարի նորագույն
եղանակները։ Ավարտված են հանրապետության տնտեսությունների վարելա-
հողերի ագրոքիմիական բնութագրման և քարտեզագրման աշխատանքները։

Զգալի են հաջողություններն անասնապահական և անասնաբուժական գի-
տահետազոտական ինստիտուտում։ Այնտեղ են մշակվել անասնաբուծության,
կերարտադրության և անասնաբուժության մի շարք պրոբլեմներ, որոնք ունեն
ինչպես գիտական, այնպես էլ ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն։



Կատարելագործվում է տավարի կովկասյան գորշ ցեղը, որը կազմում է
հանրապետության խոշոր եղջերավոր անասունների ընդհանուր գլխաքանակի
մոտ 80 տոկոսը։ Մշակված են հարյուրից ավելի ագրոզոոտեխնիկական մի-
ջոցառումներ, որոնց կիրառումը նպաստել է գյուղատնտեսական մթերքների
արտադրության ավելացմանը։

Անասնապահության բնագավառում ձեռք բերված հաջողությունների հետ
միասին դեռևս կան լուրջ թերություններ ու բացեր։ Վերջին տարիների ընթաց-
քում 100 կովից, միջին հաշվով, ստացվել է 74—78 հորթ, հարյուր մերունից՝
820—950 խոճկոր, հարյուր մայր ոչխարից՝ 74—79 գառ, որը բացասաբար է
անդրադառնում անասնապահության զարգացման վրա։

Դեռևս մեծ տոկոս են կազմում գյուղատնտեսական կենդանիների ան-
կումներն ու հարկադիր մորթը։ Անասնապահական ֆերմաներում ցածր է մայ-
րական կազմի տեսակարար կշիռը. այն կազմում է հոտի 34,6 տոկոսը, ա-
ռանձին շրջաններում դրությունն ավելի վատ է։ Չնայած վերջին տարիներում
նկատվում է կովերի գլխաքանակի որոշ ավելացում, սակայն դա հիմնակա-
նում կատարվել է գնումների հաշվին։

Անասունների արոտային գիրացումն ու բտումը անբավարար կազմակեր-
պելու հետևանքով մսի մթերման հանձնված տավարի կենդանի քաշը 1969 թ.
կոլտնտեսություններում միջինը կազմել է 223 կգ, իսկ սովխոզներում՝ 196 կգ,
ոչխարինը, համապատասխանաբար՝ 37 և 31 կգ, խոզերինը՝ 79 և 58 կգ։
Հանձնված տավարի և ոչխարի մսի 30—31 տոկոսը եղել է միջակից ցածր գի-
րության և հյուծված։

Հանրապետության շատ կոլտնտեսություններում ու, հատկապես, սով-
խոզներում դեռևս լուրջ թերություններ կան հիմնական արտադրամիջոցների
օգտագործման, արտադրության արդյունավետության բարձրացման, կապի-
տալ ներդրումների փոխհատուցման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և
տնտհաշվարկի կիրառման ասպարեզներում։ Տնտեսությունն անհաշվենկատ
վարելու, տնտեսագիտական աշխատանքն անտեսելու և արտադրությունը վատ
կազմակերպելու հետևանքով բազմաթիվ սովխոզներ տնտեսական տարին
փակում են մեծ վնասով, որը հանդուրժել չի կարելի։

Առաջիկայում ՀՍՍՀ գյուղատնտեսության զարգացման հիմնական խնդ-
իրներն են՝ ավելի լրիվ և արդյունավետ օգտագործել տեղական բնատնտե-
սական պայմանները, առավելագույն չափով զարգացնել գյուղատնտեսության
հիմնական ճյուղերը՝ խաղողագործությունը, պտղաբուծությունը, ուժեղացնել
քաղաքամերձ տնտեսությունների մասնագիտացումը՝ քաղաքների բնակչու-
թյանն անհրաժեշտ մթերքներով (առաջին հերթին՝ թարմ կաթնամթերքներով
և բանջարեղեններով) ապահովելու համար, հասնել արտադրության առավե-
լագույն շահութաբերության, որը գյուղատնտեսության զարգացմանը նպաս-
տող կարևոր գործոնն է։

Հանրապետության գյուղատնտեսության աշխատողները ոգեշնչված կոլ-
տնտեսականների համամիութենական երրորդ համագումարի և գյուղատնտե-
սության զարգացման մասին կուսակցության ու կառավարության որոշումնե-
րով, առաջիկայում կաշխատեն ավելի լավ, իրենց ամբողջ եռանդը կնվիրեն
ավելի արագ տեմպերով բարձրացնելու գյուղատնտեսական արտադրությունը։

րակական գործունեությունը։ Մեր ժողովրդի սիրած վայրերից են և Խ. Աբովյանի ու Ավ. Իսահակյանի տուն-թանգարանները։ Վերջին 3 տարիների ընթացքում ստեղծվել են մի շարք նոր թանգարաններ։ Երևանում բացվել են գույների վարպետ Մարտիրոս Սարյանի ստեղծագործությունների, կոմպոզիտոր Ալ. Սպենդիարյանի, Էջմիածնում՝ հայ երգի նահապետ Կոմիտասի թանգարանները։ Շուտով Գորիսում կբացվի մեր ժողովրդի ամենասիրված արձակագիրներից մեկի՝ Ակսել Բակունցի տուն-թանգարանը, իսկ Մասիսի շրջանի Ղուկասավան գյուղում՝ Հայաստանի կոմերիտմիության պատմության թանգարանը։ Կստեղծվի նաև հեղափոխության բոցաշունչ երգիչ Եղիշե Չարենցի տուն-թանգարանը՝ Երևանում։

Արին-Բերդում՝ Երևանի հիմնադրման վայրում, 2750-ամյա հնություն ունեցող Էրեբունի ամրոցի մոտ, 1969 թ. հանդիսավորությամբ բացվեց Էրեբունի հուշարձան-թանգարանը։ Հետաքրքրական է և Էջմիածնի շրջանի Վերին Ձիլվա գյուղի մոտ՝ Մեծամորում բացված Մեծամորի պատմա-ճնագիտական թանգարանը. 6 հազար տարի առաջ այստեղ ապրել են մարդիկ, գործել են մետաղամշակման արհեստանոցներ։ Մի քանի տարվա պեղումներն այնքան առատ նյութ են տվել ու տալիս, որ եղած ցուցասրահն արդեն շատ փոքր է և կառուցվում է Մեծամորի թանգարանի նոր շենքը, բարեկարգվում հուշարձանի շրջակայքը։

Հայրենական մեծ պատերազմին հայ ժողովրդի մասնակցության պատմությունը կհավերժացնի Հաղթանակի մոնումենտի շենքում կազմակերպվող Սովետական Հայաստանը հայրենական մեծ պատերազմում 1941—1945 թթ. թանգարանը։ Հայրենական պատերազմի ընդհանուր ֆոնի վրա կարտացոլվեն հայ ռազմիկների ու զորավարների սխրագործությունները։

Հանրապետությունում ստեղծվում են նաև հասարակական հիմունքներով գործող թանգարաններ։ Սենյակ և անկյուն-թանգարաններ են ստեղծվում դպրոցներում, շրջկենտրոններում, գյուղերում, գործարաններում (Գորիսի շրջանի Խնձորեսկ և Քարահունջ, Սիսիանի շրջանի Անգեղակոթ գյուղերում, Արտաշատի ու Սևանի շրջկենտրոններում, Թումանյանի շրջանի Թումանյան կայարանում, Հաղպատ գյուղում և այլուր)։ Անհրաժեշտ է միայն, որ այս կարևոր օջախներն ինչպես հարկն է օգտագործվեն աշխատավորության և մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության նպատակով։

Այժմ Հայաստանում գործում են 38 թանգարան (1960 թ.՝ 15), որոնցից 32-ը կուլտուրայի մինիստրության սիստեմում։ Գնալով աճում է մեր ժողովրդի հետաքրքրասիրությունը թանգարանների նկատմամբ, դրա լավագույն ապացույցը այցելուների թվի զգալի աճն է (1960 թ. 250 հազար, 1964 թ. 588 հազար, իսկ 1969 թ.՝ ավելի քան 1 միլիոն մարդ, առանց շրջիկ ցուցահանդեսների, որոնց այցելուների թիվը հասնում է 322 հազարի)։

Սակայն, պետք է ասել՝ ամեն ինչ չէ, որ կարգին է հանրապետության թանգարաններում. դրանց մի մասը, դեռևս թույլ է կապված գիտական հիմնարկների, բուհերի, տեխնիկումների, դպրոցների, արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողների կոլեկտիվների հետ. ինչպես հարկն է չեն ժողովվում, պահպանվում, գիտականորեն մշակվում թանգարանային արժեքները, պարբերաբար չեն թարմացվում, նոր նյութերով համալրվում ցուցանմուշները, հաճախ պատշաճ ձևով չի կատարվում այցելուների կուլտուրական սպասարկումը, իսկ շրջանային սովետների գործադիր կոմիտեները և նրանց կուլտուրայի բաժինները ժամանակին չեն վերանորոգում ու կարգավորում թանգարանային շենքերը։ Այս ամենն, անշուշտ, բացասաբար է անդրադառնում այդ կարևոր բնագավառի աշխատանքների վրա։

Այս տարի իր վերածննդի կիսադարյա հոբելյանն է տոնելու Սովետական Հայաստանը։ Մեր հանրապետության թանգարանների բոլոր աշխատողների հայրենասիրական պարտքն է՝ բազմակողմանի, նոր ու հետաքրքրական ձևերով ներկայացնել, ցուցադրել հայ ժողովրդի աննախընթաց նվաճումներն ու հաջողությունները կուլտուրայի և արվեստի, գիտության ու տեխնիկայի, ժողովրդական տնտեսության բնագավառներում։



# ՄԵՐ ԺՈՂՈՎՐԴԻ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԿԱՊԵՐԸ

## ԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ ՆՇԱՆԱԲԱՆՈՎ

*Ինտերնացիոնալ դաստիարակությունը նոր մարդու կոմունիստական աշխարհայացքի ձևավորման էական կողմերից մեկն է։ Այդ ձևավորումը տևական և ամենօրյա պրոցես է, որը ենթադրում է ստեղծագործական մոտեցում մարդկանց զարգացման ու նրանց գաղափարական կոփման գործին։*

*Ինտերնացիոնալ դաստիարակության խնդիրները մեծ տեղ են գրավում կուսակցական կազմակերպությունների աշխատանքներում, մասնավորապես ուսումնական հաստատություններում։ Վերջերս մեր խմբագրության աշխատակիցները ՀԿԿ Կենտկոմի գիտության և ուսումնական հաստատությունների բաժնում ծանոթացան այն աշխատանքներին, որոնք տարվում են հանրապետության բուհերում ու տեխնիկումներում ուսանող երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակության բնագավառում։*

*Ստորև հրապարակում ենք կատարված դրական աշխատանքի ամփոփագիրը։*

ՀԱՐՈՒՍՏ ու բազմերանգ է հանրապետության ուսանող երիտասարդության՝ մեր ժողովրդի մեծաթիվ, ինտելիգենտ ջոկատի կյանքը։ Մեր հանրապետությունում յուրաքանչյուր 10 հազար բնակչին 16 անգամ ավելի ուսանողներ են ընկնում, քան Թուրքիայում։ Ընթացիկ տարում հանրապետության բոլոր բուհերում սովորում են 53275 ուսանող։ Դրանք վաղվա բժիշկներն են, ինժեներները, անասնաբույժները, գյուղատնտեսները, տնտեսագետները, հազարավոր ու հազարավոր այլ մասնագետներ։ Դա՝ ժողովրդի վաղվա դեմքն է, նրա խիղճը, նրա առաջատար մտավոր ուժը։ Կյանքն արագ է զարգանում։ Այն նորանոր խնդիրներ է հարուցում։ Երիտասարդության այսօրվա ճիշտ դաստիարակությունից շատ բան է կախված։ Ուսանողությունը մտավորականության ամենազգայուն մասն է, ասում էր Վ. Ի. Լենինը (տե՛ս Երկեր, 4-րդ հր., հատ. 7, էջ 38)։

Ահա թե ինչու հանրապետության կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները հսկայական նշանակություն են տալիս ուսանողության շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքին։ Դրա օրգանական մասն է կազմում ինտերնացիոնալ դաստիարակությունը, որն ընդգրկում է ուսումնական պրոցեսը, գիտական գործունեությունը, ուսանողների հետ տարվող արտաուսումնական աշխատանքը և այլն։

Տարեցտարի ամրանում ու ընդարձակվում են հանրապետության բուհերի ուսանողների ինտերնացիոնալ կապերը։

Մոսկվայի պետհամալսարանի, Լենինգրադի նավաշինարարական ինստիտուտի, Կազանի քիմիա-տեխնոլոգիական ինստիտուտի, Մագնիտագորսկի լեռնա-մետալուրգիական ինստիտուտի, Վիլնյուսի պետական համալսարանի, Կիևի և Ռիգայի պոլիտեխնիկական ինստիտուտի կոմերիտականների հետ: Ինստիտուտի ուսանողների մի մեծ խումբ իր աշխատանքով ամեն տարի օգնել է Ղազախստանի խոպանը նվաճողներին:

Ինստիտուտը հաճախ է կազմակերպում սպորտային մրցություններ, որոնց մասնակցում են երկրի մի շարք ինդուստրիալ և պոլիտեխնիկական բուհերի ուսանողները:

**Ե**ՐԵՎԱՆԻ Վ. Յա. Բրյուսովի անվան ռուսական և օտար լեզուների ինստիտուտում սովորում են հայեր, ռուսներ, ուկրաինացիներ, վրացիներ, ադրբեջանցիներ և Միության զանազան քաղաքներից ու գյուղերից եկած պատանիներ ու աղջիկներ:

Ինստիտուտի ամբողջ ուսումնական պրոցեսը տոգորված է ինտերնացիոնալիզմի ոգով: Այլ ժողովուրդների լեզվի, պատմության և գրականության դասավանդման բուն փաստը ի սպաս է դրվում ինտերնացիոնալ դաստիարակության նպատակներին: 1969/1970 ուսումնական տարվանից ռուսական լեզվի և գրականության ֆակուլտետում մտցված է հատուկ առարկա՝ «Ռուս-հայկական գրական կապերը XI—XVI դարերում»:

Գիտահետազոտական աշխատանքների պլանում նախատեսված են ժողովուրդների կուլտուրական կապերն արտացոլող թեմաներ: Ինստիտուտը, դառնալով ռուս ականավոր բանաստեղծ-թարգմանիչ Վ. Յա. Բրյուսովի ստեղծագործությունների ուսումնասիրման հիմնական կենտրոններից մեկը, հանդես եկավ որպես համամիութենական «Բրյուսովյան ընթերցումներ» գիտական սեսիայի կազմակերպիչ: Բրյուսովյան երրորդ ընթերցումները նվիրված էին Վ. Յա. Բրյուսովի խմբագրությամբ ռուս-հայկական գրական և կուլտուրական կապերի հիանալի հուշարձանի՝ «Поэзия Армении» անթոլոգիայի լույս ընծայման 50-ամյակին: Ինստիտուտի կոլեկտիվը պատրաստվում է չորրորդ ընթերցմանը, որը նախատեսված է անցկացնել Մոսկվայում:

Ինստիտուտում կազմակերպված է «Ամիգո» ուսանողական ակումբ, որը հանդիպումներ է կազմակերպում օտարերկրյա հյուրերի և երկրի ուսանողության հետ: Ինստիտուտի ուսանողներն ակտիվորեն մասնակցում են ՌԻԳԸ-ի աշխատանքին, Թբիլիսիի և Բաքվի ուսանողների հետ սպորտային մրցություններին:

Լավագույն առաջադիմություն ունեցող խմբերը ուսման փորձի փոխանակության համար ուղարկվում են Մոսկվայի, Լենինգրադի, Ուլյանովսկի համապատասխան բուհերը: Ընթացիկ տարվա մայիսին (Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ինստիտուտում կազմակերպվեց ուսանողական 7-րդ գիտական կոնֆերանսը, որտեղ 40 զեկուցումներ կարդացին Բրյուսովի անվան ինստիտուտի և Կիևի, Թբիլիսիի, Բաքվի, Մինսկի, Ուլյանովսկի օտար լեզուների մանկավարժական ինստիտուտների ուսանողները: Ինստիտուտի 50 մարդուց բաղկացած երգչախումբը համերգ տվեց Կիևում, իսկ էստրադայինը՝ Կույբիշևում:

Անցյալ տարվա ամռանը ուսանողներից կազմված շինարարական ջոկատը աշխատեց Տոլյատի քաղաքի ավտոգործարանի շինարարությունում:

**Ռ**ՈՒՍԱՆՈՂՈՒԹՅԱՆ ինտերնացիոնալ-կոմունիստական դաստիարակության հարցերը հատուկ տեղ են գրավում Խ. Աբովյանի անվան հայկական պետական մանկավարժական ինստիտուտի ռեկտորատի, կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների գործունեության մեջ:

Ուսանող երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակության հիմնական օղակներից է ինստիտուտի ԼԿԵՄ կոմիտեին կից գործող «Բարեկամություն» ակումբը, որը տարեցտարի համալրում է իր անդամների թիվը և ավելի նպատակասլաց դարձնում իր աշխատանքների բովանդակությունը: «Բարեկամություն» ակումբում ընդունվել են ոչ միայն ուսանողները, այլև կոմերիտմիության վետերաններ, դասախոսներ, ամբիոնների վարիչներ, որոնք իրենց փորձով երիտասարդ սերնդին օգնում են ճիշտ կողմնորոշվելու ինտերնացիոնալ դաստիարակության հարցերում: «Բարեկամություն» ակումբի միջոցով ինստիտուտի ուսանողությունը լայն հնարավորություն է ստանում անմիջապես շփվելու ինչպես Սովետական Միության հանրապետությունների, այնպես էլ արտասահմանյան երկրների ուսանող երիտասարդության հետ: Արդեն անփոփոխ ավանդույթ են դարձել ամեն տարի կազմակերպվող «բարեկամության շաբաթները», երբ մյուս հանրապետությունների ուսանող երիտասարդությունն այցելում է ինստիտուտ, ծանոթանում ինստիտուտի կյանքին: Յուրաքանչյուր տարի ուսանողական խմբերը պատասխան այցի են մեկնում Սովետական Միության զանազան քաղաքների բուհեր, ծանոթանում նրանց ուսանողական առօրյային և փորձի լայն փոխանակություն կատարում:



«Բարեկամություն» ակումբին առընթեր գործում է ուսանողական երգչախումբ՝ «Բարեկամության երգեր» նշանաբանով, որի միջոցով երիտասարդական միջավայրում պրոպագանդվում է ՍՍՀՄ ժողովուրդների երաժշտությունը: Երգչախումբը բազմիցս մեկնել է հյուրախաղերի և համերգներով հանդես եկել Միության զանազան բուհերում, տարբեր լեզուներով ցուցադրելով Սովետական Միության ժողովուրդների ժողովրդական և դասական երաժշտությունը: Երգչախումբը երկրորդ ուսանողական փեստիվալում արժանացել է ոսկե մեդալի: Երգչախումբը հյուրախաղերի մեկնել է Հունգարիա, Լեհաստան: Բարձր գնահատվեցին երգչախմբի համերգները Մոսկվայում, որոնք տեղի ունեցան ինչպես համագումարների պալատում, այնպես էլ Պատրիս Լումումբայի անվան բարեկամության համալսարանում:

ՍՍՀՄ ժողովուրդների կուլտուրական կապերի սեկցիան ամեն տարի Միության զանազան քաղաքներ է ուղարկում էսթետիկայի ֆակուլտետի մի խումբ ուսանողների, որոնք վերադառնալուց հետո ինստիտուտում բացում են գեղանկարչական և գծանկարչական ցուցահանդեսներ: Ուսանողական մի խումբ այցելել է Իվանովո քաղաքը, այնտեղ բացել «Իվանովո՝ հեղափոխական քաղաք» ցուցահանդեսը, որն արժանացել է տեղի նկարիչների բարձր գնահատականին: Նման խմբեր են մեկնել Մոսկվա, Լենինգրադ, Կիև, Ռիգա, Կաունաս, Տարտու, Աշխաբադ, Բաքու, Թբիլիսի և այլ քաղաքներ: Ուսանողական խմբերի այցելությունները զանազան քաղաքների բուհեր ինքնանպատակ չեն եղել, ու զուտ էքսկուրսիոն բնույթ չեն կրել: Ռեկտորատը, կուսկոմը և կոմերիտական կազմակերպությունը նպատակ են հետապնդել ավելի լայն հնարավորություններ ստեղծել մեր ուսանողների և մյուս հանրապետությունների ուսանողների շփումների համար, նրանց մերձեցումը ավելի կենդանի և անմիջական դարձնել և դրանով իսկ ուսանողների մեջ ամրապնդել ինտերնացիոնալ բարեկամության ոգին: Փոխադարձ այցելությունների ժամանակ մեր ուսանողների համար պայմաններ են ստեղծվում է՛լ ավելի ամրապնդելու բարեկամական կապերը եղբայրական հանրապետությունների ժողովուրդների հետ, գնահատելու այն ավանդը, որ սովետական յուրաքանչյուր ժողովուրդ մտցնում է համամարդկային կուլտուրայի հարստացման գործում:

Բովանդակալից անցան «Բարեկամության շաբաթը», «Ուսանողական գարուն» փեստիվալը, որոնք նվիրված էին ՀամԼԿԵՄ-ի 50-ամյակին և Երևանի հիմնադրման 2750-ամյակին: Ինստիտուտ եկած եղբայրական հանրապետությունների ավելի քան 12 բուհերի պատվիրակությունները հնարավորություն ունեցան ծանոթանալու մեր հանրապետության տեսարժան և պատմական վայրերին, մոտիկից առնչվեցին մեր առօրյային, և այդ այցելությունը վերածվեց ինտերնացիոնալ մեծ ցույցի:

Առանձնապես մեծ եռանդով և ջանասիրությամբ էր նախապատրաստված ընթացիկ ուսումնական տարում Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին նվիրված «Բարեկամության շաբաթ» հավաքը: Այս առթիվ ռեկտորատը մի խումբ նկարիչ-դասատուների և ուսուցիչների գործուղեց Ուլյանովսկ, Կազան և այլ հեղափոխական վայրեր և Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ինստիտուտում կազմակերպեց «Լենինյան վայրերում» գեղանկարչական ցուցահանդես: «Բարեկամության շաբաթի» վերջում ինստիտուտում գիտական սեսիա տեղի ունեցավ «Վ. Ի. Լենինը և երիտասարդության կոմունիստական դաստիարակության արդիական խնդիրները» պրոբլեմների շուրջը: Ուսանողների ինտերնացիոնալ դաստիարակության խնդիրները մեծ տեղ են գրավում ինստիտուտի դասախոսների ամենօրյա աշխատանքում: Հասարակական գիտությունների ամբիոնների շատ անդամների գիտահետազոտական աշխատանքները նվիրված են այդ պրոբլեմների լուսաբանմանը:

Հետաքրքրական էր ասպիրանտների կոնֆերանսը «Ազգայինը և համամարդկայինը» պրոբլեմի շուրջը. այդ կոնֆերանսում կարդացվեցին 14 զեկուցումներ, ուր շեշտվում էր հայ ժողովրդի և սովետական մյուս ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության գաղափարը: «Հոկտեմբերյան հեղափոխությունը և ՍՍՀՄ ժողովուրդների լենինյան բարեկամությունը» պրոբլեմի շուրջը հրավիրված գիտական կոնֆերանսին մասնակցեցին հանրապետության 18 ականավոր պրոֆեսորներ և դոցենտներ: Կոնֆերանսում կարդացվեցին հետաքրքրական զեկուցումներ, որոնք նվիրված էին սոցիալիստական ազգերի փոխհարաբերություններին, նրանց հետագա մերձեցմանն ու ինտերնացիոնալ բարեկամությանը:

**Ա**ՄՈՒՐ են Երևանի գեղարվեստական-թատերական ինստիտուտի ինտերնացիոնալ կապերը: Տարիների պատմություն ունի նրա բարեկամությունը Դաղստանի ԱՍՍՀ հետ: Ինստիտուտում ստեղծված է դաղստանյան ստուդիա, ուր մասնագիտություն և որակավորում են ստացել տասնյակ դերասաններ ու ռեժիսորներ՝ դարգինյան երիտասարդության ներ-

կայացուցիչներ, որոնք վերջին տարիներին ստուդիայի միջուկից Դաղստանյան ՍՍՀ Իզբերբաշ քաղաքում ստեղծել են դարգինյան ազգային պետական թատրոն: Ներկայումս ինստիտուտում սովորում են թատրոնի ապագա 12 դերասաններ: Դարգինյան ստուդիան 1968 թվականին Մախաչկալայում և շատ աուլներում մի քանի անգամ հանդես է եկել դարգինյան կլասիկ Ռ. Նուրովի «Ջուշա» և Ա. Շիրվանզադեի «Չար ոգի» ներկայացումներով:

Ինստիտուտի ուսանողները սերտ կապեր են պահպանում Վրաստանի և Ադրբեջանի թատերական ինստիտուտների հետ: 1970 թվականի ապրիլին ինստիտուտի ուսանողները մասնակցեցին Ալիևի անվան ադրբեջանական թատերական ինստիտուտի գիտական կոնֆերանսին, որը նվիրված էր Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին: Ինստիտուտի ուսանողները մայիսին՝ Վրաստանի գեղարվեստի ակադեմիայի գիտական կոնֆերանսում զեկուցում կարդացին «Վ. Ի. Լենինի կերպարը կիրառական արվեստում» թեմայով: Ներկայումս ինստիտուտը նկարչական, քանդակագործական, գծանկարչական 60 ուսանողական աշխատանք է պատրաստել ԳԴՀ-ում կայանալիք ցուցահանդեսին ուղարկելու համար: 13 աշխատանք է ուղարկված Մոսկվա՝ պլակատների համամիութենական ցուցահանդեսին, որը նվիրված է Վ. Ի. Լենինի ծննդյան հարյուրամյակին:

Երևանում ցուցահանդես կազմակերպելու համար 40 աշխատանք է սպասվում Պոտսդամից (ԳԴՀ): Ինստիտուտը ինտենսիվ կապեր է պահպանում Մոսկվայի Մուխինայի անվան գեղարվեստական ուսումնարանի, Լենինգրադի գեղարվեստի ակադեմիայի, ԳՀՏԻՍ-ի հետ:

ԵՐԵՎԱՆԻ Կոմիտասի անվան պետական կոնսերվատորիայի ուսանողները բարեկամական կապերի մեջ են Մոսկվայի, Լենինգրադի, Նովոսիբիրսկի, Ռիգայի, Մինսկի և այլ քաղաքների կոնսերվատորիաների հետ: Ընթացիկ տարում՝ Կոմիտասի անվան կոնսերվատորիայի ուսանողները մասնակցել են Նովոսիբիրսկում, Բաքվում, Մինսկում, Կիևում, Թբիլիսիում տեղի ունեցած ուսանողական կոնֆերանսներին: Ապրիլին այստեղ կայացած կոնֆերանսում մասնակցեցին Թբիլիսիի, Սվերդլովսկի, Լենինգրադի կոնսերվատորիաների ուսանողները:

Կոնսերվատորիայի ուսանողները մասնակցում են համամիութենական կոնֆերանսների: 1970 թվականին նրանք Ռիգա և Լենինգրադ քաղաքներում մասնակցեցին Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին նվիրված կոնկուրսներին: Անցյալ տարի (մայիս-հունիս) Երևանում կայացավ երիտասարդ կատարողների անդրկովկասյան կոնկուրս, որին մասնակցեցին Ադրբեջանից և Վրաստանից եկած կատարողները:

ԱՄՐԱՆՈՒՄ են Երևանի ֆիզիկական կուլտուրայի և սպորտի ինստիտուտի ինտերնացիոնալ կապերը:

Ինստիտուտի պրոֆեսորա-դասախոսական կազմի յուրաքանչյուր տարի տեղի ունեցող գիտա-տեսական կոնֆերանսներին մասնակցում են Բաքվի և Թբիլիսիի ֆիզիկական կուլտուրայի ու սպորտի ինստիտուտների դասախոսները: Երևանի և Թբիլիսիի ֆիզիկական կուլտուրայի և սպորտի ինստիտուտներում տարվա մեջ երկու անգամ ընկերական հանդիպումներ և սպորտի տարբեր տեսակներով մրցումներ են անցկացվում:

Ինտերնացիոնալ մեծ կապեր ունեն Երևանի բժշկական և անասնաբուժական ինստիտուտները:

Ընթացիկ տարվա ապրիլին Երևանի բժշկական ինստիտուտի ուսանողական գիտական կոնֆերանսին մասնակցեցին Ռիգայի, Կաունասի, Ռոստովի, Խարկովի, Կիևի բժշկական ինստիտուտների ուսանողները: Նրանք նաև մասնակցեցին «Ուսանողական գարնանը»:

Ինստիտուտը կապ է պահպանում Վարշավայի և Սոֆիայի ինստիտուտների հետ: 1970 թվականի հունվարին 30 արտասահմանցի ուսանողներ Լենինգրադ ուղարկվեցին՝ քաղաքին ծանոթանալու համար:

Բազմազգ կազմ ունի Երևանի անասնաբուժական ինստիտուտը: Ուսուցումը տարվում է երկու լեզուներով՝ ռուսերեն և հայերեն: Կադրեր են պատրաստվում ինչպես Անդրկովկասի հանրապետությունների, այնպես էլ Միության համար: Սկսած 1963 թվականից, «Ուսանողական գարուն» տոնահանդեսն անցկացնելիս մեկ օր նվիրվում է ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամությանը. այդ օրը հրավիրվում են Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի ականավոր գիտնականներ, գրողներ, արտիստներ: Ինստիտուտի կոլեկտիվը նշում է եղբայրական ժողովուրդների նշանավոր մարդկանց՝ հասարակական և քաղաքական գործիչների, գիտնականների, գրողների, բանաստեղծների, նկարիչների, կոմպոզիտորների հոբելյանական տարեթվերը:

Այստեղ գործում և զգալի աշխատանք է տանում ինտերնացիոնալ բարեկամության ակումբը, որը սերտ կապեր է պահպանում եղբայրական հանրապետությունների նման ակումբների, ինչպես նաև որոշ օտարերկրյա կազմակերպությունների հետ:

Երևանի անասնաբուժական ինստիտուտի մի շարք ուսանողներ զեկուցումներ են տվել Կիևում ու Կիրովաբադում կայացած միջբուհական ուսանողական կոնֆերանսներում: Ինստիտուտի էստրադային նվագախումբը ընթացիկ տարվա մայիսին համերգներով հանդես է եկել Ստավրոպոլում: Հենց այստեղ էլ ընկերական հանդիպումներ են կազմակերպվել սպորտի մի քանի ձևերով: Նմանօրինակ հանդիպումներ են կազմակերպվել Վորոնեժ քաղաքում:

ՏԱՐԵՑՏԱՐԻ աճում ու ընդլայնվում է հայկական գյուղատնտեսական ինստիտուտի կապերը: 1970 թվականի ապրիլին ինստիտուտի 128 մարդուց բաղկացած գեղարվեստական ինքնագործունեության խումբը համերգներ տալու համար մեկնեց Կիև քաղաքը: Կիևի գյուղատնտեսական ակադեմիայի ընթացիկ տարվա փետրվարին կայացած ուսանողական կոնֆերանսում զեկուցումներով հանդես եկան ինստիտուտի տարբեր ֆակուլտետների 8 ուսանող:

Ինստիտուտի լավագույն ուսանողներից բաղկացած 2—3 խմբեր եղել են լենինյան վայրերում՝ Ուլյանովսկում, Մոսկվայում, Լենինգրադում: Ինստիտուտի ուսանողները մի շարք զեկուցումներով մասնակցել են Կիրովաբադի և Թբիլիսիի գյուղատնտեսական ինստիտուտների ուսանողական գիտական կոնֆերանսներին: Վրաստանում և Ադրբեջանում սովետական իշխանության հաստատման տարեդարձներին զեկուցումներ են կազմակերպվել ինստիտուտի ամբողջ կոլեկտիվի համար:

Բուհերի ուսանողության և կոլեկտիվների համար դասախոսություններ ու զեկուցումներ են կարդացվում հետևյալ թեմաներով՝ «Հայ ժողովրդի ազատագրման լենինյան ուղին», «Լենինյան ժառանգությունը և երիտասարդության կոմունիստական դաստիարակությունը արդի էտապում», «ՍՍՀՄ ժողովուրդների լենինյան բարեկամությունը», «Անդրկովկասի ժողովուրդների կուլտուրայի փոխհարստացումը կոմունիզմի շինարարության ժամանակաշրջանում», «Վ. Ի. Լենինը որպես կոմինտերնի հիմնադիր», «Վ. Ի. Լենինը հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի մասին», «Ժողովուրդների բարեկամության լենինյան քաղաքականության հաղթանակը ՍՍՀՄ-ում», «Միջազգային երիտասարդական շարժումը», «Վ. Ի. Լենինը և հայ ժողովրդի ազատագրումը» և այլն:

Ինտերնացիոնալ դաստիարակությանը վերաբերող թեմաները բուհերի գործունեության ուշադրության կենտրոնում են եղել: Այդ թեմատիկան արտահայտվում է ինչպես ամբիոնների, այնպես էլ բուհերի հասարակական կազմակերպությունների բոլոր բնագավառների աշխատանքներում:

Օրինակ, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին նվիրված ուսանողական աշխատանքների համամիութենական կոնկուրսին հանրապետությունից ներկայացվեցին հետևյալ աշխատանքները՝ «Վ. Ի. Լենինը կոմունիստական դաստիարակության մասին», «Կոմունիստական կուսակցության լենինյան ազգային ծրագիրը և դրա կենսագործումը ՍՍՀՄ-ում», «Վ. Ի. Լենինը երիտասարդության կոմունիստական դաստիարակության խնդիրների մասին», «Վ. Ի. Լենինը և 1918 թ. նոյեմբերյան հեղափոխությունը Գերմանիայում»:

ՍՈՎՈՐՈՂ երիտասարդության կուլտուրական ժամանցի կազմակերպման և ինտերնացիոնալ դաստիարակության գծով միջոցառումներին մեծ նշանակություն է տրվում հանրապետության միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում: Այդ աշխատանքը որպես կանոն, գլխավորում են կոմերիտական կազմակերպությունները, որոնք կուսակցական կազմակերպությունների, կուրսերի ղեկավարների, առարկայական հանձնաժողովների նախագահների և խմբակների ղեկավարների օգնությամբ ու ղեկավարությամբ բազմազան միջոցառումներ են անցկացնում ազատ ժամանակն առավել նպատակահարմարությամբ օգտագործելու համար: Ավանդույթ է դարձել առաջին կուրսեցիների համար ազատ ժամերին քաղաքին ծանոթանալը, թանգարաններ հաճախելը, օպերաներ լսելը, ներկայացումներ դիտելը, մայրաքաղաքի տեսարժան վայրերում լինելը, հանդիպումները Սովետական Միության և սոցիալիստական աշխատանքի հերոսների, կոմունիստական աշխատանքի բրիգադաների անդամների, հին բոլշևիկների, նկարիչների, կոմպոզիտորների, արտիստների հետ և այլն: Ուղևորություններ են կազմակերպվում հանրապետության սահմաններից դուրս՝ Մոսկվա, Լենինգրադ, Կիև, Մինսկ, Ուլյանովսկ, Անդրկովկասի, Մերձբալթյան և Միջինասիական հանրապետությունների մայրաքաղաքները:

Հանգստի համատեղ երեկոյթներ են անցկացվում մայրաքաղաքի գործարանների, ֆաբրիկաների և շինարարական կազմակերպությունների աշխատավոր երիտասարդության հետ, կազմակերպվում են տեխնիկումների և ուսումնարանների սովորողների հանդիպում-

ներ, ինքնագործ գեղարվեստական խմբակների փոխադարձ ելույթներ, թեմատիկ երեկոներ: Հետաքրքիր են անցնում սովորողների և կայազորի մարտիկների ու սահմանապահների փոխադարձ հանդիպումները: Այդպիսի կապերի ամրապնդումը առանձնապես կարևոր է մեր երիտասարդության ռազմա-հայրենասիրական դաստիարակության համար:

Շատ տեխնիկումներում և ուսումնարաններում ստեղծված են եղբայրական հանրապետությունների և սոցիալիստական երկրների միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների սովորողների հետ ինտերնացիոնալ կապերի ակումբներ: Հիանալի աշխատանք են կատարում Երևանի մեքենաշինական տեխնիկումի և սննդարդյունաբերության տեխնիկումի «Ինտերակումբները», որոնց նախաձեռնությամբ փոխադարձ հանդիպումներ են կազմակերպվել Բաքվում, Թբիլիսիում, Կաունասում, Ռիգայում, Վիլնյուսում: Մեքենաշինական տեխնիկումի «Ինտեր-ակումբը» բարեկամական կապեր է պահպանում Սոֆիայի օրինակելի մեխանիկական տեխնիկումի հետ, կանոնավոր կերպով լուսաբանում է եղբայրական սոցիալիստական երկրների երիտասարդության կյանքը, լույս են ընծայվում ցուցափեղկեր, բյուլետեններ, ֆոտո-մոնտաժումներ, որոնք ցուցադրում են սոցիալիզմի շինարարության տեմպերը եղբայրական սոցիալիստական երկրներում, դրանով իսկ նպաստելով սովորողների ինտերնացիոնալ դաստիարակությանը: Հետաքրքիր անցավ սննդարդյունաբերության տեխնիկումի ուսանողների հանդիպումը Պատրիս Լումումբայի անվան բարեկամության համալսարանի ուսանողների հետ:

Երևանի թեթև արդյունաբերության տեխնիկումում ստեղծված է ինտերնացիոնալ բարեկամության սենյակ: Ակումբի անդամները բարեկամական կապեր են հաստատել սոցիալիստական երկրների հետ: Տեխնիկումում հյուրընկալվել են Հարավսլավիայից և Չեխոսլովակիայից ժամանած պատվիրակությունները:

Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի կապակցությամբ տեխնիկումը պատվիրակություններ հրավիրեց Միության բոլոր թեթև արդյունաբերության տեխնիկումներից:

Հետաքրքիր աշխատանք են տանում Ն. Օստրովսկու անվան ռուսական մանկավարժական ուսումնարանի ուսանողները, որոնք կապեր են հաստատել Բրատսկի, Զապորոժիեի, Ռիգայի, Բաքվի, Դաղստանի և ուրիշ այլ մանկավարժական ուսումնարանների հետ: Լավ բարեկամություն է հաստատվել ուսումնարանի ունկնդիրների և հերոսական Վիետնամի ներկայացուցիչների՝ Երևանի № 15 պրոֆտեխնիկական ուսումնարանի ուսանողների միջև:

* * *

Շատ բան է արված մեր ուսանող երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակության բնագավառում: Ինտերնացիոնալ դաստիարակությունը կուսակցական կազմակերպություններից պահանջում է է՛լ ավելի բարձրացնել գաղափարական աշխատանքի մակարդակը, օգտագործել քաղաքական լուսավորության, ինֆորմացիայի և պրոպագանդայի բոլոր միջոցները: Մեր երիտասարդության ինտերնացիոնալ կապերի հետագա ընդարձակման ու խորացման, կոմունիստական դաստիարակության համար պահանջվում են ընտեղծագործական մոտեցում, հետևողական, ծրագրված աշխատանք:





# ԴԵՄՈԿՐԱՏ ԳՐՈՂՆ ՈՒ ՀՐԱՊԱՐԱԿԱԽՈՍԸ



Հայ նովելիստների պայծառ համաստեղության մեջ արևմտահայ դեմոկրատ գրող Երուխանն աչքի է ընկնում իր տաղանդով ու վարպետությամբ: Հայկական նորավեպի տաղանդաշատ վարպետը միաժամանակ նշանավոր վիպասան է, մարտնչող հրապարակախոս, մանկավարժ, թարգմանիչ ու հասարակական գործիչ: Գրական ասպարեզ իջնելով անցյալ դարի վերջին տասնամյակում՝ Երուխանն իր երկու և կես տասնամյա ստեղծագործական կյանքի ընթացքում զանազան օրաթերթերում ու հանդեսներում հրապարակել է մոտ վաթսուն նովել ու պատմվածք, **Հարազատ որդի** վիպակը, **Գաղթականները** անավարտ վեպը, արևմտահայ գրականության լավագույն գործերից մեկը՝ **Ամիրային աղջիկը** վեպը, խմբագրել է մի քանի անուն թերթ ու հանդես, գրել հրապարակախոսական, գրաքննադատական, արվեստագիտական և մանկավարժական բազմաթիվ արժեքավոր հոդվածներ:

Երուխանն իր գրական երկերում ու տեսական հոդվածներում զարգացնում է 80-ական թվականների արևմտահայ ռեալիստական գրականության և առաջավոր գրականագիտության լավագույն ավանդույթները: Ընդհանրապես արևմտահայ գրականության մեջ ռեալիստական շարժումն աչքի էր ընկնում ժողովրդական կյանքին մոտենալու, նրա խորքը թափանցելու ազնիվ ձգտումով: Իր ավագ և շնորհաշատ գրչակիցներից մեկը՝ Ա. Արփիարյանը, կերտում էր «Կյանքի պատկերները», Գր. Զոհրապը՝ «Կյանքը ինչպես որ է», որոնցից լսվում էին հասարակ աշխատավոր մարդկանց «խղճմտանքի ձայներն ու լուռ ցավերի» հեծեծանքը: Իսկ Երուխանը թափանցում էր հասարակ աշխատավոր մարդկանց «կյանքին մեջ», բազմակողմանի լուսաբանում այն, ընդհանրացնում կենսահույզ երևույթները:

Հրաժարվելով կյանքի պատկերման անհող ու անպտուղ երազանքներից, ռոմանտիկ գունազարդումներից՝ Երուխանը նախընտրում է հասարակական կյանքը մանրամասն քննելու, նրա տգեղ կողմերից չհրաժարվելու սկզբունքը: Պաշտամունքի առարկա դարձնելով հասարակ աշխատավոր զանգվածներին՝ նա ձգտում է գրականության ժողովրդայնացման,

այն ի սպաս դնել ժողովրդի իրավունքների պաշտպանության, բարքերի ու սովորությունների, ընդունելի ավանդույթների սրբագործման, անհատի կատարելագործման նպատակին:

Նրա ստեղծագործական մեթոդը քննադատական ռեալիզմն է: Վարպետորեն թափանցելով իր նկարագրած հերոսների կյանքի մեջ, Երուխանը որոնում, առանձնացնում է ժամանակաշրջանի համար բնորոշն ու տիպականը, կատարում գեղարվեստական խորիմաստ ընդհանրացումներ: Երուխանն ունի սոցիալական որոշակի ըմբռնումներ ու համոզմունքներ: Դասակարգային հասարակության մեջ նա պարզ տեսնում է հասարակ մարդկանց շահագործումը, նրանց իդեալների խորտակումը, սակայն չի տեսնում շահագործումից ազատագրվելու ռեալ ուղիները:

Երուխանը (Երվանդ Սրմաքեշխանլյան) ծնվել է Կ. Պոլսի Խասգյուղ արվարձանում, 1870 թվականի հուլիսին, արհեստավորի ընտանիքում: Բոսֆորի նեղուցի և Մարմարայի ափերին կառուցված հինավուրց քաղաքի ծայրամասային այդ թաղամասը եղել է ոսկու հայ արքաների՝ ամիրաների օրրանը, ուր սոցիալական կյանքը միշտ աչքի է ընկել շեշտված հակադրությամբ: Ամիրաների շքեղ ապարանքներից լսվող ոսկու ժխորին միախառնվել են աշխատավորական անշուք խրճիթներից պոկված դառը հառաչանքները:

Խասգյուղը կրթասեր թաղ էր: Աշխատավոր դասակարգը, ապրելով աղքատության մեջ, միշտ պահպանել է նախնիներից ժառանգած դպրոցասիրությունը: Իրենց երեխաների կրթության գործին նախանձախնդիր են նաև Երվանդի ծնողները: Հայրը՝ Պողոսը, որդուն հանձնում է վարպետ-տուտոռի՝ Կ. Պոլսի թաղերում տարածված տնային, տեր-թոդիկյան տիպի դպրոցը: Այնուհետև Երվանդն իր կրթությունը շարունակում է Ծաղկոցում, ապա Կ. Պոլսում մեծ համբավ վայելող Խասգյուղի Ներսիսյան վարժարանում: 1886 թ., ավարտելով Ներսիսյան վարժարանը, նա ընդունվում է բժշկական ուսումնարան, սակայն հայրը որդուն հանում է բժշկական ուսումնարանից և ուղարկում Կ. Պոլսի Նորաբաց Կեդրոնական վարժարանը: Երկրորդ ուսումնական տարվա վերջին, ծանր հիվանդության պատճառով, Երվանդը հնարավորություն չի ունենում մասնակցելու փոխադրական քննություններին, դուրս է մնում վարժարանից և ուսման պակասը լրացնում համառ ինքնակրթությամբ: Նա ուսումնասիրում է հույն կլասիկներին և ժամանակակից ռեալիստ գրողներից շատերին, զբաղվում պատմությամբ ու քաղաքացիությամբ, սովորում ֆրանսերեն: Շուտով ընտանեկան անապահով վիճակն ստիպում է հորն՝ ասելու.

— Զավա՛կս, եթե հաց չբերես, քեզի այլևս հաց չկա ուտելու:

Երվանդը ոտք է դնում գրական ասպարեզ: Իր գրական առաջին փորձերը կատարում է 19—20 տարեկան հասակում՝ տպագրվելով «Ծաղիկ» հանդեսում և «Ծերիտեի շարգիեի» հայատառ թուրքերեն թերթում:

1889 թ. Արամ Վրույրը Խասգյուղում բեմադրում է Գ. Սունդուկյանի **Պեպոն**՝ վերածած արևմտահայերենի և Կեդրոնական վարժարանի սան Հարություն Խնդիրյանի հեղինակած **Վարժապետ** դրաման: Երվանդը գրում է թատերախոսականներ՝ նվիրված հիշյալ բեմադրություններին: Գրական այդ առաջին թռուցիկները ուշադրության են արժանանում և խթանում հեղինակին՝ ինքնաճանաչման լուրջ ու դժվարին ճանապարհին:

1890 թ. վերջերին Երվանդ Սրմաքեշխանլյանը նշանակվում է Կ. Պոլսի «Արևելք» օրաթերթի խմբագրի տեղակալ՝ սուլթանական հետապնդումից խուսափելու նպատակով արտասահման փախած արձակագիր Լևոն Բաշալյանի փոխարեն: «Արևելք»-ը նրա համար դառնում է գրական հասունացման արդյունավետ դպրոց: Օրաթերթի 1891 թ. մայիսի 29-ի համարում տպագրվում է Սրմաքեշխանլյանի **Պայուկը** նովելը: Գրական այդ երախայրիքն անմիջապես ճանաչում է բերում հեղինակին: «Բայց ատիկա պարզապես սքանչելի էր... դուն գրող մը կըլլաս»,— հիացմունքով ասում է Արփիար Արփիարյանը՝ **Պայուկը** կարդալուց հետո: **Պայուկը** նովելի մասին բարձր կարծիք են հայտնում նաև Գր. Զոհրապը, Հրանտ Ասատուրը և Տիգրան Կամսարականը:

**Պայուկը** գեղարվեստական ստեղծագործություն լինելուց բացի, յուրատեսակ գրական մանիֆեստ է, որով հեղինակն ի լուր ամենքի հայտարարում է հասարակության ստորին խավին պատկանող մարդկանց խոհերի ու ակընկալությունների համոզված բարեկամը դառնալու իր պատրաստակամությունը: Եվ, պետք է ասել, որ նա ընդմիշտ հավատարիմ մնաց գրական իր երդմանը: Բնորոշն այն է, որ **Պայուկ**-ի հերոսները՝ արհամարված աշխարհի մարդիկ, նույնիսկ անուն չունեն. լավագույն դեպքում նրանք «մարդուկ» են կոչվում:

Եր. Սրմաքեշխանլյանն «Արևելք»-ում աշխատելու առաջին տարիներին (1891—1896 թթ.) է գրել իր գողտրիկ նովելների մեծ մասը (**Մեզատճին, Մարկոս աղբոր սերը, Պստիկ Սեփին պատմությունը, Տապանագիրը, Հյուծախտավորը, Կույրը, Զուկին փոխարեն, Լվացարարուհին** և այլն):

Գրական ինքնուրույն գործունեության հետ մեկտեղ այս շրջանում Սրմաքեշխանլյանն զբաղվում է թարգմանչական աշխատանքով: Նա ֆրանսերենից թարգմանում և «Արևելք» օրաթերթում տպագրում է 13 վեպ ու վիպակ (Ալֆոնս Դոդեի **Ջեկը**, Հեկտոր Մալոյի **Առանց ընտանիքի**, Ժյուլ Լեռմինայի **Փարիզի գայլերը**, Ժյուլ Մարիի **Դժգույն աղջիկը** վեպերը և այլն):

1893 թ. Սրմաքեշխանլյանն աշխատակցում է նաև «Մասիս» հանդեսին, որի խմբագիրն էր Գր. Զոհրապը: Այստեղ տպագրվում են նրա **Քարիտեզճին, Գինովին վարձքը, Զուկին փոխարեն** նովելները: Նրա նովելները ընթերցողներին են ներկայացնում ձկնորսներ, նավավարներ, լվացարարուհիներ, ջրկիրներ, հղկողներ, հրշեջներ, երկաթագործներ, օրվա դառն ու չարքաշ աշխատանքից կքած և գինետան կեղտոտ անկյունում անձնական վիշտը գինու բաժակի մեջ խեղդող արհեստավորներ:

Սրմաքեշխանլյանի՝ որպես տաղանդավոր նովելիստի մասին շատ բարձր կարծիք են հայտնել մի շարք գրողներ և քննադատներ: Վրթանես Փափազյանն իր **Պատմություն հայ գրականության** 2-րդ գրքում, խոսելով Սրմաքեշխանլյանի հոգեբանական նուրբ վերլուծությունների մասին, գրում է. «Թերևս միայն Զոհրապն է, որ նույնքան կատարելությամբ գիտե վերլուծել հոգեբանական որոշ երևույթներ և գեղուն գույներով նկարել այս ու այն տիպարները»:

Կ. Պոլսի «Ոստան» եռամսյա մեծ պարբերականն իր 1911 թ. № 2-ում, անդրադառնալով Սրմաքեշխանլյանի **Կյանքին մեջ** ժողովածուին, նշում է. «Դիտող մը, հոգեբան մը ու հրապուրիչ պատմող մը կա այդ գրողին մեջ ու որքան խոնարհ դասերու մեջ կիջնե ինք, այնքան թանկագին կդառնան իր վերլուծումները... գեղեցկագույն են **Եվնիկեն, Զուկին փոխարենը, Քարիտեզճին, Ձկնորսին սերը**: Չեմ գիտեր ասոնք ունի՞ն իրենց նմանները պոլսահայ կյանքը նկարագրող գրականության մեջ» (էջ 445):

Գրական ստեղծագործության թեմատիկայի ընտրությունը, սյուժեներ քաղելը Սրմաքեշխանլյանի համար պատահական չէ. դա հեղինակի համոզմունքն է, ընդգծված նախասիրությունը: Ժողովուրդն է նրա ստեղծագործությունների հերոսը, նրա կյանքը՝ դրանց թեման:

**Կեվրեքճին** պատմվածքում նա գրում է.

«Անսահման, անպարագրելի պեսպիսությամբ դրասանգված ամբոխը իմ գմայլման առարկան է միշտ, ան ինծի համար կենդանի, հևացող գիրք մ'է, որուն էջերը անճառ հափշտակությամբ կկարդամ, անոր մեջ միայն գտնելով անկեղծ, անշպար առաքինությունները, անպատրվակ անձնվիրությունը և չըհանձնարարված՝ ինքնաբեր դյուցազնությունները, որոց քով գանձ համեմատություններ կառնեն շատ մը ծախու առնված համբավներ, սնգուրված մեծագործություններ և շռնդալից, աղաղակված անձնազոհություններ:

Եվ տիպարներու ի՜նչ հոգեզվարճ այլազանություն մը հոն, ամբոխին ծոցին մեջ և որքան տիպար, այնքան պատմություն, այնքան գույն այդ ճոխ երանգապնակին վրա»:

Գեղագիտական այս առողջ սկզբունքով էլ Սրմաքեշխանլյանը պատկերում է հասարակ աշխատավոր մարդկանց աշխարհը: Նա ռեալիստորեն և հարազատ գծերով կերտում է նրանց առօրյան, բացահայտում իր նախասիրած հերոսների հոգեբանությունը, երազանքները, ապրումները... Սրմաքեշխանլյանի նկարագրած խրճիթները, ուր ապրում էին ձկնորսները, իրենց անհյուրընկալ, խարխուլ վիճակով հիշեցնում են Նար-Դոսի **Մեր թաղը** պատմվածաշարի տնակները: Այստեղ ընթերցողն ունկնդիր է մարդկային մի ամբողջ ողբերգության:

Ծովը, որ ձկնորսների ապրուստի միակ աղբյուրն է, դառնում է նրանց գերեզմանը: Ծովի գոռ ալիքներին կուլ են գնում Համի Թումայի ձկնորս որդիները (**Գողը**), Հովանը (**Ծովափին աղջիկը**), Հուսեփը (**Լվացարարուհին**), իսկ դեռևս կենդանի մնացած ձկնորսներն ու նավավարները լուռ համակերպությամբ նայում են մերթ խաղաղ, մերթ փոթորկահույզ ծովին, հաշտվում իրենց դրության հետ, պատճառաբանելով թե՝ «աս զենաաթին սոնը աս է» (այս արհեստի վերջը սա է— Ս. Հ.):

Սրմաքեշխանլյանն իր մի շարք նովելներում հոգեբանական ամենանուրբ երանգներով պատկերում է աշխատավոր մարդկանց մաքուր ու անբիծ սերը: Սակայն սոցիալական անապահով վիճակում գտնվող նրա հերոսներին սերը երջանկություն չի բերում: **Լվացարարուհին, Թաշկինակը, Մեզատճին, Պստիկ Սեփին պատմությունը** նովելները անձնուրաց սիրո և նվիրվածության լավագույն արտահայտություններն են:

Սրմաքեշխանլյանը սուր քննադատում, ժխտում է հաշվենկատ և նյութական շահի վրա հիմնված սերը: Նրա մի շարք հերոսներ, չնայած կապված են ջերմ ու փոխադարձ սիրով, չեն կարողանում վայելել սիրո երջանկությունը և դժբախտանում են՝ բացառապես

սոցիալական տարբեր դիրքերում գտնվելու պատճառով (**Կժպտի, Երկու երդումները, Տապանագիրը**):

Հեղինակի այս շարքի նովելներից մի քանիսում հերոսները սիրում են հարուստ դասակարգի աղջիկների (**Ջուկին փոխարեն, Մեզատճին, Սայլորդը, Քարիտեզճին, Թաշկինակը, Ջըհանկիրի մը պատմությունը, Սերինա**): Պարզ է, որ Սրմաքեշխանլյանը նմանօրինակ սիրո քողի տակ ավելի շատ ձգտում է բացահայտել սոցիալական անհավասարությունը հասարակական կյանքում, վերլուծել հերոսների հոգեբանական բարդ նրբերանգները: Գիտենալով, որ «աղքատությունը հարստության դեմ կանգնելու իրավունք չունի»՝ Սրմաքեշխանլյանը, Գր. Զոհրապի նման, չի խրախուսում սիրո այդ կապը: Ընդհակառակը, նա ցույց է տալիս, որ խոնարհ դասակարգի մարդկանց ձգտումը՝ վեր բարձրանալ աղքատիկ միջավայրից և սեր որոնել հարուստ ընտանիքներում, ողբերգության պատճառ է դառնում:

Մի շարք նովելներում (**Ետքեն կժպտի, Տեր պապային հինգերորդ տունը, Կնունքը, Հաջողության գաղտնիքը**) Սրմաքեշխանլյանն անողոք քննադատում է խավարի ու տգիտության մեջ տառապող աշխատավոր ժողովրդի կրոնական ջերմեռանդությունը չարաշահող հոգևորականների այլանդակ վարքն ու բարքը, հրեշավոր չափերի հասած նրանց ընչաքաղցությունը:

Իր մի քանի նովելներում (**Վարձու տուն, Քավություն, Հուռութք, Մրցում**) Սրմաքեշխանլյանը դիմակազերծ է անում «սրտի դողով իր միլիոնները հաշվող» (Գոգոլ) XIX դարի դրամաշորթությունը, դրամատիրական դարաշրջանի ներկայացուցիչներին, բուրժուազիային:

Սրմաքեշխանլյանը, սակայն, սխալվում է, կարծելով, թե կա բարի, հեզ, շիտակ խանութպան, առևտրական: Առևտրական Օհան Տերտերյանին նա բնութագրում է որպես «միամիտ ու դյուրահավատ մարդու ամենեն պերճ տիպարը», փոխանակ զարգացնելու Հակոբ Պարոնյանի այն դիպուկ միտքը, թե «Մեծ վաճառական մըն ես, ուրեմն մեծ խաբեբա մըն ես»:

**Մեզատճին** գրողի միակ նովելն է, որտեղ հերոսը զենքի է դիմում և պայքարի ելնում շահագործողների դեմ: Նովելի հերոսը՝ Գառնիկը, ըմբոստանում է իր երջանկությունը խլողի դեմ՝ սպանելով նրան. սակայն, տեղն ու տեղը ինքնասպանությամբ վերջ է տալիս նաև իր կյանքին՝ մարմնից հորդացող արյան շիթերի և մարող հայացքի մեջ խտացնելով իր և իր դասակարգի մարդկանց զայրալից բողոքը անարդար իրականության դեմ: Ցավոք, ըմբոստացման այս գիծը նովելներում որակ չի կազմում. նրա մյուս հերոսները լուռ համակերպվում են իրենց վիճակին և զոհ դառնում սոցիալական անհավասարության:

Սրմաքեշխանլյանի նովելներն աչքի են ընկնում գեղարվեստական բարձր արժանիքներով: Վարպետ գրողն ստեղծում է գեղեցիկ, զմայլելի պատկերներ, սեղմ տողերում խտացված ներկայացնում հերոսների ապրումները, հուզումները, հոգեբանական նրբերանգները: Նրա նովելներում գեղարվեստորեն մարմնավորվում են կյանքի ինչպես սովորական, կրկնվող, այնպես էլ արտասովոր, պատահական երևույթներն ու փաստերը, որոնք բխում են անհրաժեշտությունից և նկարագրվող կյանքի բնորոշ, տիպական աղբյուրներից:

Սրմաքեշխանլյանի կերտած կերպարների ամբողջությունը բնորոշ գծերով ներկայացնում է անցյալ դարի երկրորդ կեսի և դարասկզբի պոլսահայ սոցիալական միջավայրը: Հերոսների հակիրճ տրամախոսությունը՝ երկախոսությունները և մենախոսությունները ընթերցողի առջև բացում են մի ամբողջ աշխարհ:

Ավելի քան կես դար է անցել նրա գողտրիկ նովելների ծննդից, բայց դրանք պահպանում են իրենց հմայքն ու թարմությունը և հայ գրականության մեջ ընդմիշտ կմնան որպես Պոլսի ձկնորսների, նավավարների, տեր պապաների և ազնվական խավերի կյանքն ու կենցաղն արտացոլող լավագույն գործեր:

* * *

1896 թ. հունիսից Սրմաքեշխանլյանը ձեռնարկում է «Ծաղիկ» հանդեսն իբրև օրաթերթ հրատարակելու գործին: Երբ ամեն ինչ արդեն գլուխ էր եկել, պայթում է ահավոր «փոթորիկը»՝ հայկական կոտորածը: Սրմաքեշխանլյանը փախչում է ծննդավայրից և հաապաստանում Բուլղարիայի Վառնա քաղաքում:

Նա շարունակում է զբաղվել գրական, հրապարակախոսական և մանկավարժական աշխատանքով՝ միշտ մնալով իր բնավեր հայրենակիցների շարքերում: Այս շրջանի նրա գրական ստեղծագործության հիմնական թեման գերազանցապես հայ գաղթականների կյանքն է, իսկ հրապարակախոսության սուր սլաքն ուղղված է Սուլթան Համիդի ռեակցիոն, ջարդարար քաղաքականության դեմ:

1897—1899 թթ. կեսերին Սրմաքեշխանլյանը Վառնայից աշխատակցում է նաև Կ. Պոլսի «Բյուզանդիոն» օրաթերթին՝ ընթերցողներին ներկայացնելով հայ գաղթականների կյանքը: Համիդյան լրտեսող գրաքննությունից



խուսափելու համար նրա նովելները, պատմվածքներն ու հոդվածները տպագրվում են **Գաղթական, Ե. Գաղթական** և **Աշուղ** ծածկանուններով: «Բյուզանդիոն» օրաթերթի էջերում տպագրված նրա լավագույն նովելներից են՝ **Կժպտի, Զանգակահարը, Երեք ամսվա սուգ** և այլն:

1898 թ. մարտին Սրմաքեշխանլյանը Վառնայում հիմնում է «Շարժում» թերթը: Միևնույն ժամանակ նա աշխատակցում է Ա. Չոպանյանի «Անահիտ» հանդեսին, ուր տպագրվում են նրա **Համրին վրեժը** և **Հուռութք** պատմվածքները: Այդ ժամանակից էլ Սրմաքեշխանլյանը հանդես է գալիս **Երուխան** գրական ծածկանունով:

1899 թ. Երուխանը ոտք է դնում մանկավարժական ասպարեզ: Վառնայի **Հայկական կրթարանում** մեկ և կես տարի դասավանդում է աշխարհաբար հայերեն: 1900 թ. մարտի 15-ից նա հրատարակում է «Շավիղ» կիսամսյա հանդեսը: Այստեղ տպագրվում են նրա **Կաղընդեչքը, Սայլորդը, Արյան ուժը, Օղորմութին մը...** նովելներն ու պատմվածքները և **Գաղթականները** անավարտ վեպը: 1901 թ. հունվարյան համարից հետո հանդեսը դադարեցվում է: 1902 թ. որոշ ժամանակ Երուխանը լինում է Ասպրիզի ազգային վարժարանի տնօրենը, իսկ 1902—1904 թթ. սկիզբը պաշտոնավարում է Վառնայի ազգային վարժարանում: 1904 թ. Երուխանն աշխատակցում է տպարանատեր Օնիկ Բարսեղյանի հրատարակած «Վիպաթերթ» հանդեսին, ուր մաս-մաս տպագրվում է նրա **Մերժված սերը** վեպը:

1904 թ. Երուխանը Բուլղարիայից տեղափոխվում է Եգիպտոս և զբաղվում մանկավարժական ու խմբագրական աշխատանքով:

Տարագրության տարիներին Երուխանի գրած նովելներում հիմնականում արծարծվում է թուրքական յաթաղանից հալածված, օտար եզերքներում դեգերող հայերի տառապանքը: Ահա թե ինչու է Երուխանը գրել. «Գաղթականությունը տեսակ մը ֆապրիկա է, որուն մեջ նկարագիրները կծեծվին, կդարբնվին ու կկաղապարվին... կեղծիք, ծեքծեքանք կանհետին, գաղթականության մեջ, որ կապրինք, ուսումնասիրության տիպարները բազմաթիվ են»: Իր այս շարքի նովելներում և պատմվածքներում նա կերտել է գաղթական հայերի բազմաթիվ կերպարներ, պատկերել նրանց ողբերգությունը: Երուխանը գեղագետի հայացքով որոնում, զննում և գեղարվեստորեն ցուցադրում է հայ ժողովրդի համար բընութագրականն ու հերոսականը: Այս տեսակետից ուշագրավ է **Արյան ուժը** պատմվածքը:

Այս տարիներին, որպես խմբագիր ու հրապարակախոս, Երուխանը ծավալում է արգասավոր գործունեություն: Կ. Պոլսից արտասահման փախած շատ հայ գրողների ու հրապարակախոսների՝ Ա. Արփիարյանի, Ե. Օտյանի, Տ. Կամսարականի, Լ. Բաշալյանի և այլոց նըման Երուխանին ևս հետաքրքրում է մամուլի ազատ օրգան ստեղծելու հարցը: Դեռևս 1898 թ. մարտի 23-ին Արշակ Չոպանյանին գրած նամակում Երուխանը պարզաբանում է իր հիմնած «Շարժում» թերթի նպատակն ու ուղղությունը:

Քաղաքական անհարկի պայքարից ու քաշքըշուկներից զերծ «շարժումը» ավելի շատ գրական ժամադրավայր էր տարագիր հայ գրողների համար:

* * *

1908 թ. հուլիսի 10-ին Թուրքիայում տեղի է ունենում պետական հեղաշրջում: Իշխանության գլուխ են անցնում Երիտասարդ թուրքերը, որոնք տարիներ շարունակ շռայլ խոստումներով մոլորեցրել էին ո՛չ միայն թուրք, այլև օսմանյան տերիտորիայում բնակվող այլալեզու և այլակրոն ժողովուրդներին:

Հնչում է վերադարձի ժամը: Կ. Պոլիսը կանչում է իր որդիներին: Արևմտահայ տարագիր մտավորականների հետ միասին Կ. Պոլիս է վերադառնում նաև Երուխանը:

Երուխանի ստեղծագործության հետսահմանադրական շրջանն ընդգրկում է 1908—1915 թթ.: 1908 թ. օգոստոսի 7-ին նա նշանակվում է «Արևելք» օրաթերթի խմբագիր՝ պաշտոնից հեռացված դոկտոր Թոփչյանի փոխարեն, որի խմբագրած «Արևելք»-ը տառապում էր ծայրագույն լիբերալիզմով, օսմանյան բռնապետության հետ համակերպվելու ստրկական քաղաքականությամբ, հայկական կոտորածների ծանր օրերին տեսնելով միայն «լիակատար կարգ ու կանոն՝ շնորհիվ օգտակար կայսեր մեծահոգի ողորմածության»:

Երուխան-խմբագիրն աշխատում է օգտագործել օսմանյան սահմանադրությամբ շնորհված մամուլի ազատությունը: «Արևելք»-ում նա բացում է **Ազատ կարծիքներ** բաժինը, որտեղ համարձակ հոդվածներ է տպագրում ժամանակվա հուզող հարցերի վերաբերյալ: «Արևելք»-ում, որպես թերթոն, սկսում է հրատարակվել Րաֆֆու «Սամվել» պատմավեպը: Երուխանը գտնում է, որ վերջապես ներկայացել է հարմար առիթը՝ «ազգային մեծ վիպասանին հրաշակերտը» արևմտահայ ընթերցողին ներկայացնելու:

Երուխանը լուրջ ուշադրություն է նվիրում հայ ժողովրդի երկու հատվածների կուլտուրական մերձեցման հարցերին: «Արևելք»-ում հաճախակի տպագրվում են հոդվածներ արևելահայ գրողներ Խ. Աբովյանի, Գ. Սուն-

դուկյանի, Ալ. Շիրվանզադեի, Ալ. Ծատուրյանի և այլոց մասին:

Այս շրջանում առավել աչքի է ընկնում Երուխան-հրապարակախոսը: Պատկառելի է նրա այս տարիների հրապարակախոսական ժառանգությունը: Երուխանի հրապարակախոսության անկյունաքարն են դառնում հայ ժողովրդի ազգային ազատագրության, ինքնավարության, ինքնաճանաչման, կենսական ուժերի համախմբման և նրա հատվածների առավել մերձեցման հարցերը:

1910 թ. ապրիլի 11-ից Երուխանն իր խմբագրած թերթում, որպես թերթոն, հրապարակում է «Վիպաթերթ»-ում տպագրված **Մերժված սերը՝ Ամիրային աղջիկը** վերնագրով և էական փոփոխություններով: Այս վեպը Երուխանի ստեղծագործության գլուխ-գործոցն է: Հեղինակն ունի ճիշտ պատկերացում գրականության դերի մասին ընդհանրապես և վեպի դերի, ազդեցության ու նշանակության մասին՝ մասնավորապես: Նա գրում է.

«Վեպը իր բուն նպատակին ծառայելու համար՝ կյանքի իրական եղելությունները պիտի պատկերացնե և իրական տիպարներ պիտի գծագրե, **Ամիրային աղջիկին** մեջ ջանացած եմ այս ուղղության ձգտիլ» («Արևելք», 1910, № 7286):

**Ամիրային աղջիկը** ռեալիստական վեպ է. այս է դրա ամենախոշոր արժանիքը: Վեպում լայն կտավի վրա ճշմարտացի արտացոլվում է անցյալ դարի երկրորդ կեսի պոլսահայ իրականությունն իր բնորոշ առանձնահատկություններով, հասարակական խավերով: Ցուցադրելով հարուստների այլասերված բարքերը՝ Երուխանն առանձին համակրանքով ու հարազատությամբ է ներկայացնում Կ. Պոլսի ձկնորսների կյանքը, կենցաղն ու աշխատանքը: Վեպում բախվում են շահագործողն ու շահագործվողը, սակայն այդ բախումը տառապած հերոսների մտքերի ու ապրումների մեջ է, չի հասնում ըմբոստացման, ակտիվ պայքարի:

Ամենից ուշագրավն այն է, որ կերտելով ամիրայական տան գեղարվեստական պատմությունը, Երուխանը պատմական ճիշտ ասպեկտով է մոտենում ամիրայության հարցի մեկնաբանմանը: Հակադրվելով ամիրաներին «ազգային բարերար», «աշխատավոր մարդկանց շահերի պաշտպան ու օգնական» հռչակող կեղծ ու լիբերալ պատմագրության հավաստիացումներին՝ Երուխանը ամիրային օբյեկտիվորեն ներկայացնում է որպես կողոպտիչ ու աշխատավորների շահագործող: Ամիրայական տան միակ ծաղկի՝ Երմոնեի, միակ որդին՝ Արշակը, ամիրայական տան վերջին շառավիղն է, որի հետ մայրը կապել է իր բոլոր հույսերը: Արշակը հարուստ է, բայց բարոյազուրկ ու այլանդակ: Նրա բարոյական անկման մեջ հեղինակը խտացրել է ազնվական խավերի քայքայումն ու վերջնական փլուզումը:

**Ամիրային աղջիկը** վեպում Երուխանը կերտել է բազմաթիվ կերպարներ: Տաղանդավոր հեղինակն իր գրչով կենդանի ու իրական է արտացոլել այն միջավայրն ու պարագաները, որտեղ գործում են վեպի հերոսները:

* * *

Իր ստեղծագործական կյանքի հետսահմանադրական շրջանում Երուխանը խմբագրական գործունեությանը զուգընթաց կատարում է նաև այլ աշխատանքներ: 1908 թ. նա Հովհաննես Շահնազարի առաջարկությամբ նշանակվում է Կ. Պոլսի Ազգային Կեդրոնական վարժարանի աշխարհաբար հայերենի ուսուցիչ: Սակայն, 1908 թ. դեկտեմբերից 1909 թ. հունվար ամիսներին աշխատելուց հետո Երուխանը հեռանում է Կեդրոնականից՝ դժգոհ տիրող ընդհանուր անկարգապահությունից:

Երուխանն ստանձնում է Ս. Խաչ Ազգային վարժարանի տնօրինությունը, որը մեծ հմտությամբ վարում է մինչև 1913 թ. կեսերը: Մանկավարժական գործունեությանը զուգընթաց նա վերսկսում է գրել. ակտիվ աշխատակցում է «Ոստան», «Շանթ», «Հայ գրականություն», Թեոդիկի «Ամենուն տարեցույցը» հանդեսներին: Նրա լավագույն նորավեպերը՝ **Ձկնորսին սերը, Հաջողության գաղտնիքը, Քավություն, Մեռելներուն ջրկիրը, Մրցում, Զատիկն ի Հասան Պեյլի,** հրատարակվել են այս տարիներին:

Հեղինակի կենդանության օրոք՝ 1911 թ., Պոլսում լույս է տեսնում նրա 10 նովելներից ու պատմվածքներից կազմված մի հատորյակ՝ **Կյանքին մեջ** պերճախոս վերնագրով:

Երուխանը սերտորեն կապված էր արևմտահայ ականավոր մտավորականների հետ: Նա խիստ մտահոգված էր հայ գրականության բախտով, նրա զարգացման հեռանկարներով: 1911 թ. Տիգրան Կամսարականի նախաձեռնությամբ պոլսահայ 17 անվանի գրողներ լույս են ընծայում մի ժողովածու՝ նվիրված Ալ. Շիրվանզադեի գրական գործունեության 30-ամյակին: Այդ ժողովածուում Երուխանը հանդես էր եկել **Արսեն Դիմաքսյան** ընդարձակ և հույժ հետաքրքրական գրաքննադատական հոդվածով: Գրականագիտական հոդվածներից բացի Երուխանը գրել է գրախոսականներ, պոլեմիկական և այլ բնույթի զանազան հոդվածներ, որոնցում շարադրել է իր գրականագիտական հայացքները՝ գրական ստեղծագործության լեզվի, թեմատիկայի, մեթոդի, ժողովրդայնության, լիրիկական ստեղծագործության կառուցվածքի և խոհականության, հայ գրերի և դպրության մասին, գրականության դերի և նշանակության իր առողջ ըմբռնումները: **Թատրոնի հիշատակ մը, օրվա մտահոգություններեն դուրս, Տիկին Պայծառ Ֆասուլեաճյան, Հովհաննես Այվազովսկի, Հայերը արտասահմանի մեջ** և այլն հոդվածներում Երուխանը շարադրում է իր արվեստագիտական հայացքները ռեալիստական թատրոնի և արվեստի այլ ճյուղերի մասին:

Դժվար է գտնել դպրոցի, ուսուցման և դաստիարակության վերաբերյալ որևէ հարց, որ վրիպած լինի Երուխան-մանկավարժի տեսադաշտից: XIX դարի վերջի և XX դարի սկզբի արևմտահայ դպրոցին հուզող շատ հարցեր իրենց որոշակի լուծումն են ստացել Երուխանի՝ մոտ երեք տասնյակի հասնող տեսական հոդվածներում և պրակտիկ գործունեության մեջ:

Երուխանը, սակայն, չկարողացավ տեսնել սոցիալական անարդար կարգերը տապալող ուժը: Հանդես գալով աշխատավոր ու շահագործվող մասսաների շահերի պաշտպանության դիրքերից՝ արևմտահայության սոցիալական կյանքի կանոնավորման, նրա առաջադիմության ու զարգացման հիմնական միջոցը նա համարում է լուսավորական շարժումը: Ջերմորեն պաշտպանելով դպրոցի, մանկավարժության, լուսավորության միջոցով հայ ընտանիքների սոցիալական կյանքի, բարքերի ու սովորույթների բարեփոխման տեսակետը, նա դառնում է ժամանակաշրջանի լուսավորական շարժման համոզված ջահակիրը:

* * *

1913 թ. ամռան վերջերին Երուխանը թողնում է մանկավարժական գործունեությունը և մեկնում Խարբերդ գավառը: Նրա ճանապարհորդական նոթերից և մի քանի նամակներից պարզվում է, որ հեռավոր գավառում, վշտակոծ հայրենակիցների շրջապատում լինելը հեղինակի փայփայած երազանքն էր: Խարբերդ հասնելուն պես Երուխանն ստանձնում է Մեզիրեի Կենտրոնական վարժարանի տեսչի պաշտոնը: Խարբերդի հոգևոր առաջնորդ Պասկ վարդապետը (Ծ. Վ. Տեր-Խորենյան— հեղինակ մի շարք արժեքավոր պատմական երկերի) սիրով ընդունում է նորեկ տեսչին և ամեն կերպ աջակցում նրան՝ վարժարանի ուսումնա-դաստիարակչական աշխատանքները պատշաճ բարձրության վրա դնելու:

Այդ ժամանակ «Եփրատ» կոլեջի նախաձեռնությամբ տոնվում էր հայ գրերի գյուտի 1500 և հայ տպագրության 400-ամյակը. այն մեծ շուքով նշվում է նաև Մեզիրեում: Նախագահող Պասկ վարդապետի հրավերով բանախոսում է Կենտրոնական վարժարանի նորընտիր տնօրենը՝ Երուխանը, որը «հավուր պատշաճի կարդաց իմաստալից ճառ մը»,— գրում է «Եփրատ» հանդեսը:

Մեզիրեի Կենտրոնական վարժարանում Երուխանը ծավալում է մանկավարժական վիթխարի աշխատանք: Սակայն գավառում ևս Երուխանը չի սահմանափակվում լոկ մանկավարժական աշխատանքով, այլ շրջում է գյուղերը, ուշի-ուշով ուսումնասիրում գավառի կյանքը: Գավառը նոր աշխարհ էր Երուխանի համար, որի ուսումնասիրությունն ավելի է լայնացնում ու խորացնում նրա պատկերացումը կյանքի վերաբերյալ: 1913 թ. սեպտեմբերի 30-ի թվակիր նամակում նա գրում է. «Ինծի համար ուսումնասիրության հանք մըն է այս երկիրը և այս կյանքը: Եթե ողջ մնամ, հուշատետրս լեցուն կդառնամ Պոլիս»: Երուխանի կյանքի ու գործունեության խարբերդյան շրջանը հարուստ է հեղինակի կողմից սոցիալական կյանքի, մարդկային հոգեբանության խոր ուսումնասիրությամբ ու վերլուծությամբ:

Սակայն, արդեն զգացվում էին ծավալվող քաղաքական վայրիվերումները: 1915 թ. եղեռնին, շատերի հետ մեկտեղ, հայրենի հողի վրա, ստեղծագործական ուժերի բուռն ծաղկման, տաղանդի աննախընթաց հասունացման շրջանում նահատակվեց և հայ նորավեպի ու ռեալիստական վեպի ամենախոստումնալից ներկայացուցիչը՝ Երուխանը:

**Ս. Վ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**





# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ

## ԽՈՍՈՒՆ ՎԱՎԵՐԱԳՐԵՐ, ՀՈՒԶՈՂ ՀՈՒՇԵՐ

Նամակներ, հեռագրեր, վավերագրեր, հիշողություններ...

Աշխարհում առաջին սովետական պետության հիմնադրին՝ Լենինին, գրել են հայ հեղափոխական-քաղաքական, ռազմական գործիչներ, աշխատավորներ... Մարդկության կեղեքմանն ու տառապանքին վերջ տալու գործին նվիրված, պատմության դարավոր ընթացքը փոխելու կոչված մարդու հետ խորհրդածելու, նրա խորհուրդների ծարավը, կարծիքի, օգնության կարիքը, նրա նկատմամբ տածած սերը, հավատարմությունն են արտահայտված Իլյիչին հղված տողերում։ Այդ նամակները, վավերագրերը ցույց են տալիս, որ Հայաստանի հեղափոխական շարժումները, բոլշևիկյան կազմակերպությունների պատմությունը սերտորեն կապված են Վ. Ի. Լենինի անվան հետ, որ Իլյիչը հայ ժողովրդի լավագույն բարեկամն է, հայ մարքսիստների մեծ ուսուցիչը։

Լենինի ջերմ պատասխանները, նրանց՝ հաճախակի գրելու, իր հետ սերտ կապ պահպանելու հորդորները ցույց են տալիս, թե գաղափարական, կուսակցական-կազմակերպական աշխատանքներում ինչպիսի՜ կարևորություն էր տալիս Իլյիչը բարեկամների կարծիքին, համախոհությանն ու համագործակցությանը։

Նամակները տարբեր մարդկանցից են, տարբեր վայրերից, որոնք պահպանվում են զանազան արխիվներում, զետեղված են ականավոր գործիչների երկերում, հին բոլշևիկների հուշագրություններում, բրոշյուրներում, ամսագրերում, թերթերում... Իլյիչի պատասխան նամակները՝ նրա երկերի ժողովածուներում։




Ի մի բերել, ամփոփել այդ ամենը մի գրքում և այդպես ներկայացնել հայ ընթերցողին— այս է եղել Լենինի հետ[1] արժեքավոր ժողովածուի կազմողի՝ պրոֆեսոր Խ. Բարսեղյանի նպատակը։

Ժողովածուն բաղկացած է հետևյալ բաժիններից՝ Լենինի և հայ գործիչների նամակագրությունը, Նրանք տեսել են Իլյիչին, Հայաստանի աշխատավորների նամակները Վ. Ի. Լենինին, Իլյիչը ժողովրդի սրտում։

Առաջին բաժնում զետեղված են մոտ 80 նամակ ու հեռագիր, ուր արտացոլվում են հայ կոմունիստների քաղաքական գործունեության, մարքսիստական տեսության, Կովկասում ծավալված հեղափոխական շարժումների, կուսակցական շինարարության և այլ հարցեր։ Այս բաժինն սկսվում է Ստ. Շահումյանի նամակներով։ Լենինի հետ նա ծանոթացել է 1903 թ. և այդ ծանոթությունը վեր է ածվել սերտ բարեկամության ու շարունակվել մինչև նրա ողբերգական վախճանը։

1904 թ. նոյեմբերի 28-ի նամակով Շահումյանը Պետերբուրգի մի խումբ ուսանողների կողմից խնդրում է Իլյիչին՝ Ա. Բոգդանովի, Ա. Լունաչարսկու, Գ. Պլեխանովի հետ մեկտեղ աշխատակցել նոր հրատարակվող հայերեն լեգալ մարքսիստական ժողովածուին։

Մի այլ նամակով (5-ը մայիսի 1905 թ.) Շահումյանը հայտնում է, որ «Ուսանողական միությունից» անջատված հայ ուսանողների, այսպես կոչված, մանիֆեստում (որ տպագրվել էր «Вперед»-ի վերջին համարում) «դրոշակականների» հետ միասին հիշատակվել են նաև «հնչակյանները»։ «Այդ բառը բոլորովին անտեղի է մանիֆեստում,— գրում է Շահումյանը,— քանի որ ո՛չ կոնգրեսում և ոչ էլ առհասարակ մեր ուսանողության մեջ չի եղել և չկա ոչ մի հնչակյան...»։ Նա խնդրում է Իլյիչին, որպեսզի հերքում տպագրվի այդ մասին։ Այդ ուղղումը տպագրվել է «Пролетарий»-ի թերթի 1905 թ. հունիսի 17-ի համարում։

Ոստիկանության հետապնդումներից ազատվելու համար Ստ. Շահումյանը Պետերբուրգից տեղափոխվում է Աստրախան և ապրում ու գործում է այնտեղից 20 վերստ հեռավորության վրա։ Լենինին նա իր ափսոսանքն է հայտնում, որ անձնական պայմանների պատճառով չի կարողացել Պետերբուրգում տեղավորվել և օգտակար լինել։ Նա ցավով է գրում Աստրախանի ինտելիգենցիայի ստորության մասին։ Իսկ Սլավա Կասպարովի վերաբերյալ գրում է. «Այն բիռլինցին, որի մասին Դուք հարցնում եք, մեր լավ բարեկամն է, կարող եք լիովին վստահել նրան»։

Այնուհետև զետեղված են Իլյիչի գրությունները Վ. Կասպարովին։

Վ. Ի. Լենինը Շահումյանին է ուղարկում Ազգերի իրավահավասարության և ազգային փոքրամասնությունների իրավունքների պաշտպանության օրենքի նախագիծը։ «Այն հազիվ թե ինքս կարողանայի կազմել,— գրում է Շահումյանը։ Իմ կարծիքով, այդ իսկապես մի սատիկ հարված կհասցներ ազգային-կուլտուրական ավտոնոմիայի կողմնակիցներին։ Անշուշտ, օրինագծի շուրջը բանավեճ կծագի, որի ընթացքում հեշտությամբ կհաջողվի պարզաբանել ազգային-կուլտուրական ավտոնոմիայի ամբողջ անհեթեթությունն ու նացիոնալիստական բնույթը»։

Այնուհետև Շահումյանը Վլադիմիր Իլյիչին հաղորդում է Բաքվի գործադուլի, գործադուլային թերթիկներ տարածելու, բոլշևիկ բանվորների ձերբակալման մասին և այլն։

Ռադիոգրերով ու նամակներով Կովկասի գործերի արտակարգ կոմիսարը ՌՍՖՍՀ ժողովրդական կոմիսարների սովետին, անձամբ Իլյիչին, հաճախակի հաղորդում է Անդրկովկասի, հատկապես Բաքվի քաղաքական դրության, շուտափույթ բազմակողմանի օգնության անհրաժեշտության մասին։

«Բաքվի դրությունը դժվարին է միջազգային տեսակետից...

Զգաստ հաշվառում և դիվանագիտություն»,— խորհուրդ է տալիս Շահումյանին Անդրկովկասի վիճակով խիստ անհանգստացած, նրա հետ խանգարված կապի կարգավորմամբ մտահոգված Իլյիչը։

Իսկ երբ լուրեր են տարածվում, թե Բաքվի սովետական իշխանությունը «համաձայնության մեջ է մտել անգլիացիների հետ» գերմանաթուրքական բանդաների դեմ միատեղ պայքարելու համար, Շահումյանը և Պ. Ջափարիձեն Պետրովսկի, Եկատերինոդարի, Աստրախանի, Ցարիցինի, Սարատովի սովդեպներին և Իլյիչին ուղարկված ռադիոգրով հավաստում են. «Իմպերիալիստական ձգտումները, որտեղից էլ նրանք բխեն, միշտ էլ ամենավճռական հակահարվածի կհանդիպեն Բաքվի պրոլետարիատի և կովկասյան սովետական կարմիր բանակի կողմից»։

Լենինի գործին իրենց անձնուրաց հավատարմությունն արյամբ, կյանքով սրբագործեցին Բաքվի փառապանծ կոմիսարները։

Մի նամակով Վլադիմիր Իլյիչը խնդրում է Շահումյանին՝ իրեն նյութեր ուղարկել ազգային հարցի, ազգային հարաբերությունների մասին՝ Կովկասում, Պարսկաստանում, Թուրքիայում և Ռուսաստանում։ «Մի մոռացեք նույնպես փնտրել, այնպիսի կովկասցի ընկերներ,— գրում է Իլյիչը,— որոնք կարողանային Կովկասում ազգային հարցի մասին հոդվածներ գրել»։

Հավատարիմ լենինյան Սուրեն Սպանդարյանը 1912 թ. Պրագայի կոնֆերանսում ծանոթանում է Իլյիչի և կուսակցության այլ գործիչների հետ։ Ռուսաստանում ծավալված հեղափոխական ակտիվ գործունեության համար ցարական կառավարությունը նրան աքսորում է Սիբիր՝ Կրասնոյարսկ։ Այնտեղից նամակագրական կապ է հաստատում Վլադիմիր Իլյիչի և Նադեժդա Կոնստանտինովնայի հետ։ Աքսորավայրում նա ապրում է մի խուլ գյուղում. կյանքը տաղտկալի էր, ձանձրալի։ Պարապելու համար չկային գրքեր, անհրաժեշտ ձեռնարկներ։ Բայց նա հույս է հայտնում, որ օրը հեռու չէ, և որ նրանք դեռ կպատրաստվեն մեծ գործի համար։

Վլադիմիր Իլյիչը մտահոգված էր ո՛չ միայն Կովկասում գործող հայ հեղափոխականներով, այլև նրանց հարազատների կյանքով։ Կ. Հյուսի-

---

1 **Լենինի հետ.** Վավերագրեր և հուշեր, «Հայաստան» հրատ., 1969, 507 էջ։

մասին գրած նամակով նա խնդրում է մի որևէ մտավոր աշխատանք ճարել կուսակցության անդամ Բաղդասարյանի համար։ Իսկ Ոսկի Տեր-Հովհաննիսյանին՝ օժանդակել Ս. Սպանդարյանի ծեր և անօգնական հորը։

Նրանք տեսել են Իլյիչին բաժնում Լենինի մասին իրենց հուշերը, հա. ժողովրդի ազատագրության գործում խաղացած խոշոր դերի մասին են պատմում հեղափոխության ակտիվ մասնակիցներ Ա. Մյասնիկյանը, Ա. Մռավյանը, Ա. Միկոյանը, Ս. Տեր-Գաբրիելյանը, Ի. Վալյանցը, Ա. Հովհաննիսյանը, Վ. Տարախչյանը և ուրիշներ։

Կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչ Ալ. Մյասնիկյանն առաջին անգամ Լենինին տեսել է 1918 թ. հունվարին, սահմանադիր ժողովի նիստերում, այնուհետև սովետների III համագումարում, 1918—1921 թթ. բազմիցս հանդիպել, զրուցել է նրա հետ։ Իլյիչին մտահոգում էր ամեն ինչ— կարմիր բանակի կազմավորումը, ռազմական շատ հարցեր, ռազմաճակատներում տիրող դրությունը, սովյալների վիճակը, նրանց օգնության կազմակերպումը և այլն։ Ամեն դժվարության հանդիպելիս կուսակցության յուրաքանչյուր աշխատող ծարավի էր Իլյիչի խորհրդին։ «Միշտ էլ անհաջողությունների ռոպեներին մեզնից յուրաքանչյուրն անխուսափելիորեն դիմում էր նրա օգնությանը՝ գրավոր, հեռախոսով, անձամբ»,— գրում է Մյասնիկյանը։

Նա հիացմունքով է արտահայտվում Վ. Ի. Լենինի հեղափոխական արիության, լավատեսության մասին։ Ամենածանր օրերին, երբ սովետական երկրին վտանգ էր սպառնում, երբ կուսակցության որոշ աշխատողներ հուսահատվել էին, Իլյիչն ամենուր պնդում էր, թե Պետերբուրգում և Մոսկվայում հաղթող պրոլետարիատի մեծ մասը սովետական իշխանությունը կըպաշտպանի մինչև վերջ։ Նա անսահման հավատում էր բանվոր դասակարգի ուժին ու կարողությանը, հենվում դրանց վրա։

Վլադիմիր Իլյիչը հաճախ էր լինում բանվորական շրջաններում, մասնակցում շաբաթօրյակներին, հետաքրքրվում բանվորների կյանքով, ոգևորում նրանց։ Ալ. Մյասնիկյանը բարձր է գնահատում նրա ընկերասիրությունը, ուշադրությունն ու հոգատարությունը բարեկամների ու ընկերների նկատմամբ։

1921 թ. Ալ. Մյասնիկյանը նշանակվում է ՀՍՍՀ ժողկոմխորհի նախագահ և ռազմական գործերի ժողկոմ։ Հայաստան գալուց առաջ Լենինը նրան խորհուրդ է տալիս՝ «...զգույշ և ներբանկատ լինել Արևելքի ժողովուրդների նկատմամբ, որոնք արդեն արթնանում են, որոնք լուսավորության կարիք ունեն և որոնք լուսավորվելով, իրենց մոտ կկատարեն ավելի վիթխարի հեղաշրջում, քան տեղի ունեցավ Ռուսաստանում»։

Մյասնիկյանն անչափ երջանիկ է, որ «...եղել է Լենինի ժամանակակիցը... այդ հսկայի, մեր ժամանակի հանճարի հետևորդն ու փոքր աշակերտը»։

ՌՍԴԲԿ V համագումարի մասնակից Ս. Կախոյանը (բանվոր Խեչո) Իլյիչին հանդիպում է Լոնդոնում։ Ս. Տեր-Գաբրիելյանը՝ Ֆինլանդական կայարանում։ Այստեղ նա լսել է Կշեսինսկայա պալատի պատշգամբից և զրահապատի վրայից արտասանած նրա ճառերը։ Իսկ Մոսկվայում հանդիպել է նրան և զրուցել Կովկասի վիճակի, նավթարդյունաբերության ազգայնացման, տրանսպորտի, հացահատիկի հայթայթման և այլ հարցերի շուրջ։

Պրոֆեսիոնալ հեղափոխական Ա. Մռավյանն առաջին անգամ Լենինին հանդիպել է Մոսկվայի նահանգի գյուղացիական համագումարում, 1920 թ. աշնանը։ Հազարավոր բանվորներ ու գյուղացիներ հմայված նրա երկաթյա տրամաբանությամբ, հետևում էին Իլյիչի յուրաքանչյուր շարժումին, որսում միլիոնների ուսուցչի ամեն մի բառը։

Հայաստանում սովետական իշխանության հաստատումից հետո ծանր էր ժողովրդի վիճակը։ Թուրքական զորքերը Ալեքսանդրապոլում էին, երկաթուղին նրանց ձեռքին էր։ Ամեն կերպ կօգնենք հայ ընկերներին,— ասել է Իլյիչը Ասքանազ Մռավյանի և Սահակ Տեր-Գաբրիելյանի հետ ունեցած զրույցի ժամանակ։— Պետք էր լուծել թուրքական զորքերի կողմից գրավված Ալեքսանդրապոլի երկաթուղու հարցը։ Մենք ինքներս դժվարին դրության մեջ ենք, բայց կօգնենք Սովետական Հայաստանին։

Եվ նրա գործարար ջանքերով հաջորդ օրվանից իսկ կազմակերպվում է օգնությունը։

Վլադիմիր Իլյիչ Լենինի տեսական հանճարի, նրա կանխատեսման ուժի, հաղթանակի նկատմամբ ունեցած անսասան հավատի մասին է պատմում Ա. Ի. Միկոյանը։

Հետաքրքրական են Իլյիչի դրադարանավարուհու՝ Շ. Մանուչարյանցի հուշերը. նա ևս, ինչպես Լենինին ճանաչող, նրան հանդիպած ամեն ոք հիացած է նրա մեծագույն մարդկայնությամբ և համեստությամբ։

Հայաստանի աշխատավորների նամակները բաժնում զետեղված են 1918—1920 թթ. Հայաստանից Լենինին ուղարկված նամակներն ու հեռագրերը։ Հայաստանում սովետական իշխանության հաստատման երկրորդ օրը հեղկոմի անդամների և նրա նախագահ Կասյանի ստորագրությամբ ողջույնի հեռագիր է ուղարկվում պրոլետարիատի մեծ առաջնորդին։ Իլյիչը ողջունում է «Իմպերիալիզմի ճնշումից ազատագրված Սովետական Հայաստանին»։

Վ. Ի. Լենինը մտահոգված էր ինչպես երիտասարդ սովետական հանրապետությունների, այնպես էլ Հայաստանի վիճակով։ Նրան շատ էր մտահոգում Կովկասի ժողովրդական տնտեսության զարգացումը, ժողովուրդների բարեկեցության ու բարեկամության ամրապնդումը։ Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետության կոմունիստ ընկերներին ուղղած նամակով նա խորհուրդ էր տալիս, թե ինչպես վերականգնել քայքայված ժողովրդական տնտեսությունը և հույս հայտնում, որ այդ երկրների աշխատավորների, կոմունիստների «...սերտ դաշինքը կստեղծի խաղաղության մի այնպիսի օրինակ, որը չի տեսնըված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում»։

Իլյիչին ուղարկած նամակներում Հայաստանի բանվորներն ու գյուղացիները հայտնում էին սոցիալիստական շինարարության բնագավառում իրենց ձեռք բերած հաջողությունների մասին և հավաստիացնում, որ հետագայում ևս ուժ ու եռանդ չեն խնայի Սովետական Միության զարգացման ու բարգավաճման համար։ Հավատարիմ լենինյան ցուցումներին՝ Հայաստանն ամրապնդում է եղբայրական սերտ կապերը հարևան ժողովուրդների հետ և «բուժում է իր վերքերը»,— հայտնում է Իլյիչին Հայաստանի խորհուրդների III համագումարի նախագահությունն իր ողջույնի հեռագրում, ցանկանալով հիվանդ առաջնորդին շուտով վերադառնալ խորհրդային նավի կառավարմանը։

Իլյիչը ժողովրդի սրտում բաժինն սկսվում է Լենինի մահը գուժող կառավարական հաղորդագրությամբ։ Ողջ աշխարհը սգում է հեղափոխական հմուտ նավավարի մահը։ «...ոչ բեկված սրտերի և ոչ լքված հոգիների» տխրությունն է այդ։ «Սա և սուգ, և ուխտ էր։ Մարդիկ աշխատում էին հավատարիմ մնալ մարդկության՝ շահագործվող մարդկության ազատագրման այն գործին, որ գծել և անշեղ տարել է Լենինի հանճարը»։

Այստեղ զետեղված են «Խորհրդային Հայաստան» թերթում տպագրված հաղորդագրությունները առաջնորդի մահվան կապակցությամբ, ՀԿԿ Կենտկոմի ուղերձը Հայաստանի բանվորներին ու գյուղացիներին, Ս. Մարտիկյանի խոսքը Իլյիչի հիշատակին նվիրված Երևանի քաղխորհրդի, ՀԿԿ Երևանի կազմակերպության, արհեստակցական միությունների ու կարմիր բանակի արտակարգ միացյալ նիստում, ապա Հայաստանի տարբեր շրջաններում կայացած սգո նիստերի արձանագրությունները, բանաձևերը, տարբեր կազմակերպությունների ցավակցությունները և այլն։

Հայաստանի կառավարությունը, կոմունիստական կուսակցությունը, ողջ ժողովուրդն ի խորոց սրտի արտահայտելով իր անկեղծ վիշտը, երդվում է հավատարիմ մնալ նրա ավանդներին, սրբությամբ կատարել նրա կտակները. նրանք համոզված են, որ Լենինն անմահ է. «...մենք յուրաքանչյուրս նրա մասնիկն ենք և միասին կազմում ենք մի հավաքական Լենին». իսկ մեծ հեղափոխականի ամենամեծ արձանը, անմահության խորհրդանիշը՝ սովետական իշխանությունն է։

Վերջացնելով մեր խոսքն այս լավ նախաձեռնության վերաբերյալ, ավելորդ չենք համարում նշել, որ գրքում զետեղված բազմաթիվ նյութերի թարգմանության որակն անբավարար է։ Լավ կլիներ «Հայաստան» հրատարակչությունը ժողովածուն հրատարակելիս դրա նյութերը, լեզվա-ոճական հիմնավոր վերամշակման ենթարկեր և այդպիսով այս քրեստոմատիան բոլոր առումներով դարձներ անթերի։

ԶԵՓՅՈՒՌ ԱՍԱՏՐՅԱՆ



Գինը 25 կ.: 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀՈՂԱԳՈՐԾԻ ՕԳՆԱԿԱՆԸ

*Հայաստանի ագրոքիմիայի և հողագիտության, խաղողագործության և գինեգործության ինստիտուտները մի քանի տարի է, ինչ համատեղ ուսումնասիրում են գյուղատնտեսության մեջ բորի միացությունների օգտագործման արդյունավետությունը: Պարզվել է, որ այն բերքատվության բարձրացման լավ խթանիչ է: Ոռոգելի ջրում բորի առկայության դեպքում հացահատիկային և պտղաբանջարեղենային կուլտուրաների բերքատվությունը բարձրանում է մինչև 30 տոկոսով: Բորի լուծույթը միաժամանակ բույսերի սնկային հիվանդությունների դեմ պայքարելու արդյունավետ միջոց է:*

## ԿՐԱԿՈՒՄ ՉԻ ՎԱՌՎՈՒՄ

*Հակահրդեհային պաշտպանության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի կոլեկտիվը, քիմիական և թեթև արդյունաբերության մինիստրությունների աշխատակիցների համագործակցությամբ, յուրացրել է ջերմավանիչ կոստյումների արտադրությունը: Այդ կոստյումների փորձանմուշները, որոնք պատրաստվում են Քիշինյովի «Բոլշևիկ» կարի ֆաբրիկայում, արհեստական կաշվի և ռետինատեխնիկական ապրանքների կոմբինատում, հաջողությամբ են օգտագործվում հրդեհաշեջների կողմից:*

## ՆՈՐ ՄՈՏՈՐԱՆԱՎԱԿ

*Նավաշինական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները սկսել են թողարկել «Ղրիմ» մակնիշի չորստեղանոց նոր մոտորանավակ՝ ալյումինե համաձուլվածքից: «Вихрь» մակնիշի երկու կախովի շարժիչներով նավակը զարգացնում է ժամում 45 կիլոմետր արագություն: Հարմարավետությամբ ու հուսալիությամբ նոր տիպի նավակը գերազանցում է իր նախորդներին:*

## ՆԱԽԱԳԻԾԸ ԵՎ ԷԼԵԿՏՐՈՆԻԿԱՆ

*Ժամանակակից մեծ քանակությամբ զանազան էլեկտրոնային հաշվիչ մեքենաների համար մշակված են մոտ հազար ծրագիր, որոնք ավտոմատացնում են ամենատարբեր տիպի շինարարական կոնստրուկցիաների նախագծումն ու հաշվարկումը: Չնայած դրանք պահանջում են մեծ ջանքեր և դրամական միջոցներ, այնուամենայնիվ, չափազանց շահավետ են: Միայն հաշվարկումների արագ կատարման շնորհիվ ավտոմատացման ընդհանուր տնտեսական օգուտը տարեկան հասնում է հարյուր հազարավոր ռուբլիների:*

*Ներկայումս, երկրի մի քանի տասնյակ ինստիտուտներ զբաղվում են շինարարական նախագծումների, ծրագրերի մշակմամբ: Այժմ խնդիր է դրված դրանց փորձը հաղորդել բոլոր նախագծողներին:*

## ՆՈՐ ՀԵՌՈՒՍՏԱՑՈՒՅՑ

*Լենինգրադի «Մեզոն» գործարանը թողարկում է* «Электроника ВЛ—*100*» *մակնիշի փոքր տրամաչափի տրանզիստորային փոխադրելի հեռուստացույց: Այն գեղեցիկ է, ունի ժամանակակից տեսք, հուսալի է և կոմպակտ, կշռում է ընդամենը 2 կգ, 800 գրամ:*

*Հեռուստացույցն աշխատում է՝ սնվելով և՛ փոփոխական հոսանքի ցանցից, և՛ ակումուլյատորային մարտկոցից:*

*Ընթացիկ տարում գործարանը կթողարկի 25 հազար այդպիսի հեռուստացույց:*

## ՋՐԻ ԹՈՐՄԱՆ ՍԱՐՔ

АК—*12 մակնիշի կոմպակտ քլորատոր նոր սարքը գետի, առվակի, լճի, ամբարտակի ջուրը դարձնում է խմելի: Այն մեկ ժամում թորում է 30 խոր. մետր ջուր, մեկ լիտրի համար ծախսելով 2 միլիգրամ գազանման քլոր: Ջրի ներմղումն ընդհատվելու կամ քլորաջրի հակաճնշումն սահմանվածից բարձր լինելու դեպքում գործում է սարքի օժանդակ հարմարանքը:*

*Նոր քլորատորը ստեղծվել է ՈՒՍՍՀ ԳԱ կոլոիդային քիմիայի և ջրի քիմիայի ինստիտուտում: Այն կարելի է տեղակայել նաև արդյունաբերական ձեռնարկություններում՝ աղտոտված ջրի մաքրման համար (պարզեցում, գունազրկում, օրգանական նյութերի և այլ խառնուրդների զտում):*